ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՁԶ.

# ԳԱՒԱԶԱՆԱԳԻՐՔ

# ԿԱԹՈՂԻԿՈՍԱՑ ԱՂԹԱՄԱՐԱՅ

## ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

---

ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1920

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԾԱ. Խալաթեանց Գր., Հայ Արշակունիք ըստ Մովս. Խորենացւոյ, կամ [illegible] ուսումնասիրութիւններ Մովս. Խորենացւոյ մասին: Թրգմ. Արսէն Ս. Սրմնեանց: 1906: Էջ Ը+124: Ֆր. 1.50

ԾԲ. Պեդերսըն Հ., Հայերէն եւ դրացի լեզուները: Թրգմ. Հ. Թ. Նէորիկեան: 1907: Էջ ԺԱ+257: Ֆր. 5.—

ԾԳ. Հիւբշման Հ., Հին Հայոց տեղւոյ անունները: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1907: Էջ ԺԶ+443: Ֆր. 7.—

ԾԴ. Պեդերսըն Հ., Հին հայերէնի ցուցական դերանունները: Թրգմ. Հ. Ց. Տաշեան: 1907: Էջ Է+90: Ֆր. 2.—

ԾԵ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., Կենսագրութիւն Սարգիս Արքեպիսկոպոսի Սարաֆեան եւ ժամանակին հայ կաթողիկեայք: 1908: Էջ ԺԴ+433: Ֆր. 5.—

ԾԶ. Աճառեան Հ., Հայերէն նոր բառեր Նորագիւտ Մնացորդաց գրոց մէջ: 1908: Էջ 38: Ֆր. —.60

ԾԷ. Կիւլէսէրեան Բ. Ծ. Վ., Եղիշէ, քննական ուսումնասիրութիւն: 1909: Էջ ԻԸ+458: Ֆր. 7.—

ԾԸ¹. Ակինեան Հ. Ն., Տիմոթէոս Կուզ հայ մատենագրութեան մէջ: Էջ [illegible]+60:

ԾԸ². Աճառեան Հր., Հայերէն նոր բառեր Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան մէջ: 1909: Էջ 16–106: Ֆր. 1.50

ԾԹ. Ակինեան Հ. Ն., Զաքարիա Եպ. Գնունեաց եւ իւր տաղերը: 1909: Էջ ԺԲ+87: Ֆր. 1.—

Կ. Ակինեան Հ. Ն., Կիւրիոն Կաթողիկոս Վրաց: 1910: Էջ ԻԷ+315: Ֆր. 5.—

ԿԱ. Մենեվիշեան Հ. Գ. Ծ. Վ., Հայերէն լեզուի ուղղագրութեան խնդիրը: 1910: Էջ 73: Ֆր. 1.—

ԿԲ. Գիւտերբոք Կ., Բիւզանդիոն եւ Պարսկաստան եւ անոնց դիւանագիտական եւ ազգային-իրաւական յարաբերութիւնները Յուստինիանու ժամանակ: Թրգմ. Հ. Հ. Համբարեան: 1911: Էջ Ը+162: Ֆր. 2.50



# ԱՂԹԱՄԱՐԱՅ ԿԱԹՈՂԻԿՈՍԱՑ ԳԱՒԱԶԱՆԱԳԻՐՔԸ

Այլ եւ այլ անգամներ փորձուած է կազմել Աղթամարայ կաթողիկոսաց ցանկը. բայց ցայսօր չէ ընծայուած գոնէ մերձաւորապէս ճիշդ ցանկ մը։ Այս պակասութեան պատճառն են անբաւական աղբերքը։ Սակայն եւ այն խոստովանելու է որ այս նիւթով զբաղողներն ըստ բաւականի փոյթ չեն տարած օգտուելու ծանօթ՝ մատչելի աղբիւրներէն, որոնցմէ կաթողիկոսաց ցանկին եթէ ոչ ամբողջութիւնը, բայց եւ այնպէս մեծագոյն մասը կարելի էր ճշդել։

Շատերը հիմնուած են ԺԸ դարուն վերջերը կազմուած եւ ԺԹ դարուն ուրիշէ մը շարունակուած Կոնդակի մը կամ Հաւաքարանի մը վրայ, ուր տրուած է Աղթամարայ կաթողիկոսաց յաջորդութիւնը 921էն սկսեալ։ Այս ցանկի հետ կ'արժէ ծանօթանալ համառօտիւ։

Հաւաքարանս խորագիր կը կրէ. "Յաղագս ամենայն թեմից եւ վիճակիս մերոյ աթոռոյս Աղթամարայ սուրբ խաչիս, որք յառաջագոյն կարգեցին իշխանք Հայոց, հանդերձ Տէր Գէորգ կաթողիկոսիւն, որ եկին ի Նաւակատիս

սուրբ խաչին՝ ի Թուականին Հայոց ԳՃՀ[1]ը։ Անոր կից կայ "Շարք կաթողիկոսացն Աղթամարայ[2]. սկսեալ Եղիշէ կաթողիկոսէն (921) մինչեւ Յովհաննէս Շատախեցի († 1843)։ Գրութեան սկիզբը իբր յառաջաբան դրուած է հետեւեալը.

"Ես Ղազարս մինչ ի գործ նաւավարութեան՝ պատահեցայ ի կղզին Աղթամարու. բակում բանիւ աղերսեցի Աղաջան մականուանեալ լուսարար Յովհաննէս վարդապետ եւ նա եբաց զդուռն գրքատանն, եւ իմ նայելով զամենայն գրեանս, գտի փոքրիկ գիրք մի որ պարունակէր զթիւ կաթողիկոսացն յԱղթամարու . . . գտալն Տէր Գէորգայ կաթուղիկոսին եւ զհաստատութիւն Աթոռիս մինչեւ ցՏէր Զաքարիա որ վախճանեցաւ յՈստան քաղաքի († 1393)։ Նոյնպէս գտի տետրակ մի ի Զաքարիայէն մինչեւ ցՆիկողայոս կաթողիկոս († իբր 1750)։ Արդ առաջին տետրակ պարունակէր... եւ զգործ թեմին յԱղթամարու զոր շնորհեալ էր Տէր Գէորգայ կաթողիկոսին դատաստանաւ իւրով. եւ այն մագաղաթին վերայ գրեալ էր նշանագրով, երկաթագրով եւ դաւաղանակերպ գրով զոր դժուարաւ ոք կարէր ընթեռնուլ, եւ այս գիրք գրեալ էր Նեթովմայ Քարագուղէ... իսկ վերջին հատոր էր գրեալ ի տիրացու Ներսէսէ, որ էր յոյժ հռետոր եւ տեղեակ արտաքին փիլիսոփայական արուեստին...

[1] Հմմտ. ԲԶՄ. 1897, էջ 388։
[2] ԲԶՄ. էջ 414–416։

Արդ իմ պատահեալ սոյն տետրակաց, յոյժ ուրախացայ եւ ընթերցայ։ Եւ զայս տեսանելով Հայրապետին Յովհաննու, հարկեաց ի վերայ իմ գրել զայն այժմու ժամանակի գրով, զի դիւրին լիցի առ ի ընթեռնուլ. եւ ես յանձն առի ակամայ, զի ոչ էի բաւական այդմ բանի... Արդ ի թուականութեան ՌՄՀԳին (1824) եղեւ աւարտ տետրակիս, որ կոչի Հաւաքարան անուանց կաթողիկոսաց մեղսամած ձեռամբ Ղազարիս, ի գաւառէն Փէշանտաշտայ, ի յարգելի գեղէն Յասեղու, որդի տէր Գրիգոր քահանայի, ի ցեղէն Խալփեանց...[1]։»

Նաւավարութենէն — պատմագրութեան. ահա ըստ ամենայնի ինչ որ կ'ընծայէ Հաւաքարանս, մանաւանդ կաթողիկոսաց շարքին մէջ. տգիտական շարք մը անուանց — 921—1824 տարիներուն համար կը թուէ 111 կաթողիկոս, — որոնց թուին մէջ իբրեւ հանգուցէ հանգոյց յերեւան կ'ելլեն հազիւ քանի մ'անուն՝ որոնք ծանօթ են այլուստ պատմութեան, անուններ որոնք անշուշտ հեղինակին ծանօթութեան հասած են վանքերու արձանագրութիւններէ կամ առձեռն Յայսմաւուրքներէ։

Հեղինակն ըլլալու է նոյն ինքն Նաւավարն Ղազար Խալփեան, ինչպէս կեղծեալ խօսքերէն կ'իմացուի. Թերեւս ունեցած ըլլայ ի ձեռին առաջնորդ մը՝ Ներսէս տիրացուի կազմած ցանկը։ Հեղինակին եւ ոչ իսկ վերջին 50 տարիներու կաթողիկոսաց անունները ծանօթ եղած են։

[1] Բիւզանդիոն 1900, Թ. 1191։

Ձեռագրէս օրինակ մը հանած է Հ. Ներսէս Սարգիսեան Աղթամար այցելած ժամանակ՝ Վենետիկի Մխիթ. Մատենադարանին համար. ասկէ ծանօթ եղած է գրութիւնս Հ. Ալիշանի, որ անվստահելի նկատած է զայն[1]։ Ապա ընդարձակ յառաջբերութիւններով օգտուած է անկէ Էփրիկեան իր “Աղթամար„ պատմական ուսումնասիրութեան մէջ[2], ուր տուած է անկէ “Շարք կաթողիկոսացն Աղթամարայ„ դիտողութեամբս թէ “որոյ մեծագոյն մասը քննութեան եւ ճշգութեան կարօտ կը գտնեմ եւ որոյ վաւերականութեան եւ ստուգութեան չեմ կարող երաշխաւորել„ (էջ 414)։

Նոյն աղբիւրն ընդհանրապէս հիմ եղած է նաեւ Խ. Գ. Լեւոնեանի ուսումնասիրութեան՝ “Աղթամարայ կաթողիկոսները սկիզբէն ցվերջ[3]„։

Լեւոնեանի այս աշխատասիրութիւնը առաջին ամփոփ գրութիւնն է Աղթամարայ կաթողիկոսութեան վրայ, ուր բաց ի Հաւաքա-

---

1 Շնորհալի եւ պարագայ իւր. էջ 54։

2 ԲԶՄ. 1897, էջ 388 եւ շար., 414 եւ շար.։ Հ. Էփրիկեանի վկայութեամբ Վենետիկի Մատենադարանին մէջ կը գտնուի Հաւաքարանէս երկրորդ օրինակ մըն ալ՝ ընդօրինակուած (Կ. Պոլիս) Հ. Գ. Ճէլալէ, որ ունի առաջնէն “ոչ սակաւ տարբերութիւն„. ԲԶՄ. 1898, էջ 133 ծն.։

3 Բիւզանդիոն 1900, Թ. 1190–1200, 1202–1205։ Հեղինակն նոյն աշխատութիւնն աւելի ընդարձակած “Աղթամար եւ իւր կաթողիկոսութիւն„ խորագրով (513 էջ) ներկայացուցած է 1903ին Սահակ Մեսրոպեան մրցանակաբաշխութեան, որմէ նաեւ վարձատրուած է։ Հոս ալ, ինչպէս քննադատն՝ Հրանտ էֆ. Ասատուր կը վկայէ, հիմ առնուած է դարձեալ Աղթամարայ կեղծ Գաւազանագիրքը կամ Հաւաքարանը (Հմմտ. Բիւզանդիոն 1903, Թ. 2059)։

րանէն նկատի առած է նաեւ այլ եւ այլ ձեռագրաց յիշատակարաններ եւ արձանագրութիւններ. եւ շատ մանրամասնութիւններ հաղորդած է մանաւանդ ԺԸ—ԺԹ դարուց կաթողիկոսաց մասին: Ցաւ է որ Լեւոնեանի այս աշխատասիրութիւնը միայն Բիւզանդիոնէն մատչելի է ինձի, ուր Բիւզանդիոնի խմբագրութիւնը շատ մը կարեւոր յիշատակարաններ, որոնք անշուշտ գործոյն ամենէն յորգի մասը պիտի կազմէին, ի բաց յապաւած է:

Յիշուած Լեւոնեանի ուսումնասիրութեան վրայ շատ կարեւոր ցանկ մը տուած է 1904ի “Ընդարձակ Օրացոյց Ս. Փրկչեան Հիւանդանոցի Հայոց[1]„ (Կ. Պոլիս, էջ 272—275 “Աթոռ Աղթամարայ„), ուր կազմողն (Դ. Խաչկոնց) ծանօթութեան մէջ կը գրէ. “Միայն սոյն թուականները հաւաքուած են այս ցուցակին մէջ:„ Առ այս, ինչպէս կ'երեւայ, կազմողն աչաց առջեւ ունեցած է կարեւոր աղբիւրներ, բայց անոնց մէջ եղած են նաեւ ոչ վստահելիներ ալ: Ցորչափ աղբիւրներն յանուանէ չեն նշանակուիր, կարելի չէ գնահատել ըստ արժանւոյն “կը յիշուի„ բացատրութիւնն ինչ ինչ թուականներու քով:

---

[1] Այս ցանկը առաջին անգամ լոյս տեսաւ Ընդարձակ օրացոյցի 1903 թուին մէջ, էջ 240-41. յաջորդ տարին աւելի ճշդուած է եւ նոյնը հիմ եղած յաջորդ տարիներուն համար (1905, էջ 214—15. 1906, էջ 334—35. 1907, էջ 134—35). զգալի փոփոխութիւն կրած է 1908ի Օրացոյցին մէջ (էջ 180—81). նոյնը պահուած է յաջորդ տարին ալ (1909, էջ 287—88). 1910ի Օրացոյցին մէջ գաւազանագիրք չէ տրուած:

Թէ Լեւոնեանի եւ Թէ Ընդ. Օրացոյցտուած այս ցանկերուն անծանօթ մնալով Գիտաւ. քհ. Աղանեանց՝ Դիւան Հայոց Պատմութեան, Դ (Տփղիս 1908), էջ 771—72 տուած է նոր ցանկ մ'ալ Աղթամարայ կաթողիկոսաց, որ, ինչպէս կ'ըսուի, կազմած է Փիրղալէմեան Ղ. վրդ., եւ ճոխացուցած ինչ ինչ յաւելուածներով Աղանեանց։ Այս ցանկը համեմատութեամբ նախորդներու շատ անբաւական է։

Մեր առաջիկայ գաւազանագիրքը հիմնուած է բացարձակապէս ժամանակակից աղբիւրներու վրայ, յատկապէս ձեռագրաց յիշատակարաններու եւ արձանագրութեանց վրայ, զորոնք գտած եւ հաւաքած եմ այլ եւ այլ վայրավատին աշխատութեանց մէջէն։ Եթէ մենք ալ չենք յաջողած ամէն մասամբ լրիւ ցանկ մը տալ, բայց եւ այնպէս կը յուսանք թէ մեր աշխատութեան հիման վրայ — ուր մի առ մի կը նշանակուին տեղիք, հնար կ'ըլլայ լրացնել պակասը ապագային. մանաւանդ երբ լոյս տեսնեն Ե. Լալայեանցի յԱղթամար եւ ի շրջակայս կազմած իւր 2000 ձեռագրաց ցուցակը եւ Փիրղալէմեանի հաւաքած 1500 կտոր Յիշատակարանները։

# ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆ

## ԱՂԹԱՄԱՐԱՅ ԿԱԹՈՂԻԿՈՍՈՒԹԵԱՆ

Կեղծ գրութիւն մը, որ Աղթամարայ կաթողիկոսական դիւանէն ելած կը համարուի, Աղթամարայ աթոռոյն սկզբնաւորութիւնը կ'ուզէ ժ դարուն եղած համարիլ. որպէս թէ երբ Արծրունեաց եւ Վասպուրականի նախարարն խորագէտն եւ փառասէր Գագիկ՝ թագաւոր եղաւ երկրին, ուզած ըլլայ որ, ինչպէս ինքնագլուխ քաղաքական տէր, այնպէս ալ եկեղեցական գլուխ մ'ունենայ իր երկիրը. եւ հաւանութեամբ Բագրատունի թագաւորին Հայոց՝ Գէորգ կաթողիկոս Գագկայ եղբօր որդին՝ զԵղիսէ ձեռնադրած ըլլայ (յամի 921) եպիսկոպոսապետ բոլոր Վանայ ծովուն շրջակայ սահմանաց, հարաւային կողմէն ալ մինչեւ Ճուլամերկ եւ Մուսուլ ընդարձակելով անոր թեմերը[1]: Եղիսէէն մինչեւ Դաւիթ կաթողիկոս (1113) — երկու դարու միջոց — 20 եպիսկոպոսապետ կը հաշուէ յանուանէ այդ կեղծ գրութիւնը (Հաւաքարան), որոնք սակայն ուրիշ կողմանէ ծանօթ չեն. ոչ Թովմա Արծրունիէն եւ ոչ ժամանակակից յիշատակարաններէ:

---

[1] Հաւաքարան, Հմմտ. ԲԶՄ. 1897, էջ 388. Բիւզանդիոն 1900, Թ. 1191. եւ Ալիշան, Ներսէս Շնորհալի եւ պարագայ իւր 54–55:

Բայց կարելի է կարծել թէ Գագիկ ինչպէս ինք զինքը թագաւոր կոչեց, նոյնպէս իր ցեղէն կարգած ըլլայ Վասպուրականի համար արքեպիսկոպոս-մետրապոլիտ մը, բայց ընդհանուր կաթողիկոսին ներքեւ. «այլ թէ ինքնին եպիսկոպոս ձեռնադրելու իշխանութիւն ունէր, տարակուսելի է, մանաւանդ թէ չէ ընդունելի[1]»։

Արծրունեաց թագաւորութիւնը գրեթէ դար մը տեւեց. երբ վերջին թագաւորն Սենեքերիմ՝ ընտանեօք եւ ձիաւորօք փոխադրուեցաւ ի Սեբաստիա (1021)[2], հարկաւ նուաղեցաւ իր թողած երկրին եկեղեցական աթոռն ալ, թէեւ դեռ երբեմն իր արքունի ցեղէն եպիսկոպոսներ ալ նստան Աղթամարայ աթոռը, որ ջանաց միշտ իր մեծապատուութիւնը պահել, եւ անշուշտ ասոր համար էր որ Փիլարետ բռնաւորն այս կողմերէս կաթողիկոս հրաւիրեց՝ փոխանակ Վկայասէրին, եւ գոնէ քիչ ժամանակ մը բերաւ ու նստեցուց իր սահմանները[3]։

Յայտնապէս այս մեծ հայրապետին՝ Վկայասէրի ատեն կ'երեւայ Աղթամարայ կամ Վարագայ եպիսկոպոսին գլուխ շարժելը, որ առանց նախընթաց պատճառի կամ համարեալ իրաւանց չէր կրնար ըլլալ։

Այսպիսի իրաւանց մէկն ալ կը համարէին[4] Վահան կաթողիկոսի Անիէն փախչելով Վաս-

1 Ալիշան, անդ 55։
2 Շար. Թովմ. 308։
3 Ալիշան, անդ։
4 Վարդան, էջ 116։

պօղրական գալն եւ Հակառակ Ստեփանոս կաթո-ղիկոսին՝ Աղթամար նստիլը. դարձեալ Ս. Լուսա-ւորչի շատ մը թանկագին նշխարաց հոն մնացած ըլլալը, ինչպէս Ս. Աթոռ, քող, գաւազան եւ այլն, նոյնպէս Հռիփսիմեաց նշխարք, որոնք միշտ կա-թողիկոսին քով կը պահուէին[1]։

Բայց ամէնէն աւելի զօրեղ պատճառ կրնայ նկատուիլ այն որ Բարսեղ կաթողիկոս Վկայասիրին մահուընէն ետքը «ի յաղմկոյ եւ ի խռովութենէն» ժամանակին ստիպուած՝ թողլով Անի, ուր կը կենար ժամանակ մը, «փա-խեաւ եւ եկեալ եմուտ յԱղթամար, եւ յետ միոյ տարւոյ ել գնաց յԱթախ, ի Հէնի». եւ. եւ քիչ ետքը վախճանեցաւ ի Շուղր[2] (†1113)։ Բարսեղ մահուընէն յառաջ իրեն յաջորդ օծեց Ապիրատ իշխանի որդին Գրիգորիս՝ Ներսէս Շնոր-

---

[1] «Իսկ ես (Մարիամ կին Աբդլմսեհի պարոնկուրա-պաղատին) ի պահեստի (յեկեղեցւոջ սուրբ խաչին Աղ-թամարայ) զկանձս աստուածայինս զԱթոռ մերոյ սուրբ Լու-սաւորչին զՊարթեւին Գրիգորի, եւ զՍեղանն սրբարար աս-տուածային խորհրդոյն եւ զԳօտի սուրբ միջոյն եւ զԳաւա-զան ամենազօր աջոյն . . . եւ զՀողաթափս աշխատասէր ոտիցն սուրբ Կուսին Հռիփսիմեայ եւ զՓողփողակն ներկեալ սուրբ արեամբն, եւ զԲազուկ սուրբ մարտիրոսին տղային Աբդլմսեհի . . . եւ զայլ եւս նշխարս մարտիրոսացն. եւ զՆշան տէրու-նական խաչին, յորոյ վերայ էր կաթուած արեան կենա-րարին, ընդելուզեալ ոսկւով եւ մարգարտով. . .» (Շար-թոմ. Արծրունեաց, էջ 310. Համմ. եւ Վարդան, էջ 116)։

«Յետ ամաց զԱՋ սուրբ Լուսաւորչին եւ զքողն գողացան յԱղթամարայ եւ տարան առ կաթողիկոսն տէր Գրիգորիս ի Ծովքն Արղնոյ. եւ ապա յետոյ փոխեցան ի Հռոմկլայն» (Յայսմաւուրք, Թ. 7 մեր Մատ. Համմ. Յա-չեան՝ Ցուցակ, էջ 92)։

[2] Յայսմաւուրք, Թ. 7 մեր Մատենադարանի։

հալւոյ եղբայրը (1113—1166), որ «տղայ հասակաւ» էր՝ իբր 15 ամեայ[1]։

Մէկ կողմանէ անշուշտ Բարսղի տարեւոր բնակութիւնն յԱղթամար, եւ միւս կողմանէ նախընթաց պատճառներու վրայ աւելցնելով մանաւանդ[2] Նորընծայ Գրիգորիս կաթողիկոսին անկատար հասակը՝ Դաւիթ Աղթամարայ սուրբ խաչին եպիսկոպոսը յայտնապէս գլուխ բարձրացուց. եւ հիմ առնելով թէ «աթոռ է եւ այս թագաւորացն Արծրունեաց, վայել է լինել եւ պատրիարգութեան[3]», եւ քանի մ՚ուրիշ եպիսկոպոսներ ալ հաւանեցնելով իւր խորհրդին՝ «արարեալ ժողով եպիսկոպոսաց հնգից[4]», ինք զինքը օծել տուաւ կաթողիկոս (1113), «ոչ թէ միայն իր տեղական աթոռոյն, այլ եւ գուցէ եւ բոլոր Հայոց[5]»։ Թէպէտ եւ Գագկայ իշխանութեան սահմաններէն անդին չանցաւ իր բռնաբարած իրաւունքն, մանաւանդ աւելի ամփոփ էր եւ եւս աւելի ամփոփուեցաւ յետոյ։ Վարդան յայտնապէս կը գրէ թէ «բայց ոչ եղեւ ընկալեալ» ընդհանուրի կողմանէ։

Իր կաթողիկոսութեան համամիտներէն էին գլխաւորաբար արեւելեայք, ինչպէս Ցայսմաւուրքի մէջ կ՚ըսուի. «Ընկալան եւ հնազանդեցան նմա իշխանքն եւ արքեպիսկոպոսունք արեւ-

1 Սամ. Անեցի, էջ 124։

2 Սամ. Անեցի, էջ 124. «արհամարհէ զտղայութիւնն Գրիգորիսի»։

3 Վարդան, էջ 116։

4 Անդ. Հմմտ. եւ Կիրակոս, էջ 70։

5 Ալիշան, անդ. էջ 56։

ծլից. եւ աթոռակալքն Թադէոսի առաքելոյն եւ Ցաթեւոյն, Բջնոյն եւ Համբատոյն. սոքա միաբանեցան առ Տէր Դաւիթն Աղթամարցի[1]»։

Բնականաբար այս ապստամբութիւնը մեծ շփոթութիւն պատճառեց ի Կիլիկիա եւ ի Մեծ Հայս. եւ հարկ տեսնուեցաւ տարի մը ետքը (Յայսմաւուրք) մեծ ժողովով քննել խնդիրը։

Դժբախտաբար այս ժողովոյն որոշումները չեն հասած մեզի. չկայ նաեւ ժամանակակից մանրապատում պատմիչ։ Այսչափ միայն կ'աւանդուի թէ 2500 անձէ[2] աւելի էին ժողովականք, որոնց թուին մէջ կային եպիսկոպոսներ, իշխաններ, վարդապետներ, վանահայրեր եւ արժանաւոր վանականք սուրբ Լերինն, որոնք միաբան հաւանութեամբ ապստամբ եւ անկանոն հրատարակեցին զԴաւիթ եւ իր հետեւողները. կամ ինչպէս կը գրէ Շնորհալին՝ «Որք նզովեալ հերքեցան յեկեղեցւոյ Քրիստոսի, եւ սրով բանին Աստուծոյ հատեալ եւ ի բաց ընկեցան՝ որպէս զնեխեալ եւ զփտեալ անդամ յառողջ մարմնոյ եկեղեցւոյ, անէծս ցաւագինս հատեալ ի գլուխ նոցա[3]»։

---

1 Թ. 7, Թղ. 530ա. մեր Մատենադարանի։ Հմմտ. եւ Պատմ. Սամ. Անեցի, էջ 124. «Հաւանեցուցեալ ինքեան եւ զաթոռն Սիւնեաց եւ զԹադէոսի առաքելոյն (Արտազու)՝ տարի մի եւ յետոյ դարձան նոքա ի հնազանդութիւն մեծ աթոռոյն»։

2 Ըստ Շնորհալւոյ, էջ 134. Յայսմաւուրքի մէջ 300 անձ կ'ըսուի։

3 Ընդհանրական բան առ եպիսկոպոսունս, տպ. Վենետ., էջ 134։ Նզովքի նկատմամբ հմմտ. Չամչ. Գ. էջ 395-397։

Ժողովոյն գումարման տեղն կը թուի ըլլալ Սեաւ լեռը[1], կամ ըստ Ալիշանի՝ «Հաւանօրէն ի սահմանս կարմիր վանաց»։

«Ասոր վրայ արեւելեան եպիսկոպոսները (Սիւնիք եւ Արտազ) կրկին հպատակեցան Հռոմկլայի աթոռոյն. բայց Դաւիթ շարունակեց մնալ իր ապստամբութեան մէջ. միաբանութեան համար ձեռնարկուած բոլոր փորձերն եղան ապարդիւն[2], ինչպէս կը գրէ Ներսէս Շնորհալի իր Ընդհանրականին մէջ կծու խօսքերով. «Որոց ոչ եկեալ ի միտս... դեռ եւս յամառեալ բորբոքին ի նոյն չարութեան, արբեալ եւ յիմարեալ փառամոլ ախտիւ իբրեւ զգազանս կատաղիս ոչ դադարեն մուծանել զխռովութիւն յառագաստ խաղաղութեան երկնաւոր Հարսնարանի փեսայացեալ Բանին, զոր արեամբ գնեալ ազատեաց ի չար մշակութեանց բանսարկուին. Որոց արիւն ի գլուխ իւրեանց եղիցի. եւ վրէժ չարութեան գործոց նոցին յանձինս իւրեանց լիցի» (էջ 135)։

Սեաւ լեռան ժողովոյն մէջ Գրիգորիս կաթողիկոսի նզովքը Աղթամարայ կաթողիկոսին եւ

1 Դիւան Ե. 221 կ'ըսուի թէ ժողովն գումարուեցաւ «ի Սեաւ լեառն, ըստ աշխարհաբար–[illegible] ժողովոյն»։ Ժողովոյս մասին հմմտ. եւ Չամչ. Գ. 36-37։

2 Հմմտ. Վարդան, էջ 116. «Բայց եւ չարեաց եղեւ աշխատ ընծայիւք եւ աղաչանօք, մանաւանդ ի յԱնեցւոյ գլխաւորացն. որոց գրէ մեծ շնորհակալութիւն օրհնութեամբ պատրիարքն Գրիգորիս ամենայն վանորէիւք Սեաւ լերինն, եւ շրջակայ եպիսկոպոսացն ձեռագրովն»։ Այս թուղթը չէ հասած մեզի։

անոր հնազանդող ժողովրդեան վրայ առանց ազդեցութեան մնաց. Աղթամարայ կաթողիկոսութիւնն իբր ապստամբութիւն մը, պառակտումն ի միութենէն նկատուեցաւ եւ ազգին մեծամասնութիւնը խորշեցաւ անոր յարաբերութենէն։ Միութեան նոր փորձեր եղան. բայց առանց գործնական հետեւութեան։

Նզովքն բառնալու առաջին փորձն եղաւ Գրիգոր Անաւարզեցւոյ (1293—1307) օրով. դժբախտաբար սակայն այս մասին ակնարկութիւն մը միայն եղած է յետնոցս, առանց մանրամասնութեան. Գրիգոր Անաւարզեցի Հեթում թագաւորահօր աչքէն ինկած՝ աքսորի (բանտի՞) մէջ կ'ուղղէ առ Հեթում խօսքերս. «ԶԱղթամար օրհնել ետուր. նա տուր օրհնել զմեզ այլ[1]»։ Այս շրջանիս Աղթամարայ կաթողիկոսն էր Զաքարիա, իմաստուն եւ ուսումնասէր անձնաւորութիւն մը։ Թէ Զաքարիայի կողմանէ առաջարկուած է միութեան խնդիրը, թէ Հեթում կանխած է Կիլիկիոյ աթոռոյն հետ բարեկամ ընենալ արեւելցիներն եւ Աղթամարեանք՝ յայտնի չէ. Թերեւս Հեթում շարժած ըլլայ հօր Ստեփաննոս Օրպէլեանի խորհրդով. որ Զաքարիայի բարեկամներէն էր եւ անոր հետ թղթակցութեան մէջ[2]։ Ինչ մեկնութիւն ալ ուզ'նք տալ Անաւարզեցւոյ լակոնական խօսքին՝ այն ստոյգ է որ միութիւնն տեւական նշանակութիւն մը չունեցաւ։ Մխիթար կաթողիկոս Սսոյ

1 Թուղթ առ Հեթում, առ Գալանոսի, Ա. էջ 439
2 Դիւ. Աղթամարցի ի վերջ Թ. Արծր., էջ 319։

1345ի ժողովոյն մէջ պարզ «արքեպիսկոպոսութիւն» գիտէ Աղթամարայ Թեմը[1], եւ Դանիէլ Դաւրիժեցի[2] «Հակառակաթոռ կաթողիկոս» կ'անուանէ։

Տոք վիճմանց առարկայ եղաւ խնդիրը 1409ին։ Գրիգոր Տաթեւացի, որուն հայրն «ի քաջբերունեաց» էր[3] (եւ ինքն ալ «աշխարհաքաջբերունի[4]» կ'ըսուի՝ հաւանօրէն ծննդեամբ), իր հանած հոչակին անպատուաբեր համարելով Աղթամարայ նզովեալ կաթողիկոսական Թեմին պատկանիլ, որով յինքն կը ձգէր նաեւ նզովքը. 1408ին աշնան «վասն տեսլեան գիշերոյ» կը շարժի Տաթեւէն եւ կու գայ Մեծոփ, ուր «ի խնդիր եղեալ վասն կապանաց Աղթամարայ, եւ մեծահանդէս ժողով արարեալ՝ արձակեաց զամենեսեան (ի կապանաց) հնոց կաթողիկոսաց մերոց[5]»։ Տաթեւացի իր այս միջամտութիւնը «ըստ հրամանի հոգւոյն»՝ այսպէս կը բացատրէ «Առ բնակիչս Արճիշոյ, Բերկրոյ եւ Արծկոյ» Թղթին մէջ[6]. «...տեսեալ զգեղեցիկ կարգս ձեր եւ զպայծառ քրիստոնէութիւն յոյժ ուրախացայ. բայց վասն անիծից նախնեացն, որ կայ ի վերայ աշխարհացդ, վասն ապստամբութեան առաջնորդաց սուտանուն կաթողիկոսաց, որ ի

1 Mansi, Supl. t. III, p. 522.
2 Hist. des Croisades, Doc. armén. II, p. 628.
3 Թովմ. Մեծոփ. Պատմ. Լանկ Թամուրի, էջ 50։
4 ԱՐՐՏ. 1913, էջ 753։
5 Թովմ. Մեծոփ., էջ 52։
6 ԲԶՄ. 1898, էջ 130։

ծովն Աղթամարայ, յորժ տրտում կայի եւ խնդրէի ելս գտանել իրացն զի մի բազմութիւն-անմեղ քրիստոնէիցդ ի ներքոյ բանադրանացն մնասցեն։ Եւ մինչ էի յայս յաղէտ տարակուսի, հրաման ընկալայ ի տեսլեան, եթէ զոր ինչ խորհեալ ես արա վաղվաղակի, եւ իմ ձեռնարկեալ գրով արձանացուցի»։ Աւելի երկար կը տեղեկագրէ այս նկատմամբ առ Յակոբ կաթողիկոս Թղթին մէջ այսպէս[1].

«Ծանուցումն լիցի գերիմաստ գլխոյդ վասն Աղթամարայ կաթողիկոսութեանն, որ սուտ էր՝ հակառակ մեծի եւ ճշմարիտ կաթողիկոսիդ մերոյ. զոր անփոյթ են արարեալ ի բազում ժամանակաց նախնիքն մեր եւ առաջնորդք... Եկաք ի կողմանս Վասպուրական ծովուս եւ հասուեղաք զի կրկին խայտառակեալ էր սրտիւք սատանայ զանուանեալ կաթողիկոսն Աղթամարայ... ուստի եւ ամենայն կարգաւորք եւ աշխարհականք կամակից եղեն անկման կաթողիկոսին. եւ նոյին կամօքն ընկեցաք եւ լուծաք զնա ի կարգէն եւ յաթոռոյն. եւ գրեցաք երկուս թուղթս՝ առաջին եւ երկրորդ յամենայն քաղաքս նոցա եւ ի գեղս. այլ եւ յամենայն աշխարհի չորս կողմունս. ի յարեւելք՝ մինչեւ ի յաթոռն Գրիգորիսի Աղուանից կաթողիկոսի. ի հարաւ՝ մինչեւ ի Պարսկաստան. ի հիւսիս մինչ ի Վրաց տուն. եւ ի յարեւմուտք՝ մինչ ի յաթոռդ սուրբ. եւ

1 Ի մէջ բերուած Չամչեան Գ. 455–457. ուր մանրամասն կը խօսուի դիպացս մասին. ինչ ինչ կը տեսնենք վարը, երբ կը խօսինք Գաւիթ կաթողիկոսի վրայ։

զթղթերդ առ ձեզ առաքեցաք: Պիտի յորժամ հնազանդին սուրբ աթոռոյդ՝ նոցա եպիսկոպոս ձեռնադրես, եւ մեռոն շնորհես... Եւ Բոլոր այն երեք երկրին որ ի հնազանդութիւն ձեզ բերաք, ամենեցուն առ հասարակ ամէն քաղաքի յանուանէ՝ եւ վարդապետացն եւ քահանայիցն՝ Թուղթ օրհնութեան գրէք. այլ եւ ննջեցելոց նոցա արձակումն ի կապանաց անիծիցն: Զի յորժամ Ռստանայ երկիրն եւ այլք զայն լսեն, ամենեքեան զղջանան եւ ի հնազանդութիւն քեզ գան. եւ լինիցին մի հօտ եւ մի հովիւ. եւ վասն այսր լիցի մեզ մասն բարեաց...:,,

Թէ ինչ իրաւունքով կրցաւ Տաթեւացին բաժնել Քոչբերուն'ըն Աղթամարէն եւ արձակել նզովքը այն ամէնուն համար, որոնք կը միաբանէին Սսոյ կաթողիկոսին հետ, աւելորդ է երկար հարցաքննել. ըստ Չամչեանի Յակոբ կաթողիկոս վաւերացուց Տաթեւացւոյ արձակումը: Տաթեւացւոյ ձեռնարկութիւնը չյաջողեցաւ յուսացածին պէս. թէեւ ի սկզբան ունեցաւ համամիտներ, ինչպէս ինքը կ'ըսէր, բայց ապա "բարիատեացն սատանայ՝ հանեալ յարուցմունս ի յընտանեաց մերոց եւ յօշակերտաց, նա եւ ի բուն իսկ բռնաւորաց: Եւ իմ յոյժ տրտում գոլով զի ոչ եղեւ զըստ մերումս բանի, որպէս եւ ձեզ է յայտնի,, կը գրէ Արծիշեցիներուն[1]: Որպէս զի սակայն գործը շարունակուի[2]

---

[1] ԲԶՄ. 1898, էջ 131:

[2] Այս շրջանին՝ թերեւս Գրիգորի ձեռքէն (Համա. կար. Ցուց. Թ. 55 նման գրութիւն մը յանուն Գրիգորի)

Տաթեւացի այս ինքնատուր իշխանութիւնն 1410ին փոխանցեց իւր աշակերտին Թովմա Մեծոփեցւոյ. որուն համար այսպէս կը գրէր[1] յամի 1410 Երեւանէն առ քաղաքացիս “Արճիշոյ եւ Բերկրոյ եւ Արծկոյ, եւ այլ շրջապատ գեղերէից„. “Եւ կարգեալ կացուցի զդա մեզ երեսփոխան... եւ ետու դմա հրաման եւ իշխանութիւն... զթերակատար գործն մեր ի գլուխ եւ յաւարտ հասուցանել։ Ոչ հնազանդի Աղթամարայ. եւ ոչ տայ թոյլ այլոց ի հնազանդութիւն նոցին... այլ եւ ետու դմա հրաման. զի զբանադրեալն ի մենջ ըստ հրամանի Հոգւոյն, զոր եմ գրեալ ի պատճառս բանի եւ գրով արձանացուցեալ, որ է իսկ եւ ի ձեռումդ միջի, եթէ զղջանան եւ գան ի հնազանդութիւն սուրբ աթոռոյ եւ աջոյ Լուսաւորչին...„։ Սակայն Թովմա Մեծոփեցի իւր կողմանէ միջամուխ չեղաւ ամենեւին այս խնդրոյն, մինչեւ որ ընտրուեցաւ Կիրակոս կաթողիկոս (1441) եւ անոր քով միջնորդելով արձակել տուաւ Աղթամարայ կա-

---

եալ կը թուի Վենետիկի Թ. 1177 կանոնագրոց (յամի 1669 գրուած ի Կ. Պոլիս) մէջ պահուած ճառս՝ “կանոնք եւ բանք գեղեցիկ եւ յոյժ պիտանի վասն աթոռոյն Աղթամարայ որ են ի ներքոյ բանադրանաց„։ “Յորում հեղինակն — ինչպէս կը գրէ Էփրիկեան —, ազգային եկեղեցւոյ միութեան փափաքով վառուած՝ կը ջանայ ապօրինի եւ հակաաթոռ եւ նզովից ենթարկուած ցուցընելով Աղթամարայ աթոռը եւ նորա հնազանդութեան ներքեւ գտնուող ժողովուրդը, ի միութիւն եւ ի հնազանդութիւն յորդորել զամենեսին Հայոց ընդհանուր հայրապետին՝ որ ի Սիս Կիլիկիոյ„, ԲԶՄ. 1898, էջ 128–129։

[1] Սիսական, էջ 239–240 եւ ԲԶՄ. 1898, էջ





թողիկոսութիւնը նզովքէն, ինչպէս Թովմայի կենսագիրն կը գրէ[1].

«Եւ Տէր Կիրակոս կաթողիկոսն զամենայն անէծքս եբարձ ի բանադրողաց եւ ի բանադրելոցն վկայութեամբ սուրբ Էջմիածնին եւ միջնորդութեամբ ժբ վարդապետաց եւ ժբ եպիսկոպոսաց եւ բազում կրօնաւորաց։ Եւ յայս որ պատճառ եւ միջնորդ եւ օգնական ազատութեան եւ օրհնութեան լուսաւոր հոգին եղեւ, մեծ վարդապետ Թովմա։»

Կիրակոս կաթողիկոսի արձակման կոնդակն ունիմ ձեռքս նոր օրինակութեամբ մը, զոր գտայ † Հ. Գ. Գալէմքեարեանի ձեռագիր Մնացորդաց մէջ. դժբախտաբար հոն ոչ գրչի անունն նշանակուած էր եւ ոչ ինչ բնագրէ առնուած ըլլալը. բայց կ'երեւայ թէ սկզբնագրէ մը ընդօրինակուած է, որուն թէ ուղղագրութիւնքն եւ թէ համառօտագրութիւնք ճշդիւ պահուած են։ Զայս ընտրած եմ առաջիկայ հրատարակութեանս բնագիր, որուն համառօտագրութիւնք միայն պարզած եմ առանց ուրիշ ո եւ է փոփոխութեան։ Կոնդակս աւանդած է նաեւ Ղազար Ջահկեցի, բայց, ինչպէս ծանօթութեանց մէջ դրուած տարբերութիւնք մատնացոյց կ'ընեն, ըստ կամի փոփոխած եւ յաւելուածներ ներմուծած, նոյն իսկ հակաժամանակագրական կէտեր[2]։

---

1 Արարատ, 1913, էջ 746. Հմմտ. անդ 1914, էջ 76–77։ Տես եւ Թովմ. Մեծոփ. Յիշատակարանն, էջ 84–85։ Եւ Ջամ. Գ. 487։

2 Դրախտ ցանկալի, Կ. Պոլիս 1735, էջ 618–

կոնդակս կը զետեղեմ հոս ամբողջութեամբ իբրեւ կարեւոր վաւերաթուղթ մը Աղթամարայ կաթողիկոսութեան պատմութեան համար:

“Անուամբ անեղին Աստուծոյ, Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ: Ես Կիրակոս ծառայ ծառայից Աստուծոյ Յիսուսի Քրիստոսի: Ողորմութեամբ եւ շնորհօք Նորին կաթողիկոս առաքելական աթոռոյ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ եւ Վաղարշապատու սուրբ Էջմիածնիս:

գրեմ շնորհօք Թագաւորին իմոյ ամենասուրբ Հոգւոյն Աստուծոյ: Աւրհնութիւն, գոհութիւն, երկրպագութիւն եւ փառք: Աւրհնութիւն ամենայն սրբոց բերանոյ. յերկնաւորացն յանմարմին հրեշտակացն, եւ յերկրաւորաց մարմնաւոր որդւոց Աստուծոյ: Եւ ասեմ օրհնեալ է Աստուած եւ Հայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ օրհնեաց զմեզ ամենայն հոգեւոր օրհնութեամբ յերկնաւորս ի Քրիստոս: Եւ բարձր առնեմ զքեզ Աստուած իմ եւ Թագաւոր իմ. եւ աւրհնեմ զանուն քո յաւիտեան եւ յաւիտեանս յաւիտենից: Գրեմ օրհնութիւն եւ պահպանութիւն եւ արձա-

---

620: Հմմտ. եւ Ջամչեան Գ. 488 որ ծանօթ է կոնդակիս անշուշտ Ջահկեցւոյ այս գործէն:

2 Կ. կաթողիկոս: — 3 ծառայիցն . . . եւ Յիսուսի: — 6 կը յ—ե—՝ եւ ամենայն Հայոց: — 9 օրհնեալըն յամենայն: — 10 յերկնաւորաց անմարմին հրեշտակաց: — 12 Աստուծոյ կենդանւոյ: — 12—18 չէ+ եւ ասեմ — յաւիտենից:

կումն յամենայն կապանաց բոլոր ազգաց եւ ամենայն լեզուաց. ամենայն քրիստոնէից ուղղափառաց, կենդանեաց եւ հանգուցելոց: Դարձեալ գրեմ օրհնութիւն եւ պահպանութիւն եւ արձակումն յամենայն կապանաց ընդհանուր ազգիս Հայոց, կենդանեաց եւ հանգուցելոց հոգեւոր որդւոց սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ: Դարձեալ գրեմ օրհնութիւն եւ պահպանութիւն շնորհօք եւ զօրութեամբ Հոգւոյն սրբոյ արձակումն ամենայն կապանաց անիծից եւ բանադրութեանց եւ մեղաց կապանաց որ եղեալ է յամենայն ազգս ընդհանուր քրիստոնէից ուղղափառաց: Աստուածային բարձր եւ յաղթող իշխանութեամբս որ ունիմ ի Քրիստոսէ Աստուծոյ իմմէ: Արձակեալ եմ զամենայն կապեալս եւ զբանադրեալս յանիծից բոլոր ազգաց քրիստոնէից ուղղափառաց եւ զբոլոր ազգիս Հայոց հոգեւոր որդւոց սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ:

Աղթամարայ կաթողիկոսն տէր Դաւիթ. եւ եպիսկոպոսունքն ամենայն. եւ վարդապետքն ամենայն եւ քահանայքն ամենայն եւ սարկաւագունք ամենայն. եւ աստիճանաւորքն ամենայն. եւ ժողովրդականք արք եւ կանայք ամենքն:

---

21 չէ+ ամենայն (քրիստոնէից): — 24—26 կապանաց, որք ընդհանուր տեղիս Հայոց ազգիս հոգեւոր . . . : — 27 չէ+ մերոյ: — 29 յամենայն: — 30 բանադրանաց: — 31 է յազգս ընդհանուր ազգաց քրիստոնէից: — 34 իմոյ. արձակեմ: — 35—38 չէ+ բոլոր — մերոյ: — 39 Մանաւանդ զԱղթամարայ . . . զտէր: — 42—44 ժողովուրդքն եւ ամենայն աստիճանաւորքն,

կենդանիք եւ հանգուցեալք ի Քրիստոս։ Աւրհնեալք եղիցին եւ արձակեալք եղիցին յամենայն կապանաց անիծից եւ ի բանադրութեանց եւ ի կապանաց մեղաց ամէն։ Գրիգորիս կաթողիկոսն եւ իւր միաբանքն ամենայն ժողովեցան եւ զանէծքն գրեցին, զբանադրանքն եւ զկապանքն գրեցին։ Աւրհնեալք եղիցին եւ արձակեալք եղիցին ի կապանաց անիծից եւ ի բանադրութեանց եւ ի կապանաց մեղաց եւ ի դառն դատապարտութենէ իւրեանց։ Եւ ի դա՛ռն դատապարտութենէ իւրեանց. որ անցին զպատուիրանաւն Աստուծոյ որ ասէ. Աւրհնեցէք զանիծիչս ձեր. օրհնեցէք եւ մի անիծանէք։ Ի սոսկալի ատենին Քրիստոսի ազատեալ լիցին ի դատապարտութենէ իւրեանց. ամէն։ Աղթամարայ կաթողիկոսն տէր Դաւիթ, որ անց զպատուիրանաւն Աստուծոյ որ ասէ. Հնազանդ լերուք առաջնորդաց ձերոց։ Աւրհնեալ եղիցի եւ արձակեալ եղիցի ի կապանաց անիծից. եւ ի բանադրութեանց եւ ի կապանաց մեղաց։ Եւ ի սոսկալի ատենին Քրիստոսի ազատեալ լիցի ի դատապարտութենէ. ամէն։ Ինքն օրհնեալ ե-

---

արք եւ կանայք եւ ամենայն կ. եւ հանգուցեալքն։ — 45 օրհնեալ եւ արձակեալ։ — 46 ի բանադրանաց եւ ի կապից մ. իւրեանց, զոր Գրիգորիս։ — 48—63 միաբանեալքն ամենայն որք ժ. եւ զանէծս եւ զբանադրանս գրեցին, ես արձակեմ զնոսա ի կապանաց ա. եւ ի բանադրանաց եւ ի դառն դ. նոցա, որք անցին զպ. Ա. եւ ապստամբեցան ի սուրբ աթոռոյս Էջմիածնի, որպէս ասաց Տէրն թէ Մի կոչիք հակառակ. եւ Պօղոս գրէ թէ Հնազանդ լերուք առաջնորդաց ձեռոց, զոր այժմ կաթողիկոսն Աղթամարայ տէր Դաւիթ, իւրովք հնա-

ղիցի յԱստուծոյ բարձրելոյն։ Եւ օրհնեալքն ի նմանէ՝ ճշմարիտ օրհնեալք եղիցին։ Եւ արձակեալքն ի նմանէ ճշմարիտ արձակեալք եղիցին։ Եւ ձեռնադրեալքն ի նմանէ՝ ճշմարիտ ձեռնադրեալք եղիցին։ Եւ մկրտեալքն ի նմանէ ճշմարիտ մկրտեալք եղիցին։ Եւ պսակեալքն ի նորանէ՝ ճշմարիտ պսակեալք եղիցին։ Եւ խոստովանեալքն նորա ճշմարիտ ազատեալք եղիցին ի մեղաց իւրեանց։ Եւ ի սոսկալի ատենին Քրիստոսի ազատեալք եղիցին ի դատապարտութենէ իւրեանց. ամէն։

Աղուանից կաթողիկոսն տէր Գրիգոր Հոնեցին եւ այլ կաթողիկոսքն ամենայն. եւ եպիսկոպոսքն ամենայն. եւ վարդապետքն ամենայն. եւ կրօնաւորքն ամենայն. եւ քահանայքն ամենայն. եւ սարկաւագունքն ամենայն, եւ աստիճանաւորքն ամենայն. եւ ժողովրդականքն արք եւ կանայք ամէնքն։ Կենդանիք եւ հանգուցեալք ի Քրիստոս։ Աւրհնեալ եղիցին եւ արձակեալ

---

պանդխտեցելովքն ամենայն զղջացան եւ հնազանդեցան սրբոյ աթոռոյս մերոյ. նաեւ մեք ընկալաք զնոսա սիրով ըստ հրամանի Փրկչին եւ թողաք զյանցանս նոցա եւ ազատեցաք ի կապանաց անիծից աստ եւ ի հանդերձեալն ի դատապարտութենէ։ Եւ . . . ։ — 67, 68, 70, 71, 72 չէ+ եղիցին։ — 73 ի նորանէ։ — 74—76 չէ+ Եւ ի սոսկալի — ամէն։ — 78—92 կաթողիկոսք ամենայն, եպ-ք եւ վարդապետք, քահանայք եւ ժողովրդականքն ամենայն արք եւ կանայք, ծերք եւ տղայք, կենդանիք եւ ննջեցեալք ամենեքեան օրհնեալք եղիցին յԱստուծոյ եւ ի մէնջ։ Այլ եւ օրհնեալքն ի նորանէ օրհնեսցին եւ կապեալքն կապեսցին ի յերկիր եւ յերկինս. եւ արձակեալքն արձակեսցին։ Ձեռնադրեալքն ճշմարիտ ձեռնադրեալք եւ մկրտեալքն . . . ։

եղիցին յամենայն կապանաց անիծից եւ ի բանադրութեանց եւ ի կապանաց մեղաց. ամէն։ Աւրհնեալք եղիցին եւ արձակեալք եղիցին։ Աւրհնեալքն ի նոցանէ ճշմարիտ օրհնեալք եղիցին եւ արձակեալքն ի նոցանէ ճշմարիտ արձակեալք եղիցին։ Եւ ձեռնադրեալքն ի նոցանէ ճշմարիտ ձեռնադրեալք եղիցին։ Եւ մկրտեալքն ի նոցանէ՝ ճշմարիտ մկրտեալք եղիցին։ Եւ պսակեալքն ի նոցանէ ճշմարիտ պսակեալք եղիցին. եւ խոստովանեալքն նոցա ճշմարիտ ազատեալք եղիցին ի մեղաց իւրեանց։ Եւ ի սոսկալի ատենին Քրիստոսի՝ ազատեալք եղիցին ի դատապարտութենէ իւրեանց. ամէն։

Սսոյ կաթողիկոսացն, եպիսկոպոսացն, վարդապետացն, կրօնաւորացն, քահանայիցն անիծեալքն օրհնեալ եղիցին եւ կապեալքն արձակեալ եղիցին ի բանադրութեանց եւ ի կապանաց մեղաց. ամէն։

Շնորհօք Տեառն մերոյ եւ Փրկչին Յիսուսի Քրիստոսի։ Աւրհնութիւն եւ գոհութիւն եւ փառք անհասանելի եւ հրաշագործ անեղին Աստուծոյ Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ. յամենայն յաւիտեան. ամէն։

---

91, 92, 93 չէ+ եղիցին։ — 94 արձակեալք։ — 98—107 Սըսայ կաթողիկոսունքն, եպ-քն, վարդապետք, քահանայք, սարկաւագունք եւ կրօնաւորք եւ ամենայն հաւատացեալք ի Քրիստոս՝ եղիցին օրհնեալք. եւ կապեալքն արձակեալք. եւ բանադրեալքն ազատեալք ի կապանաց մեղաց։ Շնորհօք... Քրիստոսի, որում փառք եւ պատիւ ընդ Հօր եւ ընդ սրբոյ Հոգւոյն. այժմ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Յաջորդ դարերուն սակայն չպակսեցան խնդիրներ Էջմիածնի եւ Աղթամարայ կաթողիկոսաց մէջ, մանաւորապէս իրաւասութեան սահմանաց մասին։

Աղթամարայ Նորակազմ կաթողիկոսութեան կառավարչական ձեւին վրայ ոչինչ գիտենք, ինչպէս նաեւ կաթողիկոսական ընտրութեան եւ Նուիրապետութեան սահմաններուն վրայ։ Արդէն յիշեցինք թէ կաթողիկոսութիւնն ի սկզբան ունէր իւր իրաւասութեան ներքեւ բաց ի Վասպուրականէն՝ նաեւ Սիւնիքն եւ Արտաղ. վերջին երկու նահանգներն տարի մը վերջը բաժնուեցան. թէեւ դեռ 1216ին կը յիշուի թէ Տաթեւու եպիսկոպոսն Յովհաննէս յԱղթամար ընդունեցաւ իւր ձեռնադրութիւնը (Ստեփ. Օրբել. էջ 251. հմմտ. եւ Սիսական, էջ 232), բայց հակառակ իրաւանց եւ սովորութեան։ Մանաւորապէս Աղթամարայ թեմերէն կը յիշուին ԺԳ. դարուն՝ Արճէշ, Խլաթ, Բերկրի, Խիզան, մէկ խօսքով Քաջբերունիք ամբողջ։ Յաջորդ դարերուն ըստ պարագայից՝ այս սահմանն մերթ ընդարձակուած է եւ մերթ սեղմուած։ Վերջէն պիտի տեսնենք որ ԺԵ դարուն երկրորդ կէսին Աղթամարայ կաթողիկոսը մինչեւ անգամ տիրացած է Էջմիածնի, թէեւ սակաւատեւ ժամանակով։ Վերջին դարերու մէջ երկար խնդիրներու դուռ բացած է երկու աթոռներուս՝ Էջմիածնի եւ Աղթամարայ՝ իրաւասութեան սահմաններու վէճը։ Մանաւորապէս ԺԶ— ԺԷ դարերուն կը բաղձային Աղթամարցիք իրենց

հետ միացնել Վան, Բերկրի, Արճէշ, Խլաթ, Բաղէշ, Մուշ, Խօշապ եւ մինչեւ Ամիդ տարածուող երկիրները։ Ասոնցմէ մաս մը՝ Բերկրի, Արճէշ եւ Խլաթ ստուգիւ Աղթամարայ կը վերաբերէր մինչեւ ԺԵ դար (տես այս նկատմամբ վարը)։ Որչափ ալ հետաքրքրական է կէտիս քննութիւնը, բայց դժուարին ճիշդ եզրակացութեան մը հանիլ՝ անբաւական աղբիւրներու պատճառաւ։

1345ին կ'ըսուի թէ Աղթամարայ կաթողիկոսութիւնն իբր 14 եպիսկոպոսական աթոռ ունէր իր ներքեւ (Դանիէլ Դաւրիժեցի, Doc. armén. II, p. 628)։

Այսօր Աղթամարայ կաթողիկոսութիւնը ունի երկու վիճակ՝ երկուքն ալ Վանայ ծովու հարաւային եզերքը տարածուած։

ա. Աղթամար՝ որ ուղղակի կաթողիկոսին (հիմայ Տեղապահին) սեպհական թեմն է։ Վանայ կուսակալութենէն եօթը գիւղախմբեր այս թեմին շրջանակին մէջ են (Ոստան, Գաւաշ, Շատախ, Նորտուզ եւ Մոկք)։ Այս եօթը գիւղախմբերուն մէջ ընդ իրաւասութեամբ Աղթամարայ կաթողիկոսին կայ 193 եկեղեցի եւ 41 վանք, որոնց հասոյթներով կը մատակարարուի Աղթամարայ վանքն ու կաթողիկոսարանը։

բ. Խիզան՝ որ իբր անջատ առաջնորդութիւն մը կը ներկայանայ ԺԴ դարէն սկսեալ. եւ մինչեւ հիմայ կը պահէ նոյն հանգամանքը։ Անոր առաջնորդը կամ առաջնորդական փոխանորդը կ'անուանուի Աղթամարայ կաթողիկոսէն

կամ անոր տեղապահէն։ Խիզանի հոգեւոր շրջանակին մէջ են Սաորին կարկառ, Շինիձոր, Սպարկերտ, Մամրտանք, Նզար, Խորոս գիւղախմբերը, որոնց մէջ սփռուած է 109 եկեղեցի եւ 17 վանք, որոնք Աղթամարայ կաթողիկոսութեան ենթակայ են[1]։

Կաթողիկոսական աթոռն ի սկզբանէ անոր սեպհական մնաց Արծրունեան (Գագկայ) տան, ուստի յաջորդութիւնն նոյն աթոռին վրայ՝ կ՚անցնէր միշտ տոհմին անդամներէն միոյն, յատկապէս կաթողիկոսին եղբօրորդւոյ մը, եւ եթէ կը պակսէր այս՝ հօրեղբօրորդւոյ եւ կամ ուրիշ մերձաւոր ազգականի մը։ Եւ որպէս զի ուրիշներու ոտնձգութեամբ չխափանուէր այս կերպ յաջորդութիւնը՝ կաթողիկոսներն կը կանխէին իրենց կենդանութեան ընտրել եւ ձեռնադրել յաջորդը. որ սակայն իւր իշխանութիւնը միայն կաթողիկոսին մահուընէ ետքը կրնար գործածել։ Այս է պատճառը որ Աղթամարայ կաթողիկոսք կը պարծէին միշտ իրենց “յազգէ թագաւորաց„ “ի տոհմէ թագաւորին Գագկայ„ ըլլալուն վրայ. եւ իրենց ազգականք կը կրէին յաճախ “թագաւոր„ կամ “արքայուն„ տիտղոսը։

Ընտրութեան այս կերպը առիթ տալով կ՚ամբաստանէր 1340ին Ներսէս Պալիէնց հայերը՝ թէ անոնք ի կենդանութեան կաթողիկոսին կ՚ընտրեն յաջորդը (Mansi, Suppl. III, p. 522.)

---

[1] Ներկայ հանգամանաց մասին հմմտ. Ալպօյաճեան, Ընդ. Օր. 1908, էջ 346։

կաթողիկոսք իրենց ընտրութենէն ետքը կը ներկայանային նոյն կողմանց այլազգի բռնակալին եւ կ'ընդունէին անկէ հաստատութիւն. կը պատահէր երբեմն որ — հակառակորդաց ջանքերու առաջն առնելու համար — նաեւ կաշառք կ'ընծայէին բռնակալաց[1]։

---

1 Համեմ. Դանիէլ Աղթամարցի, էջ 324։ Հետաքրքրական է այս տեղ լսել Ներսէս Պալիէնցի ամբաստանութիւնն եւ անոր պատասխանը Դանիէլ Դաւրիժեցւոյ կողմանէ՝ գրուած 1345ին։

Ներսէս կը գրէ (Mansi, Sanct. Concil. Coll., Suppl. III, p. 522).

Հայք "զիշխանութիւնն որ անկ է կաթողիկոսին առնուն ի բաց եւ ընկենուն եւ կամ պատժեն։ Վասն զի կաթողիկոսն Աղաւնից (Columbarum) եւ կաթողիկոսն Աղթամարայ ի կենդանութեան իւրեանց ընտրեն զայլ ոմն յազգէն իւրեանց զոր եւ կամին եւ ապա օծանեն զնա ի կաթողիկոս. այլ ոչ վարի նա այնու իշխանութեամբ մինչեւ իցէ վախճանեալ կաթողիկոսին այնորիկ որ ընտրեացն զնա։ Բայց երբեմն ձեռնադրեն կաթողիկոսն առաջին՝ յաջորդ կաթողիկոսն երթայ առ խիչնակալն Թաթարաց, որ հեթանոս է, եւ ի նմանէ հաստատի ի կաթողիկոս. եւ զի հաստատիցի ի նմանէ՝ պահանջի ի նմանէ գրամ՝ արծաթ եւ վճարել կարիցէ։ Այս ձեւ ընտրելոյ եւ հաստատելոյ կաթողիկոս՝ մուծեալ եղեւ յեկեղեցին Մեծ Հայոց ի ձեռն Շապհոյ թագաւորին Պարսից, հեթանոսի, որ պաշտէ զհուր. եւ տեւէ մինչեւ ցայս որ ժամանակի։ Եւ երբեմն հաստատիցի ի նմին թագաւորէ, առ թագաւորն զթուղթս (հաստատութեան), զի եպիսկոպոսք եւ հպատակք հնազանդիցին նմա, վասն զի հաստատեալ է ի նմանէ, եւ զի դարձեալ տացեն նմա գումար ինչ արծաթոյ, եւ ապա ամ՝ ըստ ամէ նոյնպէս։ Եւ ամենայն քահանայք տան նմա ամի ամի առ նուազն զգին միոյ փղորինի. եւ նոյնպէս ի քրիստոնէից եւ ի հպատակաց ունի ամի ամի զգին առ նուազն վեց գրոշից արծաթոյ. եւ կաթողիկոսն ամի ամի ունի տալ թագաւորին որիշ ինչ գումար արծաթոյ, զոր թէ չտայցէ կամ այլ ինչ յանցանս յանցանիցի՝ թագաւորն ընկենու զնա (յիշխանութենէն) եւ

բնականաբար եկեղեցական օրինօք ընտրութիւն չէր կարելի համարիլ այսպիսի ընտրութիւն մը. եւ Ներսէս Շնորհալի իրաւունք ունէր բողոքելու եւ ապօրինի համարելու նոյնը, ըսելով. «Զինչ է ասել եւ զմօրէն այսօրիկ չարեաց՝ զյայտնապէս հակառակացն ճշմարտութեան, եւ սրբոյ աթոռոյ Լուսաւորչին, որք ինքնաշարժ ախտիւք եւ բռնակալաց աշխարհի հրամանօք, զանձինս իւրեանց յայս աստիճան հոգեւոր բարձրութեան ձգեն, եւ ոչ ընտրութեամբ Աստուծոյ աստուածայնոց արանց համօրէն ազգիս, որպէս օրէնն պահանջէ» (էջ 133)։

---

ըստ որպիսութեան յանցանացն գործելոց՝ պատժէ զնա մահու իսկ»։

Եւ այս կը պատասխանէ Դանիէլ Դաւրիժեցի (Hist. des Croisades, Documents arméniens, t. II, p. 628).

«Երկու հակառակաթոռ կաթողիկոսք են, այս ինքն Աղուանից զոր թարգմանեն Columbarum (Աղաւնեաց), եւ որ ունի իբր 30 եպիսկոպոսունս ստորակարգեալս, որպէս լուայ, եւ միւսն Աղթամարայ, որ ունի իբր 14 եպիսկոպոսունս ստորակարգեալս, եւ են սոքա ի Մեծ Հայս, վասն զի բռնաբար առին եւ ոչ ըստ օրինաց Աւետարանի, նոյնպէս ըստ նմին օրինակի եւ բռնաբար յաջորդեն. յորժամ կարեն գտանել զոք յազգականաց՝ ընտրեն յազգականաց անտի (իւրեանց) յաջորդս. այլ եթէ ի մէջ ազգականաց (չ)գտանիցին ատակք եւ արժանաւորք առ պաշտօնն՝ ընտրեն յայլոց։ Կաթողիկոսք իբրեւ նորոգ սկիզբն առնեն իշխելոյ, պատշա՛ճ եւ ի դէպ համարին երթալ առ ինքնակալն եւ յայտնել զիւրեանց մեծարանս, ըստ օրինակի այլոց ժամանակաւոր (մարմնաւոր) իշխանաց. եւ թագաւորն տայ նոցա շնորհս եւ ընդունի զնոսա իբրեւ զտեարս քրիստոնեայ ժողովրդոց։ Այլ թէ թագաւորին պարտին տանել ինչ կամ տալ, չէ ինչ հաւաստեաւ յայտ։»

Յաջորդ՝ յատկապէս վերջին ԺԷ—ԺԹ դարերուն Գրիգորիսեանց շառաւղին շրջանէն ետքը, երբ Աղթամարայ Աթոռին վրայ երեւցան ապիկար անձնաւորութիւններ, որոնք շահու եւ փառքի համար աւելի, քան հօտին բարօրութեան համար կը ձգտէին գահին, բոլորովին նսեմացաւ կաթողիկոսութեան փայլը, կաշառք, կուսակցական կռիւներ գերիշխող եղան. արեւու ծագման հետ նոր կաթողիկոս յերեւան կ՚ելլէր Աթոռին վրայ. ամէնն ալ իրարմէ ապիկար եւ աննշանակ։ Ցանցառ չեն դէպքեր դժբախտաբար, երբ այս անընդհատ փոփոխութիւնն նոյն իսկ անարգ՝ դաւաճանական պարագաներու մէջ տեղի կ՚ունենար, մանաւանդ վերջին շրջանին, որով եւ կորսնցուց Աթոռն իւր կարեւորութեան վերջին նշոյլներն ալ. եւ յաչս ամէնուն աւելորդ նկատուեցաւ բոլորովին Աթոռին գոյութիւնը։

Իրաց այս վիճակին քաջ գիտակ Էջմիածնի կաթողիկոսութիւնը ժամանակ ժամանակ փորձեր ըրած է միջամտելու Աղթամարայ կաթողիկոսաց խնդիրներուն։ Այս միջամտութեան առաջին յիշատակութեան կը պատահինք Փիլիպպոս կաթողիկոսի (1633—1655) օրով, որուն մասին կը գրէ Սոյ Սիմէոն կաթողիկոս իւր առ Փիլիպպոս ընդդիմաբանական թղթին մէջ այսպէս (ԱՐՐՏ. 1904, էջ 381).

"Դուք ընդէ՞ր զԱղուանից տունն յափշտակեցիք զոր ի ձեր թուղթն գրեալ էիք, թէ ինքն գլուխ աթոռ է ի սուրբ Լուսաւորչէն կարգեալ։

նոյնպէս եւ զԱղթամարայն ընդ ձեր իշխանութեամբ նուաճեցիք, որ ՆՃԻԶ տարի է, որ ինքնագլուխ կաթուղիկոսք են. թէպէտ գիրք կու պարսաւեն: Տե՛ս նո՛ս եղայ յարող տուն առ տուն՝ թէ դու Ուտելով զտունս այրեաց, պատճառանօք երկարեալ զաղօթս, զի առաւել դատաստանն ընդունիցին:„

Ցաւ է որ Սիմէոնի թղթին մէջ աւելի մանրամասնութիւններ չեն աւանդուած այս կարեւոր խնդրոյ վրայ: Բայց շարժումը, որ անգամ մը սկսաւ, շարունակուած կը տեսնենք. Եղիազարի (1682—1691) կաթողիկոսութեան առաջին տարին Էջմիածին կը գտնենք Աղթամարայ Թովմաս կաթողիկոսը, ուր Եղիազարէն կ՚օծուի եւ “կը բառնայ զըմբոստութիւն ի նախնեաց առաջնոց Հայրապետաց„ եւ կը դառնայ Աղթամար “հանդերձ սրբալոյս միռոնաւ„, եւ ինչպէս կ՚ըսուի “եղեն յԷջմիածին եւ յԱղթամար մի հօտ եւ մի հովիւ[1]„ (1683): Այս դէպքը կրկնուեցաւ ապա Նիկողայոս եւ Թովմաս Բ. (1761—1783) կաթողիկոսաց օրով, որոնք իրենց օծումն եւ վերահաստատութիւնն ընդունեցան առ ոտս Ղազար եւ Սիմէոն կաթողիկոսաց. Թովմաս մինչեւ իսկ առանձին բազմակնիք պայմանաւորութեամբ պարտաւորեց իւր յաջորդները, որ այնուհետեւ Աղթամարայ կաթողիկոսները իրենց ընտրութեան հաստատութիւնն եւ օծումը Էջմիածնի կաթողիկոսներէն

---

1 Բիւզանդիոն 1900, Թ. 1198:

առնուն եւ միայն անոնց գերիշխանութեան հնազանդ: Թէեւ գործնական երկարատեւ նշանակութիւն մը չունեցաւ այս պայմանաւորութիւնը, բայց Էջմիածնի աթոռոյն գերիշխանութիւնը միշտ ճանչցան Աղթամարցիք: Էջմիածնի կաթողիկոսաց վերաբերութիւնն դէպի Աղթամարայ թեմը լաւ կարելի է տեսնել Ղուկաս կաթողիկոսի 1791 թուին առ Ախիջան աղա ի Վան գրած թղթէն, ուր կաթողիկոսական թիկնածուներու վրայ խօսելով կ'ըսուի. "...բայց վասն այլոց՝ զորս ի միջոյ իւրեանց ընտրել կամիցին, մեզ չէ փոյթ: Զի եթէ մեզ եւ քեզ անսացող լինիցին ողորմելիք այնոքիկ, մեք ունիմք տալ նոցա զխորհուրդս պատշաճագոյն եւ օգտակար. այլ գիտեմք զի ոչ անսան մեզ. իսկ որովհետեւ յազգէ եւ եկեղեցւոյ մերմէ են, եւ ոչ պարտին մնալ առանց հոգեւոր այցելուի. ...արժան է մեզ խորհել զնոյն" (Դիւան, Դ. էջ 552):

ԺԹ դարէն սկսեալ ենթարկուեցաւ Աղթամարայ կաթողիկոսութիւնը Կ. Պոլսոյ Ազգ. Պատրիարքարանին: Վերջին ժամանակի կաթողիկոսաց գայթակղական կռիւներն ու անհոգ կառավարութիւնը պատճառ եղան որ այլ եւս նշանակութիւնը կորսնցուցած Աթոռն բարձուի: Արդեամբք ալ Խաչատուր կաթողիկոսի մահուամբ (1895) վերջացաւ նաեւ Աղթամարայ կաթողիկոսութիւնը:

"Հիմայ այս աթոռին մատակարարութիւնը այնքան փայլուն երեւոյթ մը չունի: Վանական

Տնօրէն խորհուրդ մը եւ Նոր կազմած քաղաքական առժամեայ ժողով մը տեղապահի մը նախագահութեամբ կը վարեն գործերը Կ. Պոլսոյ Պատրիարքարանին վերին հսկողութեան ներքեւ[1]»:

Անցնինք այժմ Կաթողիկոսաց յաջորդութեան:

---

1 Ընդ. Օր. 1908, էջ 347:

## ՅԱՋՈՐԴՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԱՑ

---

### 1. Դաւիթ Ա. (1113—1165°):

Յայսմաւուրքի համաձայն Դաւիթ էր "Թագաւորազն ի Թոռանցն Գագկայ„. իսկ Վարդան (էջ 116) որոշելով կ'ըսէ. "Դաւիթ ումն որդի Թոռնկայ ի կղզւոյն Աղթամարայ„։ Բայց Վարդանայ տեղեկութիւնը վստահելի չի թուիր հոս. վասն զի ինչպէս Թովմայ Արծրունւոյ շարունակողին (էջ 309—11) տուած ցեղաբանութենէն գիտենք՝ Դաւիթ Թոռնկայ ոչ թէ որդին էր, այլ թոռը։ Ի մէջ կը բերեմ հոս այս ցեղաբանութիւնը, որ ամէն կողմանէ վստահելի է եւ համաձայն այլուստ ծանօթ տեղեկութեանց։

Երբ Վասպուրականի Խաչիկ-Գուրգէն Թագաւորին (904—936) թոռը, Աբուսահլ-Համազասպի որդին՝ Յովհաննէս-Սենեքերիմ (1003—1026) Սելջուկեանց յարձակմանց առաջն առնուլ չկարենալով թողուց հայրենի աշխարհն Յունաց կայսեր՝ Վասիլ Բ.ին (1021), եւ ամփոփուեցաւ Սեբաստիա, Արեւելք՝ Աղթամարայ եւ շրջակայից տէր մնաց Սենեքերիմայ "ազգականներէն„ Խեղենիկ արքայուն[1]։

---

1 "Արքայուն„ բառս այս տեղ եւ այլուր պարզապէս "արքայազուն„, "յարքունական սերնդոց„ իմաստով է, եւ

Խնդենիկ ունեցաւ չորս որդի՝ տէր Գրիգոր, տէր Ստեփանոս, տէր Դաւիթ եւ Թոռնիկ Ա.։ Թոռնիկէն ծնաւ *Թադէոս իշխան*. եւ Թադէոսէն ծնաւ *Թոռնիկ Բ.*։ Եւ այս Թոռնիկէն ծնաւ *Աբլղարիբ* Կիւրապաղատ († 1121), որ ամուսնանալով Ծաղկոտան եւ Կոգովտի իշխան Գրիգորի դստեր՝ *Մարիամի* († 1123)՝ Ալուզի թոռան հետ՝ ունեցաւ եօթը մանչ եւ հինգ աղջիկ զաւակ։ Այս զաւակներէն կը յիշատակուին՝ երիցագոյնն՝ ԴԱՒԻԹ կաթողիկոս, եւ կրտսերն՝ Ստեփանոս-Ալուզ, որ Ամիւկի տէր կը կարգուի (էջ 315)։

Դաւթի կեանքէն քիչ բան ծանօթ է։ Թէ երբ հասաւ եպիսկոպոսութեան, չենք գիտեր։ Ինչպէս տեսանք, 1112ին երբ կաթողիկոս օծուեցաւ 15ամեայ Գրիգորիս Փոքր Վկայասէր, Դաւիթ “արհամարհեց անոր տղայութիւնը„ եւ ապստամբեցաւ՝ ինք զինքը ինքնագլուխ կաթողիկոս հռչակելով յԱղթամար։ Միութեան փորձերն՝ որոնք եղան Ծովքի կաթողիկոսարանէն եւ Անիէն, ի դերեւ անցան. անարդիւնք մնացին նաեւ Սեաւ լեռան ժողովքը եւ նզովից շանթերը. Դաւիթ մնաց անշարժ աթոռոյն վրայ ինքնագլուխ՝ յեցած իւր եղբարց եւ ազգականներու ճոխութեան վրայ։

---

չունի որ եւ իցէ (կրօնական) աղերս մոնգոլական “արքայուն„ (arkaon) անուան հետ։ Հմմտ. այս մասին **Марръ, Арк'аунъ,** монгольское названіе **Христіанъ,** въ связи съ вопросомъ объ Армянахъ-халкедонитахъ. С. Петерб. 1905 (= **Византійскій** Временикъ, XII, 1–2), յատկապէս, էջ 65։

Իր կաթողիկոսական գործունէութեան մասին մանրամասնութիւն չէ աւանդուած մեզի։ Ինծի ծանօթ է երկու յիշատակարան ձեռագրաց, ուր կը յիշուի Դաւիթ իբրեւ կաթողիկոս Աղթամարայ։

1118ին Յովհաննէս կրօնաւոր, որդի Մուշէ՝ խմբագրելով Եսայեայ Մեկնութիւն մը յՈսկեբերանէ եւ յԵփրեմէ՝ Յիշատակարանին մէջ կը յայտնէ թէ "Գրեցաւ ի ՇԿԷ թուականիս Հայոց ի գեւղս, որ կոչի Մարմէտ, ընդ հովանեաւ սուրբ գերեզմանի վարդապետին Թադէոսի, ի հայրապետութեանն Տեառն Դաւթի Հայոց կաթողիկոսի ի Վասպ[ուրական]. յորում կայր եւ այլ կաթողիկոս ի ներքին երկրին, մերձ ի յԱնտիոք. արդ եթէ ո՞ր ճշմարիտ է, կամ ո՞ր սուտ՝ զայն Աստուած գիտէ[1]:„

Շատ նկարագրական են Յովհաննէս կրօնաւորի տողերը, ուսկից կ'իմացուի թէ Դաւթի կաթողիկոսութիւնը դեռ 1118ին ի Մարմէտ խնդրական էր, վանականք իսկ միաբան չէին թէ "ո՞ր ճշմարիտ է, կամ ո՞ր սուտ„։

Երկրորդ յիշատակարանն է մագաղաթեայ հատակոտոր մը (այժմ բոլորովին եղծուած եւ ծակոտուած), որ ինկած է գլխագիր-երկաթագիր գրչութեամբ ձեռագրէ մը։

---

[1] Էջմ. Թ. 1239/1214 (Կար. Ցուց. 1209). Հրտ. Կարապետ եպ. Տէր-Մկրտչեան, ԱՐՐՏ. 1913, էջ 51։ Հմմտ. եւ Գ. Վ. Յովսէփեան՝ Քարտէզ հայ գրչութեան. Էջմ. 1913, էջ 29։

փոխութիւն մը կ'ակնարկէ՝ որ Դաւիթի մահուընէն ետքը միայն պատահած կրնայ ըլլալ։ Ցամենայն դէպս 1165ին արդէն վախճանած էր Դաւիթ։

Ո՞վ յաջորդեց իրեն։

Դաւիթ կաթողիկոսէն ետքը գրեթէ դար մը լռած են Աղթամարայ կաթողիկոսներուն անունները։ Ընդ. Օրացոյցի մէջ Դաւիթէն ետքը առաջին կաթողիկոս կը նշանակուի "Ստեփանոս նկարիչայ„ որ 1272ին վախճանած է, որով 1165—1272 դատարկ ձգուած է։ Այս դատարկը Հաւաքարանը կը լեցնէ բազմաթիւ անուններով, զորոնք հոս եւ ոչ իսկ յիշատակել կ'ուզենք։

## 2. Ստեփանոս Ա. (1165°—1185°/90°)։

Ինծի կ'երեւայ թէ յետ Դաւիթի աթոռն գրաւած է տէր Ստեփանոս, մեր եղբայրը. դժբախտաբար այս մասին Թովմայի Շարունակողը, որ իբր 1130ին կ'օրինակէր Ստեփանոսի համար Թովմայի Պատմագրութիւնը, անգիտութիւն չունի, եւ միայն Ամիւկի տէր գիտէ զՍտեփանոս. սակայն այն հատուկտոր յիշատակարանն յամէ 1161 գիրքը "տէր Ստեփանոս„ անուանելով՝ ամէն կասկած կը փարատէ թէ նա Ամիւկի մարմնաւոր տէր ըլլալէ զատ եկեղեցական՝ եւ այն բարձր աստիճանի հասած է։

Եթէ ուղիղ է մեր ենթադրութիւնը՝ Ստեփանոս ձեռնադրութիւն ընդունած ըլլալու է

Դաւթի կենդանութեան՝ ուստի 1165էն քիչ յառաջ։ ընտրութիւնն տժգոհութիւններ պատճառած կ'երեւայ, դատելով Շնորհալւոյ վերոյիշեալ խօսքերէն։ Այս թուականին Ստեփանոս ըլլալու էր աւելի քան 60 տարեկան, վասն զի հայրն՝ Արդլմեհ վախճանեցաւ 1121ին։ ընդունելով թէ նա ապրեցաւ իբր 80 տարի, մահն պատահած պիտի ըլլայ իբր 1185/90։

Ստեփանոս-Ալուզ ամուսնացած էր, ըստ Շարունակողին (էջ 318) եւ ունեցած ամուսնութենէն զաւակ մը միայն՝ Խեղենիկ արքայուն։ Սա կը յիշատակուի յամի 1245 Հոռոմոսի վանաց արձանագրութեան մը մէջ այսպէս[1].

"Ես Խէտէնեկս, որդի Ալուզի, եւ ամուսին իմ Մարջան տուաք ի սուրբ ուխտս զԹէզանո շամբն, որ գետն ի մէջն կու անցանէ, որ իշխանն մեզ էր տուել. տէր Բարսեղ եւ այլ եղբարքս սահմանեցին զտաւն սուրբ կարապետին բոլոր յեկեղեցիքս պատարագել զՔրիստոս, որչափ մեք կենդանի եմք, իշխանին եւ Խորիշահի կատարեն եւ յետ ելից մերոց ի մեր յանուն կատարեն ի տաւնի Նաւասարդի. եթէ ոք զմեր նուէրքս ի սուրբ ուխտէս հանէ եւ կամ զժամն խափանէ, դատի յԱստուծոյ. կատարիչք գրիս աւրհնին ի Քրիստոսէ. ամէն. ՈՂԴ։"

Խեդենիկ մանչ զաւակ չունենալով իւր դուստրն՝ Մարիամ կ'ամուսնացնէ Սեֆեդին

1 Սարգսեան Հ. Ն.՝ Տեղագրութիւն ի Մեծ եւ Փոքր Հայս, էջ 150. Կոստանեանց՝ Վիմական տարեգիր էջ 88։

արքայունի հետ, — որ նոյնպէս արծրունի թագաւորական զարմէ կը սերէր —, տալով իբրեւ օժիտ Աղթամարայ կէսը։ Պարոն Սեֆեդինի եղբայրներէն կը յիշուին Պր. Կուածիբէգ եւ Պր. Նուրադին։ Խեդենիկ յընթացս ժամանակի իյնալով դրամական կարօտութեան մէջ՝ Սեֆեդինի կը ծախէ նաեւ կղզւոյն մնացած մասը. եւ այսպէս ամբողջ կղզին կ'ըլլայ Սեֆեդինի սեպհականութիւն, ընդ նմին նաեւ կաթողիկոսական աթոռը։ Այս տեղեկութիւնները ունինք Դանիէլ Աղթամարցիէն (Թովմ. Արծրունի, էջ 321)։

Թէ այս որ թուականին կը պատահի՝ Դանիէլ չի նշանակեր։ Վերագոյն տեսանք որ Խեդենիկ 1245ին դեռ կենդանի է. թերեւս Սեֆեդին ըլլայ 1211ին հետեւեալ արձանագրութեան մէջ յիշուածը՝ Մանազկերտի Նօրատի գիւղի խաչքարի վրայ[1].

“ՈԿ. թվիս. եւ յիշխանութեան Սէվդնին[2] ես Մարտիրոս որդի Վարդանայ կանգնեցի վէմ եւ արձան պատուական ընտրեալ նշան յաղթութեան նկարեալ արեամբն Յիսուսի Քրիստոսի„ եւն։

Յամենայն դէպս Աղթամարայ Սեֆեդինեանց անցնիլը ԺԳ դարու առաջին քառորդին դնելու է։

---

1 Թորոս Աղբար. Բ., էջ 279։

2 Կրնայ նաեւ Սէյիֆ էդ-դին Պաքթամուր Շահ-Արմէնն ալ ըլլալ, Խլաթի իշխողը (1195–1193), եթէ արձանագրութեան թուականն “ՈԼ„ կամ “ՈԽ„ կարդացուի

## 3. [Անանուն. 1185—1272]:

կաթողիկոսական աթոռը Սեփեդինեան տան չանցած հարկ է ենթադրել Ստեփանոս Ալուզի յաջորդ մը նոյն աթոռին վրայ: Եթէ Ստեփանոս առ անագան 1185 վախճանած է, ասկէ մինչեւ 1272՝ երբ կը յիշատակուի ուրիշ Ստեփանոս կաթողիկոսի մը մահը՝ կը մնայ իբր 80 տարուան դատարկ մը. որուն մէկ մասն Ստեփանոսի տալով՝ մնացած ժամանակը ուրիշ անանուն մը կառավարած ըլլալու է աթոռը: Առայժմ հարկ է սպասել այս անուան յայտնութեան:

## 4. Ստեփանոս Բ. (°—1272):

Անանունի կը յաջորդէ Ստեփանոս մը, որ ընդ. Օր. "Ստեփանոս Նկարենայ„ կը կոչէ: Սա վախճանած է ըստ տապանագրին 1272ին. տապանաքարը կը գտնուի Աղթամարայ ծովուն մօտ անտառուտ լեռան մը կողքին շինուած Դիւարբոյնի Ս. Յարութիւն վանքի գերեզմանոցը, "գեղակերտ„ քանդակուածով եւ հետեւեալ արձանագրութեամբ[1].

"Ի թուին ՉԻԱ հայրապետին տեառն Ստեփաննոս կաթողիկոսի տապան:„

Ինձի ծանօթ է 1223էն Ստեփանոս Աղթամարցի մը, աշակերտ Յովհ. Վանական վարդապետի. բայց թէ կարելի՞ է զինքը ապա կաթողիկոսական աթոռին վրայ բարձրացած տես-

[1] Հմմտ. Խ. Լեւոնեան, Բիւզանդիոն 1903, Թ. 1905.

նել եւ նոյնացնել այս Ստեփանոսի հետ, զայն չգիտեմ։

Յիշատակարանս է (Էջմ. կար. Ցուց., թ. 2050).

«Գրեցաւ իմաստացոյց բանքս առաջնոց գտաւղաց բնութեան իրաց, որ ըստ գովի եւ պարսաւի. ի ՈՀԲ (1223) թուաբերութեանս մերաին աղանց ի վանքս Խորանաշատ կոչեցեալ ի նահանգիս Աղուանից ընդ հովանեաւ մաւրս լուսոյ Աստուածածնիս ձեռամբ Ստեփանոսի Աղթամարցոյ կրթեալ առ ոտս Վանական վարդապետիս։ Արդ աղաչեմ զհանդիպեալսդ յիշել միով Տէր ողորմեաւ զվարդապետն իմ եւ զտէր Սարգիս հաւրեղբայր եւ զծնաւղն իմ զՅոհանէս եւ զիմսն ամենայն։ Եւ հասարակաց ողորմեսցի Աստուած յիշողացդ եւ յիշելոցս. եւ ինքն եղիցի աւրհնեալ յաւիտեանս ամէն[1]։»

Այս թուականէն (1272) ետքը յաջորդաբար ընդառաջ կ՚ելլեն մեզի յիշատակարանաց մէջ Աղթամարայ աթոռոյն վրայ բազմաթիւ անուններ, որոնց ցանկը կարելի է կազմել գրեթէ առանց մեծ ընդհատութեան։

Ածիկին թեւը կու տայ մեր ձեռքը Դանիէլ Աղթամարցի՝ Թովմայ Արծրունւոյ պատմագրութեան ընդօրինակողը, իր ընդարձակ յիշատակարանին մէջ (էջ 321 եւ շար.)։

---

1 Марръ, Тексты и Разысканія по армяно-грузинской филологіи. VI. С. Петерб. 1904, էջ XVIII.

## 5. Ստեփանոս Գ. Սեֆեդինեան.
## (1272—1296(?)):

Սեֆեդին արքայուն բազմաթիւ զաւակաց հայր կ'ըլլայ ի Մարեմայ դստերէն Խեդենիկ արքայունի. ասոնց անուններն են. ուստերք՝ Ստեփանոս, Ամիր կամ Պարոն Կուածիրեգ, Ամիր կամ Պարոն Գուրգէն (Գորգի) եւ Զաքարիա. դստերք՝ Թագուհի, Մարթա:

Այս անուններն աւանդած է մեզի Դանիէլ Աղթամարցի անթուական յիշատակարանի մը մէջ ալ (զոր ի մէջ բերած է Խ. Լեւոնեան՝ Բիւզանդիոն, Թ. 1193), ուր յիշելով զկաթողիկոսն Զաքարիա կը գրէ. "...ի յիշատակ ծնողաց Պարոն Սէֆէդինի եւ աստուածասէր տիկնոջն Մարիամու եւ գեղեցիկ, բարեմիտ շառաւիղին եղբօրն Պարոն Գորգոյ եւ դարձեալ երկուց եղբարցն Տ. Ստեփանոսի կաթողիկոսի եւ Պարոն Կուածիպէկի եւ քեռն Թագուհւոյ եւ Մարթայի հանգուցելոցն ի Քրիստոս"...:

Սեֆեդինի երէց որդին Ստեփանոս կ'ընդունի կաթողիկոսական ձեռնադրութիւն "ի մանկութեան հասակի", հաւանօրէն առ կենդանութեամբ Ստեփանոսի ՙՆկարենայ († 1272) եւ կը գրաւէ աթոռը անոր մահուընէ ետքը: Դանիէլ իրեն 40 տարուան կաթողիկոսութիւն կու տայ. ("զոր իբրեւ կացեալ ամս Խ, փերափոխի յաշխարհէս տարաժամ կենօք եւ սակաւաւուրբք. եւ թողեալ զսուգ անմխիթար հօր իւրոյ պարոն Սեֆեդնին". որոշ չէ բացա-

տութիւնը. 40 տարի ապրեցա՞ւ թէ վարեց կաթողիկոսութիւնը). եթէ այս 40 տարիները 1272էն հաշուենք՝ Ստեփանոս կը վախճանի 1312ին: Բայց այս դժուարին է վասն զի 1300էն սկսեալ կը կառավարէր աթոռը Զաքարիա՝ անոր եղբայրը: Ընդ. Օր. Համեմատ “Ստեփանոս տղայ Սէֆէտինեան„ կը յիշուի 1275—1276 թուականներուն. իսկ ըստ Լեւոնեանի (Բիւզանդիոն, թ. 1193) 1288—1292: Ինձի ծանօթ են հետեւեալ յիշատակարանները 1276, 1291, 1293 եւ 1296 տարիներէն.

1. Թումանոս վարդապետ 1276ին ընդօրինակելով Աւետարան մը՝ կը գրէ.

“Արդ աւարտեցաւ սա ի թուիս Հայոց ՉԻԵ (1276) յամսեանն Մեհեկի Ը. ի տիեզերակալութեանն Ղուպիլա ղանին եւ յոստանիութեան Ապաղա ղանին որդւոյ եղբօրն Նորին: Եւ ի թագաւորութեանն Հայոց Լեւոնի՝ որդի Զապէլ թագուհոյ, դստեր Լեւոն թագաւորի: Եւ ի կաթողիկոսութեան տեառն Ստեփանոսի: Եւ մեր ընդ հովանեաւ լեալ՝ Ընծայեաց Աստուածածնիս՝ ի գաւառիս Վասպուրականիս: ... յիշեցէք ... զԳեաղոստն զՊօղոս Մելքն եւ զանոտու որդի Նորա զԹագվորն. Նաեւ զերկու եղբայրն Նորա զՑեհանա եւ զՇէլիա[1]:„

---

[1] Ապա կը յիշէ Արճէշի շարժը. Հրա. Սարգիսեան Հ. Բ.՝ Ցուցակ, էջ 426-427. Նոյնն կը յիշատակեն Նաեւ Ջամբ. Գ. 280 եւ Մատենադարան, 164-165. Հոս կը գրուի “ի թագաւորութեան տեառն Ստեփանոսի„. տպագրու-

2. Մեծոփայ մօտերը՝ Յարութիւն գիւղին եկեղեցւոյ մէջ տեսած է Հ. Ն. Սարգսեան[1] արձանագրութիւնս յամէ 1291.

“Ի ժամանակս տէրութեան Ուլաուն ղանին ես ծառայ ծառայից Աստուծոյ տէր Աբրահամ տեսուչ գաւառիս Քաջբերունոյ. տվաւ ինձ տեղիս այս տեառն է սուրբ Սահմադին կոչեցել. եւ շինեցի զեկեղեցիքս նախ զսուրբ Աստուածածինս. իսկ ի թագաւորութեանս Արղուն ղանին, ի հայրապետութեանն տեառն Ստեփանոսի զսուրբ Յարութիւնս ի կորդոյ շինեցի։ ... Շինեցաւ սուրբ Յարութիւնս ի թւիս ՉԽ ի փառս Քրիստոսի։”

3. Աղթամարայ Ս. Ստեփանոս եկեղեցւոյ դրան ճակատը կը կարդացուի արձանագրութիւնս[2] յամէ 1293.

“ՉԽԲ։ Ի հայրապետութեան տեառն Ստեփանոսի շինեցաւ եկեղեցիս ծախիւք սրբասնեալ կրաւնաւորացն Սարգսի եւ Ստեփանոսի որդեացն Հոռոմշահի յարդար վաստակոց իւրեանց. կատարեցաւ յիշատակ հոգւոյ իւրեանց եւ ծնողացն եւ ազգականացն. որք հանդիպիք յիշեցէք ի Քրիստոս։”

4. Աւետարան[3] գրուած ի վանս Վարա-

---

թեան վրիպակ, թէ ձեռագիրն այնպէս կ'ընթեռնու. իբր հոմանիշ “արքայուն” անուան։

1 Տեղագրութիւն ի Փոքր եւ ի Մեծ Հայս, էջ 269։

2 Ազգագր. Հանդէս Ի (1910), էջ 209։

3 Ձեռագիր Նոր Նախիջեւանի Ս. Նիկողայոս եկեղեցւոյ. Հմմտ. Ե. Շահազիզ՝ Պատմական պատկերներ, էջ 100, ծն.։

գայ Ս. Նշան, ի թուին Հայոց ՉԽԲ (1293) ի կաթողիկոսութեան Ստեփանոսի։

5. Կարինեան Ցուցակ, թ. 999 (էջ 140) կը նշանակուի.

«Մաշտոց՝ գրեալ ի թղթի ի գիւղն Բաջանջ ի գաւառին Ածնդայ (sic) ի Հայրապետութեան տեառն Ստեփաննոսի, եւ ի թագաւորութեան Հայոց Հեթմոյ Բ. ի Անանեայ սարկաւագէ ի թուին Հայոց ՉԽԵ (տպ. ջխե) = 1296։»

## 6. Զաքարիա Ա. Սեֆեդինեան.
## (1296—1336)։

Ստեփանոսի կը յաջորդէ անոր կրսեր եղբայրն Զաքարիա։ Դանիէլ Աղթամարցւոյ հետեւելով հարկ է Ստեփանոսի մահուընէն մինչեւ Զաքարիայի ընտրութիւնը քանի մը տարուան դատարկ ենթադրել. վասն զի «յորժամ եհաս ժամ պարոն Սեֆեդնին... փոխիլ յաշխարհէս՝ սա ոչ ժամանեաց իւրովք ձեռօք հաստատել զտէր Զաքարիայն յաթոռ եղբօր իւրոյ տեառն Ստեփաննոսին։ Ապա տուեալ լինի յուսումն աստուածեղէն սուրբ գրոցն եւ հասու լեալ հին եւ նոր կտակարանացն։ Եւ ոչ զոք ունէր զօրաւիգ եւ օգնական իւր՝ բայց միայն զհարազատն իւր զԱմիր Գուրդէն, զհայր եւ զհայրագլուխ եւ զպարոն Կուռճբէկն եւ զպարոն Նուրադինն զհօրեղբարքն իւր։ Սոքա կամօքն Աստուծոյ ժողովեալք ի միասին, կոչումն արարեալ

սուրբ եպիսկոպոսաց, վարդապետաց եւ բազում կրօնաւորաց, եւ աղօթս արարեալ ի միասին՝ օրհնեցին եւ ձեռնադրեցին զտէր Զաքարիայն յաթոռ հայրապետութեան հօրեղբօր իւրոյ տեառն Ստեփանոսի„ (էջ 322)։ Ըստ այսմ Զաքարիայի ձեռնադրութիւնը կրնանք դնել իբր 1296ին։

Թէ ո՞վ վարեց տեղապահութիւնը, չէ աւանդուած։

Ընդ. Օր. Զաքարիայի ընտրութիւնը կը նշանակէ 1296ին եւ պաշտօնավարութիւնը յերկարած կը դնէ մինչեւ 1343. չգիտեմ ինչ հիմամբ այսպէս. ստոյգ է որ 1298ին կը յիշուի արդէն Զաքարիա, ուստի եւ կրնար 1296ին ընտրուած ըլլալ։ Լեւոնեանի համաձայն Զաքարիա ձեռագրաց մէջ կը յիշուի 1301—1334 եւ ըստ Փիրղալէմեանի 1335ին։ Ինձի ծանօթ են յիշատակարաններ 1298—1336 թուականներու մէջ գրուած, որոնք զԶաքարիա կենդանի գիտեն։ Բայց զարմանալի է որ ժամանակակից Դանիէլ, որ 1303ին զինքը ի մերձուստ կը ճանչնայ իբրեւ "աստուածապատիւ եւ երջանիկ երիցս երանեալ ամենիմաստ հայրապետ Հայոց„ եւ "յոյժ բարի եւ առատամիտ եւ աղքատասէր եւ աստուածային ձրիւք բարգաւաճեալ[1]„, մահը պատահած կը դնէ ՉՀԵ, այս է՝ 1326 թուին. կարդա՞լ արդեօք ՉՁԵ, այս ինքն 1336։

1 Թովմ. Արծր., էջ 319։

Զաքարիա Սիւնեաց մետրապոլիտին՝ Ստեփանոս Օրպէլեանի նշանաւոր բարեկամն էր եւ թղթակիցը, որ խնդրելով իրմէ Թովմա Արծրունւոյ պատմութիւնը՝ 1303ին գրել կու տար Դանիէլ Աղթամարցւոյ։ Իր կաթողիկոսական գործունէութեան մասին հետեւեալ դէպքը կը պատմէ Շարունակողն Սամուէլի[1].

"ՌՅԼԶ։ Ի ՉՁԳ[2] (= 1334) ամին մեռաւ Բուսայիտ Ղանն (իմա՝ Աբու Սէյիդ 1316—† 1335) եւ Նստաւ Արփա Ղանն Զ ամիս (1335—1336)․ եւ եկեալ քեռի Բուսայիտին Ալի փաշայ ՚նուինն ի Բաղդատայ՝ զԱրփա Ղանն եսպան, վասն զի քրիստոնեայ էր՝ յառաջին Ղանորաց զարմէն, եւ ինքն իւրովի այլ նոր ղան եդ ի թախթն՝ Մուսի անուն (1336), որ ոչ ելաւ եւ ոչ զօրացաւ․ եւ ինքն Ալի փաշայն վարէր զհուքմն Օրդուին՝ տարի եւ կէս. եւ արար հրաման քակել զեկեղեցիս, եւ քակեցին ի բազում տեղիս ի Մօսլայ մինչ ի Խլաթ եւ ի Սալամաստ․ մինչ որ գնաց առ նա տէր Զաքարիա Աղթամարայ կաթողիկոսն՝ պայազատն եւ արքայազարմն եւ ապա եբարձ զչար հուքմն։"

Նոյնն կը կրկնէ ուրիշ յիշատակագիր մը յամէ 1336, ըսելով "որ զհաւատս Հայոց Նոր գնեաց ի յանօրէն առաջնորդաց եւ զեկեղեցիքս ազատեաց Աստուծոյ տեսչութեամբն եւ ձեռօք

1 Սամ. Անեցի, էջ 159. հմմտ. եւ Չամչ. Գ. 338։
2 Տպ. ՉԾԳ։

խրոխտային[1]»: Կը յիշէ նաեւ Դանիէլ Աղթամարցի (էջ 323). «Սա կացեալ ընդդէմ չարեաց մրրկին Ալի փաշային եւ այլոց նմանեացն նորա, որ խրոխտային ի վերայ սրբոց եկեղեցեաց եւ հաւատոց քրիստոնէից. սա բազում հարկս եւ հարածս խափանէր ի վանորայց եւ ի կրօնաւորաց:» —

Բաց աստի արդիւնաւոր եղաւ Զաքարիա նաեւ շինարարական գործունէութեամբ. Դանիէլ կու տայ այս մասին մանրամասն տեղեկութիւններ (էջ 322—324). Լիմ կղզւոյն վրայ կը կառուցանէ յանուն Ս. Գէորգ զօրավարի գմբեթաձեւ տաճար մը եւ առընթեր մենաստան մը. յԱղթամար «ի թիկունս Ս. Խաչին» ձմենային ժամանակի համար մեծ ժամատուն մը եւ «ի կողմն արեւելից» ամառնային ժամանակի համար ժամատուն մը, «մեծանիստ կամարակապ ձեւօք կրակապ եւ սրբագործ, բերեալ զքարինս նորա յաշխարհէն Խլաթայ» եւ այլն:

«Հաւաքարան, ի համաձայն Զաքարիա Աղթամարայ թեմի համար սահմանած է նաեւ վանական «կողոպուտ» կոչուած օրէնքը.

«Առաջին տէր Զաքարիա զայս օրէնս սահմանեաց ամենայն թեմիցն յԱղթամարու. այս ինքն եթէ եպիսկոպոս, վարդապետ եւ քահանայ մեռանիցի, նախ զգրեանս իւր, նաեւ զփիլոն եւ զհանդերձս կողոպուտ առնելոց են իբրեւ հոգւոյ բաժին: Նոյնպէս եթէ Մելիք կամ թէ

[1] Թոր. Աղբ. Բ., էջ 253. տես փորր.

Ուես (գիւղապետ) մտանիցի՝ զնոյն արասցեն եւ ամենքին աթոռոյս լիցին: Ահա զայս բան Զաքարիա կանոնեաց որ կայ մինչեւ ցայսօր օրհնութեամբ եւ անիծիւք[1]:»

Զինքը պէտք չէ շփոթել ժամանակակից եւ համանուն Զաքարիա Ծործորեցւոյ հետ, որ Արտազու Ս. Թադէոս վանքի արքեպիսկոպոսն էր:

Զաքարիայի մասին ինձի ծանօթ յիշատակարաններն են.

1. Աւետարան Կարսի Ս. Աստուածածին եկեղեցւոյ մէջ. գրուած «Յովսեան քահանայի ձեռքով Տուրուբերան գաւառի Բէրդուկ գիւղում, Թամթարայ Ղազան խան եւ Զաքարիա հայոց հայրապետի օրով, ՉԽԷ թուին[2]»:

2. «Կատարեցի զսուրբ Աւետարանս զայս յաստուածախնամ կղզիս Աղթամար... ի հայրապետութեան տեառն Զաքարիայի եւ ի թուաբերութեան հայկազեանս տումարի ՉԽԶ (1297) ի գաւառն եւ ի նեղ ժամանակիս[3]:»

3. Դանիէլ Աղթամարցի Թովմ. Արծրունւոյ Պատմութեան վերջը (էջ 319) կը գրէ 1303ին.

1 Բիւզանդիոն 1900, Թ. 1193:

2 Լումայ 1903, Թ. 5, էջ 59:

3 Աւետարան Կզակլի գեղջ Արցախոյ. Բարխուդարեանց՝ Արցախ, էջ 112: Թուականն արուած է հոն ՋԻԶ (1477). որովհետեւ Աղթամարայ աթոռին վրայ ոչ այս եւ ոչ ՋԽԶ (1497) կամ ՉԻԶ (1277) թուին համանուն կաթողիկոս կարելի է ենթադրել. կ'առաջարկենք սխալագրութիւն համարելով՝ կարդալ ՉԽԶ:

«...սուրբ Եկեղեցւոյս Ս. Խաչիս Աղթամարայ. ընդ որոյ հովանեաւ շարագրեցաւ Պատմութիւնս այս ի թուականութեանս Հայոց ի ՉԾԲ, եւ յաշխարհակալ թագաւորութեանն Ղազանի, հրամանաւ եւ ծախիւք աստուածապատիւ եւ երջանիկ երիցս երանեալ ամենիմաստ Հայրապետիս Հայոց տեառն Զաքարիայի, որ է յոյժ բարի եւ առատամիտ եւ աղքատասէր եւ աստուածային ձիրքն բարգաւաճեալ, եւ ի խնդրոյ... տեառն Ստեփաննոսի (Օրպէլեան)... Եւ նա վասն սիրոյն աստուածային խնդրեաց զՊատմութիւնս ի մերոյ աստուածընկալ եւ գրբասէր եւ աթոռակալ սուրբ Լուսաւորչին ի տեառն Զաքարիայէ. իսկ սա մեծաւ ջանիւ ես գծագրել զսա յաղագս խնդրոյ նորա: Եւս առաւել կամեցող եղեալ այսմ գործոյ... հարազատ եղբայր տեառն Զաքարիայի Ամիր Գուրգին....:»

4. «Դիտապետք Հայոց՝ Տէր Գրիգոր [Սսոյ], տէր Զաքարէ [Աղթ.] եւ տէր Ստեփաննոս Աղուանից եւ վարժապետ Եսայեայ... գրեցաւ... ձեռամբ Թադէոսի ...ի թուին Հայոց ՉԾԲ ի գաւառիս Այրարատեան ի վանքն որ կոչի Նռնաւնից[1]:»

5. Գրութիւնք Եպիփանու Կիպրացւոյ[2]. «Գրեցաւ ի հայրապետութեան տեառն Զաքարէի Աղթամարայ եւ յառաջնորդութեան

1 Մեկն. ԺԲ. մարգարէից՝ Թօփճեան Ցուցակ Դադեան ձեռագրաց. Բ., էջ 45:

2 Մատենադարան, էջ 413:

գերահռչակ եւ սուրբ ուխտիս Վարագայ Յոհան վարդապետի յոյժ իմաստասիրի, հեզի եւ խոնարհի ... ի ... թուաբերութեան Հայոց մեծաց ՉԾԳ ... ձեռամբ ... Յոհաննէս քահանայի ի գաւառիս Վանայ ի գեւղս որ կոչի Աւանս ...:

6. Աւետարան ընդօրինակուած «ի ՉԾԸ (1309) թուին ի հայրապետութեան տեառն Զաքարիայի ի կղզին որ կոչի Լիմ[1]»:

7. Գիրք մանկութեան. «Գրեալ յիշատակ գէորգ կրօնաւոր քահանայի. ի թուա. Հայոց ՉԾԹ (= 1310) ձեռամբ Յովհ. գծագրող քահանայի. ի հայրապետութեան Զաքարէի Հայոց կաթողիկոսի, եւ յառաջնորդութեան գերահռչակ սուրբ ուխտիս Վարագայ՝ համաշունչ եղբարց Տէր Սարգսի եւ Տէր Պետրոսի, որք հեզութեամբ եւ հանդարտութեամբ հովուեն զբանաւոր հաւտս ... գրեցաւ ի գաւառիս Վանայ ի գեաւղն Աւանց ընդ հովանեաւ Սրբոյն Յովհաննու կարապետին եւ Ս. Գրիգորի Հայոց Լուսաւորչին ...[2]:»

8. Աւետարան գրուած 1314ին ի խնդրոյ տանուտէր Թորոսի.

«Ողորմութեամբ Տեառն սկսայ եւ կարողութեամբ Նորին կատարեցի զաստուածալոյս սուրբ Աւետարանս ի գաւառիս Արճիշոյ, ընդ հովանեաւ սուրբ Ստեփաննոսիս, յառաջնորդու-

---

1 Թոփճեան, էջ 53. Հմմտ. յիշատակարան մ՚ալ հաւանօրէն այս տարիէն՝ Հայրենիք թերթ, 1887, թ. 2257:

2 Թոր. Աղբ. Բ., էջ 411. ուրիշ մը այս թուէն՝ ՀԱՄ. 1898, էջ 514:

թեամբ Նահանկիս տեառն Զաքարիայի, որոյ Տէր Յիսուս պահեսցէ։ Այլ ես Յովսէփ գրիչ մեղուցեալ ծառայս Աստուծոյ աղաչեմ զամենայն մանկունսդ յիշեսջիք զՅովսէփ գրիչս եւ զծողսն իմ։ ի թվ. ՉԿԴ[1]։„

9. «Գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ նուաստ քահանայի Սարգսի, մեղապարտ գրչի. աւարտեցի... ընդ հովանեաւ Ս. Աստուածածնիս եւ Նախավկայիս ի թվ. մեծաց Հայոց ՉԿԹ (1320) ի հայրապետութեան Զաքարիայի, ի թագաւորութեան Քուսայտին (1316—1335). յիշեցէք զեղկելի գրիչս եւ զծնողսն եմ զՍուքիաս եւ զՄէլէքնազ ...[2]։„

10. Լեւոնեան (անդ) կը գրէ «1312ին գրուած Մաշտոցի մը վերջին յիշատակարանին մէջ այս Զաքարիայի հետ ի միասին կը յիշատակուի նաեւ Ներսէս կաթողիկոս մը իբրեւ աթոռակից։„

11. Կար. Ցուց. Թ. 182 Աստուածաշունչը կը գրուի. «Ի հայրապետութեան տեառն Զաքարիայի ի Լիմ կղզւոյ յԱբրահամ կրօնաւորէ, ի թուին Հայոց ՉԿԴ (= 1315)։„

12. Թուղթք Պաւղոսի եւ Մարգարէութիւնք Եսայեայ գրուած 1318ին, այժմ Ագուլիսի Ս. Թովմայի վանքը.

«Արդ յամի վերադիտութեան երջանիկ հոգեւոր տեառն Զաքարիայի Հայոց

1 Սարգիսեան՝ Ցուցակ, էջ 660։

2 Թօփճեան՝ Ցուցակ Բ, էջ 30։

դիտապետի եւ յառաջնորդութեան սուրբ ուխտիս Հոգեկիր վեհիմաստ հովուապետի տեառն Պետրոսի եւ Նորին Ցովասափի գրեցաւ տառս աստուածային ընդ հովանեաւ սրբոյ նշանիս Վարագայ յոյժ տառապանաւք եւ նեղութեամբ. ձեռամբ մեղապարտ եւ անարժան կր[օնաւոր]ի Ցակոբի ի թուիս Հայկազնեան տումարիս եւթն հարիւրորդի վաթսներորդի եւթներորդի (ՉԿԷ = 1318). յայսմ ամի, որում ծփի ամենայն երամ քրիստոսափառաց ի շնչմանէ նետողական ազգին Ղարպանդաղուլն ղանի. փչելով ի նա սատանայ հարկ հրամայեաց առնուլ յամենայն քրիստոնէից վասն հաւատոցն որ ի Քրիստոս. եւ նշան կապոյտ հրամայեաց կարել ի վերայ թիկանց հաւատացելոցս. եւս աւելի կրաւնաւորացս հարկ առնուին առանց ղանի հրամանին։ Ցետոյ երիցս երանեալ երջանիկ հայրապետն Զաքարիայ հետ ղանին գնացեալ մինչեւ ի Բաբելոն ամ՝ մի ողջոյն եւ աղեխ առեալ ի նմանէ զկրաւնաւորքս եւ զքահանայսն ազատեաց ի հարկապահանջութենէ. այլ յաշխարհականացն եւ ի տղայոցն առնուին. որոց զարդիս խաղաղական կենաւք շնորհեսցէ նմա Տէր եւ իւրոցն ամենայն եւ զելիցն[1] յիշատակ աւրհնութեամբ ի Քրիստոս։

Եւ յայսմ ամի գարունն առին զհարկն եւ աշունն ղանն մեռաւ. եւ այլ եկին ոմն անուն Աղլաղու, Սինթամուր եւ Հասան Թամուր ՌԳԾ

---

1 Տպ. գեշիցն։

մարդով եւ կրկին հարկ առին յոյժ անչափ եւ ոչ ոք ընդդիմացաւ նոցա. եւ վանօրայքս որ ազատ էին զոր ըմբռնեցին անհնարին տանջանօք չարչարեցին եւ անչափ տկ. առին. մանաւանդ սուրբ. ուխտս մատնեաւ ի ձեռս նոցա յանկարծակի գաղտաբար եկին յերեկուն եւ ամենեքեան փախեաք եւ զորս ըմբռնեցին անհնարին տանջեցին որ ոչ կարեմք պատմել. եւ քաղաքի տաճկնին բազում ինչք տուին եւ հազիւ թափեցին ի ձեռաց նոցա. եւ այլքս որ փախեաք այլ չիշխեցաք դառնալ ի վանքս, զի հանապազ զտիւ եւ զգիշեր ի խնդիր ելանեն մեզ. եւ մեր ահարեկեալք ի նոցանէ ահիւ եւ դողութեամբ կէաք. զցայգ եւ զցերեկ ի սուրբ լերինդ ի խորշս եւ ի ծերպս վիմաց. եւ նոքա ամեն օր գային եւ ղեկեղեցեաց դռներն եւ զխցերոյն զամէն բացին եւ յաւարի տարան զինչ որ գտան. բայց սուրբ Յովհաննիսա դուռն միայն մնաց վասն զի ճգնազգեաց փակակալս մեր Ղազար կր. զահ եւ զերկիւղ ի բաց եդեալ եւ յեկեղեցին կացեալ բազում աւուրս եւ սուրբ նշանն պահեաց զնոսա. եւ ափշեցոյց զսիրտս այլազգեացն որ ոչ մաքառեցան ընդ դուռս երկաթի: Եւ այլ բազում վիշտս եւ նեղութիւն եւ տառապանք կրեցաք յամենայն դիմաց յամարանի եւ ի ձմեռանի փախստեայ լինելով եւ բացօթեայ կելով ի սուրբ լերինդ եւ այլ դժնդակ նեղութիւն որ ոչ կարեմք պատմել. եւ մեք ամէն կրօնաւորքս կամ աւելի երիցս երանեալ առաջնորդաւս մերով տէր Պե. որ ոչ եթող վարատել մի ոք ի մէնջ.

որոց զարդիս խաղաղական կենօք շնորհեսցէ սոցա Տէր միաբան ուխտիս եւ զելիցն յիշատակաւ օրհնութեամբ ի Քրիստոս: Եւ մեք բազում ժամանակս զայս նեղութիւնս կրելով եւ առաւել քան զսոյնս եւ առ սէր սուրբ նշանիս եւ ի սա ապաւինելով ի սուրբ ուխտէս ոչ հեռացաք. քաղաքն եւ երկիրս ամեն այսր անդր փախեան լուր մարդատատան մնաց եւ մեք ի տեղս հաստատուն կացաք վասն սուրբ նշանի սիրոյս[1]:»

13. Աւետարան գրուած՝ «յերկրիս արքունական որ Մոկս կոչի, յաստուածապահ գեղս յԱռինչ... գրեցաւ Սուրբ Աւետարանս ի հայրապետութեան տեառն Ներսէսի եւ յառաջնորդութեան տեառն Զաքարիայի. ի թուականիս ՉՀԳ» (տպ. ՋՀԳ)[2] = 1324: Հ. Ալիշան ի ծան. կ՚ըսէ Ներսիսի համար՝ «Աղթամարայ կաթողիկոս», բայց որովհետեւ ոչ 1524ին (ՋՀԳ) եւ ոչ 1324ին Աղթամարայ աթոռոյն վրայ տեղ կայ Ներսէսի, հարկ է ենթադրել թէ հոս Ներսէս կամ Մոկաց եպիսկոպոսն է կամ Զաքարիայի աթոռակից մը, բայց այս դէպքին զարմանալի է միոյն «հայրապետ» եւ միւսին՝ «առաջնորդ» յորջորջումը:

14. Գրեցաւ (Աւետարանս) յամի ՉՀԶ (1327) թուականութեանս Հայոց. ի հայրա-

---

1 Լալայեանց՝ Ազգագր. Հանդ. ԺԲ. (1905), էջ 163–164:

2 Նաթանեան՝ Արտօսր Հայաստանի, Կ. Պոլիս 1879, էջ 147—150, ասկէ Հայապատում Գ., էջ 269:

պետութեանն տեառն Զաքարիայի, ձեռամբ... Աստուածատուր իրիցու[1]։

15. Կարինեան Թ. 949 Մայր Մաշտոց՝ կը գրուի ի քաղաքն Արճէշ ի դուռն Ս. Գէորգայ ի հայրապետութեան տեառն Զաքարիայի ի Յովհաննիսէ ի թուին Հայոց ՋՀԹ„ (1530, կարդա՛ ՉՀԹ = 1330, վասն զի այդ թուին Զաքարիա անուն կաթ. չի յիշուիր ոչ յԷջմիածին եւ ոչ յԱղթամար)։

16. Գիրք ձեռնադրութեան յամէ 1331. "Փառք... Յամի հայկազեան տոմարի արեգական տոհմի 22 երորդի, ի թագաւորութեան Արուսայիտ սուլտանի ազգի Նետողաց. եւ մերում թագաւորի Հայոց ազգի Լեւոնի թագաւորի եւ Բուրթելի իշխանաց իշխանի, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, յեպիսկոպոսութեան ստացողի գրոցս տէր Վարդանայ, ի մենաստանին որ կոչի Արգելան, ընդ հովանեաւ Աստուածածնիս եւ սուրբ Նշանիս եւ Յուսկայ որդւոյ սուրբ գերեզմանիս, ես Յոհաննէս մեղապարտ եւ անպիտան ի պիտանիս, հարկեալ յեղբարց գծագրեցի զշնորհալից տառս սրբարար եւ աստուածահրաշ, ըստ խնդրոյ եւ փափագանաց Նորակնքեալ եպիսկոպոսի տէր Վարդանայ ի ժամ հասեալ ծերութեանս. քանզի պատուհանք լուսարանաց պակասեալ եւ ձեռքս խոպանացեալ դողդոջէր„...[2]։ Գրուած է 22 թուին

---

[1] ԱՐՐՏ 1911, էջ 460։

[2] Ms. Brit. Mus. Or. 2682. Հմմտ. Conybeare, Cata-

Մեհեկի եւ Արեգ ամիսներուն, այս է Յուլիս-Օգոստոս 1331։

17. Խաչատուր եպիսկոպոս կը գրէ Աւետարան մը ի խնդրոյ Ահարոն միայնակեցի.

"Յանգ հանեալ կատարեցի շնորհաւք եւ ողորմութեամբն Աստուծոյ յամի ՉՁԹ երրորդի թուաբերութիւնս Հայոց, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի. գրեցաւ ձեռամբ մեղապարտ գրչի ի Լիմս ի հռչակաւոր եւ ի մեծ անապատի. ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի եւ Գէորգայ զաւրավարիս։ Արդ աղաչեմ զամենեսեան սիրողս Աստուծոյ յիշել ի Քրիստոս զԱհարոն ստացող սուրբ Աւետարանիս... ընդ սոցին եւ ես մեղապարտս ի գրչաց Խաչատուր եպիսկոպոս յերեսս անկեալ աղաչեմ...[1]։"

18. Աբրահամ գրիչ 1336ին վասն Խաչատուր քահանայի կը գրէ Աւետարան "ի կղզիս Լիմն, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին եւ Ս. Կարապետին եւ Ս. Գէորգեայ զօրավարին. յիշեցէք զ[հայրապ]ետն Զաքարիա որ զհաւատս Հայոց նոր գնեաց ի յանօրէն առաջնորդաց եւ զեկեղեցիքս ազատեաց Աստուծոյ տեսչութեամբն եւ ձեռաւք իւրովք։ Ընդ նմին եւ զառաջնորդս տեղւոյս յիշ. Տէր Յոհաննէս, ի

---

logue of the Armenian Manuscripts in the British Museum, London 1913, p. 59.

[1] Հ. Ց. Քօսեան՝ Ցուցակ հայերէն ձեռագրաց Արծնեան վարժարանին ի Կարին, թ. 28 (անտիպ)։

թուիս ՁՂԵ[1] ...ի դառն եւ ի վշտաբեր ժամանակիս, յորում ամի եւ ըստ մեղաց մերոց այս ամենայն հարկապահանջութիւնս եկն ի վերայ մեր[2]„։

19. Մկրտիչ Մեծոփեցի ի կենսագրութեան Մխիթար Կերմանցւոյ՝ անոր գործունէութեան ժամանակը կը դնէ[3].

“Ի թագաւորութեան ազգին Նետողաց խարպանդին եւ որդւոյ իւրոյ Բուսայիտի (1316—1335) ամբարշտաց եւ հալածչաց, եւ ի թագաւորութեանն Հայոց յաշխարհին Կիլիկեցւոց Օշնի եւ որդւոյ Նորին Լեւոնի եւ ի կաթողիկոսութեանն Տէր Յակոբու Անաւարզեցւոյ (1327—1341). իսկ յառաջնորդութեան աթոռոյս Ախթամարայ Տեառն Զաքարիայ։„

## 7. Ստեփանոս Գ. (1336՞—1346)։

Ընդ. Օր. Զաքարիայի յաջորդ կը նշանակէ “Ստեփանոս Սէֆէտինեան, քեռորդի Զաքարիա կաթողիկոսի. գրաւեց 1343, վախճանեցաւ 1346„։ Դանիէլ գրիչ յականէ չի յիշատակեր Զաքարիայի քեռորդւոյն կաթողիկոսանալը, թէեւ անոր անունը ծանօթ է իրեն, երբ

---

1 Սրուանձտեանց ունի ՋԾԵ = 1506. բայց որովհետեւ այս թուին Զաքարիա հայրապետ չկայ յԱղթամար կամ այլուր, հարկ է կարդալ ՉԾԵ, լաւ եւս ՁՂԵ որ կը համապատասխանէ Սամուէլի շարունակողին տուած թուականին. հմմտ. նաեւ վերը Յիշատ. Թ. 12։

2 Թորոս Աղբար. Բ., էջ 253։

3 ԱՐՐՏ 1899, էջ 166։

կը պատմէ (էջ 323—24) թէ Զաքարիայի կենդանութեան ժամանակ “քեռորդին իւր Տէր Ստեփաննոս զազգական իւր զդուստրն քեռ իւրոյ տարեալ ետ այլազգեացն... եւ եղեւ յետ սակաւ ժամանակի եհաս կատարումն եւ մահ սոցա՝ Ստեփանոսին եւ Ղամշայ խաթունին„։ Հոս յանձին Ստեփանոսի աչքի կը զարնէ աթոռակիցէ աւելի իբր հակառակաթոռ մը (հմմտ. եւ Լեւոնեան՝ “կ՚երեւի թէ ...Դաւթէն աթոռը յափշտակած է բռնութեամբ, ձեռնտուութեամբ այլադաւան պարոնի մը, որուն ի փոխարէն կնութեան կու տայ իր քրոջ աղջիկը՝ Ղամշայ խաթուն[1]„)։ Ղամշայ խաթունի արարուածը պատահած է սակայն Զաքարիայի օրով. ուստի եւ Լեւոնեանի հետեւութիւնը ճիշդ չի կրնար նկատուիլ։ Ցամենայն դէպս այն ստոյգ է թէ Զաքարիայի մահուընէն ետքը՝ ընդդէմ Դաւթի՝ Աղթամարայ աթոռին տիրացած էր կաթողիկոս մը Ստեփանոս անուն՝ Արծրունի տնէն, որ ըստ Լեւոնեանի “կը յիշուի ի ձեռագիրս 1336ին„, ինձի ծանօթ է ինքը միակ յիշատակարանի մը մէջ՝ 1340էն։ Սա ըլլալու է Ներսէս Պալիէնցի յիշած “Զաքարիա կաթողիկոսի եղբօր խորթ որդին„, որ յաջորդած է Զաքարիայի. Պալիէնց Հայոց դէմ գրած ամբաստանագրոյն մէջ ի մէջ այլոց կ՚ամբաստանէ Հայերը[2].

1 Բիւզանդիոն 1900, Թ. 1193։

2 Հմմտ. Documents armén. II, 640. քառակուսի փակագծի մէջ առնուած տողերը Ռայնալդէն են։

“Խորթք եւս առ նոսա այնպէս յաջորդեն ի ժառանգութեան, որպէս թէ օրինաւոր (ծնունդք) էին, եւ յառաջ մատուցանէին՝ առանց իրիք տնօրինման՝ յաստիճանս եւ յեպիսկոպոսութիւն, եւ մինչեւ ի կարգ իսկ կաթողիկոսութեան [որպէս արդեամբք իսկ դիպեցաւ եղբօրորդւոյ Զաքարիայի, որ էր որդի հարճին եղբօր յիշեալ Զաքարիայի, որ յառաջ մատուցաւ յեպիսկոպոսութիւն յետ հօրն իւրոյ]”:

Առ այս կը պատասխանէ Դանիէլ Դաւրիժեցի ջատագովելով Հայերը[1]. “Եւ նա, զորմէ ասացն ի կատարածին հատուածին՝ եթէ իցէ խորթ, սուտ է. քանզի նա կոչի Ստեփանոս եւ զմայրն նորա տեսի զձմեռն մի ողջոյն՝ կալով յաշխարհին ուր նոքա էին. եւ հայր նորա էր եղբայր կաթողիկոսին:”

Իսկ Մխիթար կաթողիկոս 1345ի Սսոյ ժողովոյն մէջ կը յիշէ խնդիրս. “Իսկ զեղբօրորդւոյ յիշեալ տեառն Զաքարիայի ասի եթէ հարճորդի է եղբօր տեառն Զաքարիայի. զայսմանէ ոչ էր լուեալ մեր. եւ իբրեւ լուաք եւ քննեցաք, ասացաւ մեզ եթէ ըստ հրամանի տեառն Յովհաննու լեալ իցէ[2]:”

Մխիթարայ յիշատակած Տ. Յովհաննէսը ինծի անծանօթ է. Կիլիկիոյ աթոռոյն վրայ կը յիշուի ԺԳ—ԺԴ դարերուն մէկ Յովհաննէս միայն, եւ այն է Յովհ. Մեծաբարոյ 1203—1221, որ Ստեփանոսի հետ խնդիր չէր կրնար

1 Documents armén. II, p. 640–641:

2 Ի մէջ բերուած անդ, էջ 641:

ունենալ. արդեօք Յակոբ կաթ. կ՚ակնարկուի, որ ժողովոյն հանդիսականներէն էր. դժուար է կարծել թէ Աղթամարցիք այսպիսի խնդրոյ մը համար Սիս դիմած ըլլան: Թերեւս նկատի առնուի հոս Յովհ. արքեպիսկոպոս Օրպէլեան, որ այս ժամանակները բաժնուած էր Սսէն եւ թերեւս յարած Աղթամարայ կաթողիկոսին եւ օրինաւոր հռչակած Ստեփանոսի յաջորդութիւնը: Այս խնդրոյ վրայ ուրիշ կողմանէ տեղեկութիւն կը պակսի: Ստեփանոս վախճանած է 1346 (կամ 1348) թուին. եւ որուն տապանաքարն մինչեւ ցայսօր ցոյց կը տրուի յԱղթամար. «կղզու ափին ինկած» այսպիսի արձանագրութեամբ.

«Ի թվին ՉՂԵ վախճանեցաւ աղքատասէր հայրապետն մեր տէր Ստեփանոս կաթողիկոս ամենայն Հայոց, ազգաւ Արծրունի. Աստուծոյ ողորմութիւն աթոռակից արասցէ զնա սրբոց հայրապետացն. ամէն[1]:»

Այս գովութիւնը կ՚ըլլայ իրեն նաեւ հետեւեալ յիշատակարանին մէջ (ճաշոց գիրք Ագուլիսի Ս. Թովմայի վանաց), որ գրուած է Սարգիս կրօնաւորի ձեռքով ՉՂԹ = 1340 թուին «ի վանս Աղաւնից, ի հայրապետութեան Ստեփաննոսի, որ եւ ազատեաց զազգս քահանայից ի հարկէ հալածչաց եւ նոյն ինքն տեսանէ զազատութիւն իւր ի թագաւորու-

1 Հրատարակուած Ազգագր. Հանդէս. Ի (1910), էջ 210, ուր տպագրուած է ՉԴԵ, բայց լուսագրոյն կը թուի Լեւոնեանի ընթերցուածը՝ ՉՂԵ, որ առաջին անգամ ծանօթացուց. Բիւզանդիոն 1900, թ. 1194:

թեան, զոր ոչ գոյ. այլ բարձեալ է թագաւորութիւն. քանզի իշխանք են խռովարարք եւ տատանեալք ի վերայ միմեանց աղմկեալք. զոր ոչ կարէ բերան պատմել զոր յայսմ ամի տեսին աչք մեր զաղէտ տարակուսանաց ի հեծելեաց, զորս երեսուն հազար մարդադէմ գազանաց ի վերայ երկրիս մերում յարձակեալք, զնետս սրեալ եւ զաղեղն լարեալ եւ զթուրս իւրեանց թափեալ յարեան ի վերայ երկրիս մերում. եւ ով կարէ պատմել զանօրէնութիւնս նոցա զոր արարին եւ գործեցին. քանզի բազում գաւառս գերեցին եւ աւերելով կործանեցին եւ զինչս արդիւնաց զամենայնն յափշտակեցին եւ զամենեսեան զքրիստոնեայք կողոպուտ արարին. մերկ եւ բոկ եւ ոչ թողին եւ ոչ մի ինչ ի վերայ անձանց քրիստոնէից. այլ զանասունս տաւարաց չորս չորս առեալ տարան զոչխարաց եւ զեզանց, եւ զկովուց եւ զձիոց, զէշուց եւ զերիվարաց եւ զհանդերձս ի յանձնէ մերկացուցին եւ մերկս արարին ի տեսիլս խայտառակաց. քանզի ո՛ր աչք բաւէ տեսանել զաղիողորմ տարակուսանաց. եւ կամ ո՛ր անձն բաւէր տեսանել եւ տանել այնմ չարչարանաց որ յերէկ տան տանուտէր եւ ամենայն իրօք լի, այսօր բեկեալ սրտիւ եւ տրտմեալ եւ մերկ ի վերայ մոխրոյ նստեալ. քանզի այնպէս լի էր երկիրս ամենայն բարութեամբ եւ յանկարծակի այնպէս արարին որ շունք ի սովոյ սատակէին. քանզի զխորս ամբարաց հացից հանէին եւ այնպէս բարկութեամբ եւ սրտմտութեամբ ի վերայ բոլոր

երկրիս արձակեցան, որ եւ Հարիւր անձն սրով խողխողեալ նահատակեցան, որ եւ ծաղկողի սորա մայրն նետով խողխողեալ փոխեցաւ ի Քրիստոս[1]:„

## 8. Դաւիթ Բ. Կաթ. (1346—1368՞):

Զաքարիա կաթողիկոսի եղբայրն Ամիր Գուրգէն՝ կ'ունենայ իւր ամուսնութենէն 4 մանչ զաւակ՝ Ամիր Սահմանդին, Ամիր Կուրծիբէկ, Ամիր Սէֆէդին եւ Դաւիթ. եւ մէկ դուստր՝ անունն անծանօթ: Դաւիթ Զաքարիայի խնամոց տակ կը սնանի. որուն եւ յաջորդն պիտի ըլլար: Ինչպէս Դանիէլ Աղթամարցի (էջ 324) կը պատմէ արդեամբ ալ Զաքարիա կը կանխէ ձեռնադրել զինքը կաթողիկոս իւր կենդանութեանը, երբ վախճանած էին անոր հայրն (կը յիշուի կենդանի 1303ին) եւ երիցագոյն եղբայրը (անդ):

Աթոռին տիրանալը սակայն բաւական դժուարութիւններու կապուած էր: Երկրին այլազգի բռնատէրերը որոշած էին մեծաքանակ տուրք՝ "Զի բազում ինչս գանձուց ոսկւոյ եւ արծաթոյ եդին ի վերայ թէ ով որ յառաջ մատիցէ յաթոռ յայն հայրապետութեան՝ տացէ

1 Ազգագր. Հանդէս ԺԲ. (1905), էջ 165: — Կը հարցնեմ. ի՞նչ տարբերութիւն կայ այս կողմանց այն ժամանակի եւ այժմեան ժողովրդոց բարուց մէջ: Նոյն "մարդադէմ գազաններն„ կը շրջին դեռ այսօր հոն. ժամանակը փոխանակ զգօնացնելու — աւելի գազանացուցած է մանաւանդ: 1915–16ի հայկական տառապանաց կենդանի նկարագրութիւնը կրնան նկատուիլ յիշատակագրին խօսքերը, բաղում մասամբ աւելի տկար ներկայացուած քան խիստ:

զբաղում խնչն զայն. ապա թէ ոչ այլազգիքն տիրեսցեն ուխտից…» (Դանիէլ, էջ 324)։

Գուիթ կորանցուցած ըլլալով իր հայրն եւ երեցագոյն եղբայրը, չունէր ամուր թիկունք դիմադրելու ընչաքաղց բանակալներու ուժին։ Իրեն օգնութեան հասան ի վերջոյ Ամիր Կուրծիբէկ եւ Ամիր Սէֆէդին հարազատները, որոնք ամէն ջանք ի գործ դրին՝ հաստատելու զԳուիթ հայրապետական աթոռին վրայ եւ յաջողեցան (1346) — հաւանօրէն յետ մահուան Ստեփանոսի ընդդէմ Ներսէս Բալատի։

Գուիթ կաթողիկոսի օրով յԱղթամար գրուած յիշատակարան ծանօթ չէ ինձի։ Փիրղալէմեան զԳուիթ 1336ին կը դնէ (Դիւ. 771)։

Լեւոնեան Գուէթի մահը պատահած կը համարի «ըստ ձեռագիր յիշատակարանի մը» 1368ին (Բիւզ. Թ. 1194)։ Իրմէ առած նոյնպէս ունի նաեւ Ընդ. Օր.։ Այն ստոյգ է որ 1369 թուին կը յիշատակուի Զաքարիա (տես վարը). ուստի կամ Զաքարիա առ կենդանութեան Գուէթի օծուած էր եւ այնպէս ինք զինքը կաթ. կը կոչէր. եւ կամ Գուիթ այս թուականէս յառաջ վախճանած էր։

## [Ներսէս Բալատ։]

Ընդ. Օր. իրեն ծանօթ յիշատակարաններու հետեւելով՝ Զաքարիայի աթոռակից կուտայ Ներսէս ամն Բալատ[1], որ կը յիշուի 1307—

---

1 Բալատ կամ Փալատ յորջորջումը «Հաւաքարանի» համաձայն է (Բիւզանդիոն, Թ. 1194)։

1315. իսկ ըստ Փիրղալէմեանի[1] "Ներսէս կը յիշուի 1313„ին։ Լեւոնեանի (Թ. 1193) նայելով "1312ին գրուած Մաշտոցի մը վերջին յիշատակարանին մէջ այս Զաքարիայի (Ա.) հետ միասին կը յիշատակուի նաեւ Ներսէս կաթողիկոս մը իբրեւ Աթոռակից„։ Սա նոյն ընդ. Օր. համաձայն ապա Դաւիթ կաթողիկոսի օրով Դաւիթի մրցակից կը հանդիսանայ եւ կը փորձէ 1363ին յինքն կորզել աթոռը, բայց չի յաջողիր այն անգամ։ Սակայն յետ մահուան Դաւիթի կը գրաւէ գաւազանը՝ հակառակ Զաքարիայի եւ իբր կաթողիկոս "կը յիշուի 1369—1377„. մինչդեռ Փիրղալէմեան (անդ) Ներսիսի մահը 1369ին կը դնէ։ Սակայն Դանիէլ Աղթամարցի, որ հանդիսատես եղած ըլլալու էր այս խնդիրներուն, զարմանալի կերպով ակնարկութիւն չունի ասոր վրայ. եւ ոչ իսկ ծանօթ ցուցնելով իւր գիրքը Ներսիսի։ Բան մը, որ կասկածական կ'ընծայէ ամբողջ պատմութիւնը։ Ես ինձի մատչելի աղբիւրներու մէջ չեմ հանդիպած Աղթամարայ Ներսէս կաթողիկոսի, յայտնի վկայութեամբ. ուստի չեմ համարձակիր զՆերսէս դասել կաթողիկոսաց շարքին մէջ, ո՛չ իբր աթոռակից եւ ո՛չ ալ իբր հակառակաթոռ։ Պատահած եմ սակայն "Ներսէս հայրապետի„ մը հետեւեալ տեղեր.

1. Կար. Ցուց. Թ. 749 Կիւրղի Կոչումն ընծայութեան՝ գրուած "յԱղթամար կղզւոյն ի հայրապետութեան տեառն Ներսէսի ի Դանիէլ

1 Դիւան, Դ., էջ 771։

եպիսկոպոսէ ի Թուին Հայոց ՉԿԵ„ (տպ. ՉԿՀ) այն է 1316[1]։

2. Վերյիշեալ յիշատակարանն Աւետարանին “գրեցաւ... յերկրիս արքունական որ Մոկս կոչի, յաստուածապահ գեղս յԱռինչ... ի հայրապետութեան տեառն Ներսէսի եւ յառաջնորդութեան տեառն Զաքարիայի ի թուականիս ՁՀԳ[2]„ (կարդա՛ ՉՀԳ = 1324)։

3. Յիշատակարան ճաշոցի մը[3] գրուած “ի Թուականութեանս Հայոց ՊԻ„ (1371), ուր կ՚ըսուի. “... յիշեա, Քրիստոս Աստուած, ողորմութեամբ քով զսրբասնունդ եւ զընտրեալ կրօնաւորքս որ կան այժմ ի դուռն Ս. Խաչին Աղթամարայ... եւ են թուով իբրեւ 15, որոց անուանքն են այսուքիկ. Տէր Ներսէս կաթողիկոս հեղահոգի, եւ աննենգ որդին եւ ազգական նորին Տէր Զաքարիա սրբահոգի եւ առաքինի, եւ ալեօք ծաղկեալ հարքս մեր Կարապետ կրօնաւոր...„։

Այս երեք յիշատակարաններէն առաջինը կարեւոր է ամբողջութեամբ ունենալ՝ գնահատելու համար ըստ արժանւոյն։ Ըստ երեւութին հետաքրքրական է այն, վասն զի գրիչն ինքնին Դանիէլ Աղթամարցին կ՚երեւայ։ Երրորդը երկիմաստ է. ըստ կիտադրութեան “կաթողիկոս„ յորջորջումն կրնայ թէ Ներսէսի եւ թէ Զաքա-

---

1 Թերեւս այս ձեռագիրն ըլլայ “Հաւաքարանի„ մէջ յիշուած Աղթամարայ օրինակը (Բիւզանդիոն, Թ. 1193)։

2 Տես վերը էջ 55։

3 Ի մէջ բերուած Խ. Ղեւոնեանէ, Բիւզանդիոն 1900, Թ. 1194։

րիայի տրուիլ։ Ամէն դէպքի մէջ պէտք է սպասել լաւագոյն աղբիւրներու։

## 9. Զաքարիա Բ. Նահատակ (1369—1393)։

Զաքարիա, զոր Ընդ. Օր. "ազգական մը Ներսէս Բոլատի" կը կոչէ, անշուշտ վերագոյն յիշուած 1371ի յիշատակարանէն առնել, կը յաջորդէ՝ ինչպէս յիշատակագիր մը կը վկայէ (տես վարը), 1369ին Դաւթի (կամ ըստ Լեւոնեանի եւ Փիրղալէմեանի՝ Ներսէսի 1378ին, Փիրղալէմեան՝ ՊԺԸ 1369 կը նշանակէ[1]). եւ կը նահատակուի յՈստան Ռշտունեաց 1393 Յունիս 25ին[2]։ Զաքարիա ըլլալու էր Դաւիթ կաթողիկոսի եղբօրորդին. հաւանօրէն "Գուռձիբէկ եւ զհոգակիցն Մէլիք Խաթուն յիշեցէք ի Քրիստոս Թվ. ՊԻԵ" (1376) սկիզբէն թերի տապանաքարին յԱղթամար[3], անոր ծնողները կը յարաբերէ։

Նահատակութիւնն այսպէս կը պատմուի. Ոստան քաղաքէն մոլլա մը ("դատաւոր") կու գայ կաթողիկոսին յԱղթամար, եւ նենգաւոր մտօք կ'ուզէ իր մախաղը աւանդ թողուլ անոր քով. կաթողիկոսը գուշակելով անոր չար խորհուրդը՝ կը մերժէ խնդիրքը. "Տուն իմ չէ պատշաճաւոր տեղի պահեստի, մոլլայ, այլ տեղ

1 Նօտարք, էջ 3, ծ. 3։

2 Մանրամասն վկայաբանութիւնը տես Հայոց Նոր Վկաները, էջ 170–176, եւ Գանձ մը՝ 177–181։ Վկայաբանութեան եւ Գանձին յօրինողն է Գրիգոր Խլաթեցի, որ ունի նաեւ ողբ մը ի Զաքարիա, հրտ. Լալայեանց՝ Զաւակք, էջ 306–308։

3 Ազգագր. Հանդ. Ի, էջ 211։

տեսցես յանկաւոր պաշտօնից քոց„։ Զայրացած ասկէ մոլլան՝ ձեռք կը վերցնէ կաթողիկոսին վրայ եւ կը հարուածէ։ Աղմուկիս վրայ միաբանք յօգնութիւն կը դիմեն կաթողիկոսին. զոր տեսնելով այլազգին կը փետէ անձամբ իր մօրուքը, կը վիրաւորէ երեսը, եւ այնպէս սպառնալեօք կ'երթայ Ոստանի ամիրային՝ չարախօսելու կաթողիկոսի եւ Աղթամարցիներու վրայ։ Կաթողիկոսը առանց գիտնալու մոլլային երթն Ամիրային՝ ինքն ալ կ'երթայ Ամիրային, որ նոյն ժամուն բաղնիք կը գտնուէր. կաթողիկոսն բռնաքարշ կը տարուի բաղնիք։ Ամիրան կը ստիպէ զկաթողիկոսն յուրացութիւն. եւ երբ սա յանձն չ'առնուր, այլազգիք կը յարձակին վրան, սաստիկ կը ծեծեն եւ գետնաքարշ կը ձգձգեն քաղաքին փողոցներէն, երբ կ'աւանդէ կաթողիկոսն հոգին։ Նշխարներն կը հաւաքեն քրիստոնեայք եւ պատուով կը թաղեն Աղթամար։ "Այս եղեւ ի թուականիս Հայոց ՊԽԲ ամին՝ Յունիս ամսոյ ի ԻԵ, յաւուր չորեքշաբաթի եւ ի Մեհեկի ԺԵ հանդիպեցաւ[1]։„

Սոյն Զաքարիան կ'ակնարկեն նաեւ հետեւեալ յիշատակարանները՝ 1369է, 1386է, 1389է եւ 1393է.

1. "Ես... քահանայ Կարապետ... կատարեցի զսուրբ գիրքս զայս (ճաշոց)... ի քա-

1 Հայոց Նոր Վկաներ, էջ 176. անդ էջ 182–183 կը քննուի նահատակութեան տարին. սխալ է Զամչ. Գ. էջ 433–434 տրուած թուականը՝ 1296։ Ճշդիւ 1393 Յունիս 25՝ չորեքշաբթի կ'իյնայ։

ղաքն Ոստանն . . . ի Թուականութեանս Հայոց ՊԺԸ (1369) ի հայրապետութեան տէր Զաքարիայի՝ որ յայսմ ամի նստաւ յաթոռ հայրապետութեան[1]:»

2. «Ի Հայկազեան Թուականիս ՊԼԵ (1386) կատարեցաւ . . . (Աւետարանս) ի հայրապետութեան Հայոց տեառն Զաքարիայ եւ ի Թագաւորութեանն որ ոչ երբեք բարեպաշտ[2]» եւ այլն:

3. «Բազում եւ մեծ աշխատանաւք հասուցի զսա (Ճառընտիր) յաւարտումն յաստուածաբնակ կղզւոջս Աղթամարայ ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ խաչիս. եւ սուրբ նշանիս. ի Թուականութեանս . . . ՊԼԸ. ի հայրապետութեան . . . տեառն Զաքարիայի[3]:»

4. Զաքարիա կրօնաւոր ի խնդրոյ Թադէոս կրօնաւորի կ՚ընդօրինակէ Աւետարան մը «ի կղզիս Աղթամար. ընդ հովանեաւ սուրբ խաչի եւ սուրբ նշանի ի հայրապետութեան տէր Զաքարիայի եւ ի Թուիս Հայոց ՊԽԲ[4]» (1393):

---

1 Նոտարք, էջ 119: Փիրղալէմեան գրչութեան թուականը կու տայ ՊՁԸ, որ յայտնապէս վրիպական է, վասն զի 1439ին Զաքարիայի հինգերորդ տարին էր: Տես վարը Զաքարիա Գ: Հակառակէն Զաքարիա Գ.ին կը վերաբերի Սարգիսեան՝ Տեղագրութիւն ի Փոքր եւ ի Մեծ Հայս, էջ 278 եւ Լալայեանց՝ Ազգագր. Հանդ. Ի, էջ 209 տրուած արձանագրութիւնն ՊԺԳ (կարդա՛ ՊՁԳ) թուէն. տե՛ս դարձեալ վարը:

2 Ճանիկեան՝ Հնութիւնք Ակնայ. Տփղիս 1895, էջ 78:

3 ԱՐՐՏ 1911, էջ 764:

4 Փիրղալէմեան՝ Նոտարք, էջ 1-2:

5. Թումա քահանայ կ'ընդօրինակէ Մաշտոց մը "ի գաւառացեալ եւ ի վշտաբեր ժամանակին, յորում էր Թուին Հայոց ՊԽԲ. ի քաղաքիս որ կոչի Վան... ի հայրապետութեան տեառն Զաքարիայի. եւ տէր Սահակայ[1]":

## 10. Դաւիթ Գ. (1393—1433):

Զաքարիայի նահատակութենէն (1393) ետքը բարձրացաւ Աղթամարայ աթոռը անոր "հարազատ" եղբայրը՝ Դաւիթ, ինչպէս կը գրէ Գրիգոր Խլաթեցի 1393ին իր՝ ի նահատակութիւն Զաքարիայի ողբին մէջ.

"Վասն մեր բարեխօսեա առ Քրիստոս Տէր ամենայնի.
Շնորհել մեզ հովիւ բարի զհարազատն քո սիրելի,
ԶՏէր Դաւիթ հոգւոյն արի, լի շնորհաւք յաջորդ աթոռի.
Պահել անսասան յերկրի յամեր ամս ժամանակի[2]:"

---

1 Նօտարք, էջ 3: Այն տէր Սահակ Թուի եպիսկոպոս Վարագայ, ինչպէս կը հաւաքի նաեւ Փիրղալէմեան, անդ ձան. 4. ասոր օրով կ'օրինակուի Ճաշոց մը "ի գաւառացեալ եւ ի վշտացելոյ ժամանակի, ընդ հովանեաւ սուրբ Գէորգայ զօրավարիս, որ հանդէպ Վարագայ. եւ ի հայրապետութեան տէր Սահակայ եւ եղբօր նորին Պօղոսի. եւ ի Թուին Հայոց ՊԽԲ": Նօտարք, էջ 2. հմմտ. եւ էջ 10: Սահակայ "հայրապետութենէ" պէտք չէ չփոթիլ:

2 Ալիշան, Յուշիկք, էջ 308:

Ժամանակակիցներէն դրուատեօք կը յիշատակուի Դաւիթ իբրեւ «սուրբ եւ անբիծ քաւչապետ» (յամի 1410), «հեզահոգի եւ հացատու ամենայնի եւ բարի ընդդէմ չար հատուցանողաց» (1416)։ 40 ամեայ երկար հովուապետութեան շրջանս թէպէտ «չար եւ դառն ժամանակ» կը կոչուի, բայց կենդանի եւ ուսումնասէր շրջան մը կը ներկայանայ, երբ ի Վասպուրական հակառակ անընդհատ հալածանաց կը ծաղկի գրչութիւնը, մանաւանդ յԱղթամար եւ ի Հիզան։ Բազմաթիւ գրչագիրներ հասած են մեզի այս շրջանէն, գրուած Գրիգոր Խլաթեցի, Թովմա, Ստեփանոս եւն գրիչներէն։

Իր կաթողիկոսութեան եօթներորդ տարին պատահեցաւ Գրիգոր Տաթեւացւոյ յարձակողականը Աղթամարայ վրայ, զոր յիշատակեցինք վերը. այս ինքն Քաջբերունեաց նահանգը Աղթամարայ կաթողիկոսի իրաւասութենէն կը հանուի եւ Սոյ կաթողիկոսութեան կ՚ենթարկուի։ Չամչեանի համաձայն այս կը պատահի նախընթաց գժտութեան մը հետեւութեամբ, որ տեղի ունեցած է Դաւիթ կաթողիկոսի եւ ժողովրդեան մէջ, կարեւոր կը համարիմ յառաջ բերել հոս Չամչեանի տողերը[1], որուն մասին ուրիշ վկայ կը պակսի ինձի.

«Յառաջնում ամի կաթողիկոսութեան սորա (Յակոբայ Սսեցւոյ 1409) ծագեցաւ երկ-

1 Չամչ. Գ. էջ 455–456։

պառակտութիւն մեծ յաթոռն Աղթամարայ. զի առաջնորդք եւ իշխանք կողմանց Վասպուրականի թշնամացեալ ընդ կաթողիկոսին իւրեանց (իմա՛ Դաւթի)՝ խորհէին ընկենուլ զնա յաթոռոյ. եւ բազումք ի նոցանէ պնդէին թէ ոչ եւս կամիմք մեք զառանձին առաջնորդութիւն այսր աթոռոյ. որոյ վասն իսկ գրեցին թուղթ յայլ եւ այլ կողմանս եւ ծանուցին զմիտս իւրեանց: Դէպ եղեւ ի նմին ժամանակի գալ Գրիգորի վարժապետին Ստաթեւու հանդերձ աշակերտօք իւրովք յերկիրն Արճիշոյ ի վանս Մեծոփայ, եւ բնակիլ անդ զամ մի ողջոյն. առ որ մատուցեալ ոմանց ի բնակչացն Աղթամարայ եւ ի մերձակայ տեղեաց՝ եդին առաջի նորա ծանր ծանր ամբաստանութիւնս վասն կաթողիկոսին իւրեանց. եւ նա ժողովեալ առ ինքն զքանի մի վարդապետս խնամատարութեամբ Յովհաննու վարդապետի առաջնորդին Մեծոփայ, խորհուրդ արար ընդ նոսա լուծանել զկաթողիկոսն Աղթամարայ յիշխանութենէն իւրմէ եւ արկանել զբովանդակ վիճակ թեմի նորա ընդ ձեռամբ հարազատ կաթողիկոսին Հայոց Յակոբայ, որ նստէր ի Սիս, եւ բառնալ զնզովս ապստամբութեանն Աղթամարայ: Ըստ այսմ խորհրդոյ ընկեցին զկաթողիկոս տեղւոյն յաթոռոյ նորա. եւ գրեցին վասն այսր յամենայն կողմանս Հայոց. յղեցին եւ առ տէր Յակոբ կաթողիկոս Սսոյ թուղթ ընդարձակ յայտ առնելով նմա զամենայն անցս Աղթամարայ: Այս թուղթ գտանի ի կարգս վարդապետական նա-

մակաց, զորս հաւաքեալ է Թովմաս վարդապետ Մեծոփեցի. եւ սկիզբն թղթոյն է այսպիսի[1]. "Ի յանեղական էէն է գերակատար...:"

Զսոյն գրեաց Յակոբ կաթողիկոս եւ յայլ տեղիս. եւ փութայր անյապաղ ի գլուխ տանել զերս իւրաց. բայց ոչ յաջողեցաւ. զի յետ սակաւ աւուրց ոմանք յեկեղեցականաց եւ յաշխարհականաց եւս եւ ոմանք ի միաբանից Սոաթեւու եւ Մեծոփայ պաշտպան լեալ ի կողմն Աղթամարայ՝ Նստուցին անդրէն զկաթողիկոս տեղւոյն յայն աթոռ ի ձեռն իշխանութեան այլազգեաց. եւ վարեցին ի սահմանաց անտի զայնոսիկ՝ որք գումարեալ էին ընդդէմ Աղթամարայ":

Չեմ կարծեր սակայն, թէ իրականութեան համապատասխան ըլլան այս տողերը. Զամչեան իւրովի հետեւցուցած է ժամանակակցաց մութ ակնարկութիւններէն: Այլազգ հարկ էր նշանակուիլ Դաւթի յաջորդին անունը. մինչդեռ ունինք յիշատակարաններ 1410էն, որոնք Աղթամարայ աթոռոյն վրայ զԴաւիթ գիտեն: Բայց թէ արդեամբք Գրիգոր Տաթեւացւոյ յարուցած խնդրոց Դաւթի դէմ նաեւ յԱղթամար կուսակցութիւն մը կազմակերպուեցաւ, այն կարելի է ենթադրել. եւ նոյնը կ'ակնարկեն անշուշտ 1416ի յիշատակագրին խօսքերը՝ "բարի ընդդէմ չար հատուցանողաց":

---

1 Ապահովապէս այս թուղթն է Կար. Ցուց. Թ. 55. "Թուղթ վասն եպիսկոպոսացն Աղթամարայ ի Գրիգոր Վարդապետէ":

Դաւիթ երկարակեաց եղաւ. կենաց վերջին օրերը շատ տառապալից էին. Քուրդերը՝ Փիրի բէկի առաջնորդութեամբ գրաւեցին Աղթամարը (1431). վանականք, անոնց հետ անշուշտ նաեւ Ծերունի կաթուղիկոսը, կը փախչին կղզիէն “մերկ եւ թափուր ի հայրենի ընչիցն„ եւ երկու տարի “տարաշխարհիկ„ կը մնան Մոկաց Կեցան գաւառի Ուրանց գիւղը, մինչեւ որ Դաւիթ կերպով մը հաշտութիւն կնքելով Փիրի բէկին հետ՝ կը ժողվէ կրկին զանոնք եւ կը բերէ Աղթամար (1433)։ Բայց այլ եւս հաշուած էին անոր օրերը. մասամբ հասուն տարիքը եւ մասամբ այս տառապանքները կ՚ընկճեն զինքը եւ կը վախճանի իրեններէն շրջապատուած յԱղթամար։

Այս տեղեկութիւնները ունինք Դանիէլ քահանայի յիշատակարանէն, որ կը գրէ 1436ին յԱղթամար այսպէս.

“Արդ գրեցաւ սուրբ Աւետարանս ի կղզիս Աղթամար՝ ընդ հովանեաւ սուրբ Խաչիս եւ սուրբ Նշանի. ի հայրապետութեան տէր Զաքարիայի. եւ ի թուին Հայոց ՊՁԵ, ձեռամբ Դանիէլ քահանայի. կենօք տառապանօք եւ բազում պանդխտութեամբ ի դառն եւ ի վշտաբեր ժամանակիս՝ յորում եկեալ... Փիրի բէկ, եւ առեալ զկղզիս Աղթամար... եւ մեր փախստական եղեալ եւ մերկ եւ թափուր ի հայրենի ընչիցն՝ եւ տարաշխարհիկ եղեալ կայաք երկու տարի ի յաստուածապահ գիւղն Ուրանց (ի Կեցան գաւառի Մոկաց) մինչեւ մեծ տէրն (Դաւիթ կաթ.) խնդիր արարեալ եւ եբեր զմեզ (յԱղ-

թամար) եւ ինքն Աստուած փոխեցաւ. եւ կամք երկմիտ եւ ի վայր մնացած[1]:„

Աղթամարայ առումն տեղի ունեցաւ 1431ին, ինչպէս կը գրէ ժամանակակիցն Թովմա Մինասենց. "Ի ՊՁ Թուականին էառ Փիրիբէկն զԱղթամար կղզին. եւ անպատմելի տրտմութիւն եհաս աշխարհիս եւ ազգիս Հայոց. եւ երկիրս աւերակ մնաց երկու տարի[2]„:

Նոյնը կը հաստատէ Թովմա գրիչ (Մինասե՞նց) 1433 թուին ի փախստեան գրած Աւետարանի մը յիշատակարանին մէջ. "Փիրի պէկ պաշարեաց եւ էառ զկղզին Աղթամար, եւ մեր եղեալ փախստական ի տեղւոյջէ՝ մերկ եւ թափուր ի հայրենի ընչիցն լինելով, եւ եկեալ բնակեցաք ի քրիստոսապաշտ գիւղս Ուրանց[3]:„

Ուստի փախստականաց "երկու տարի վերջը„ յԱղթամար դարձն միջնորդութեամբ "մեծ տեառն„՝ Դաւթի եղած ըլլալու է ՊՁԲ (1433) թուին եւ Դաւթի մահն պատահած նոյն ՊՁԲ տարւոյն վերջերը կամ յաջորդին սկիզբը: Ցամենայն դէպս ՊՁԳ թուին ընտրուած էր արդէն Զաքարիա իբրեւ պայազատ աթոռին, ինչպէս կը վկայէ խաչքարի մը արձանագիրը:

Այս հիմամբ հակաժամանակագրական է Կիրակոս կաթողիկոսի կոնդակին այն տեղին, ուր յամի 1441/2 Աղթամարայ ժամանակակից կաթողիկոսն երկիցս "Դաւիթ„ կ'անուանուի[4];

---

1 Նօտարք էջ 107: — 2 Նօտարք, էջ 95: — 3 Նօտարք, էջ 102: — 4 Ըստ Օրինակին, զոր Ղազար Ջահկեցի յառաջ կը բերէր (տես վերը էջ 21, ծան.):

ուսկից ազդուած է նաեւ Չամչեան եւ նոյն սխալի մէջ ինկած ։ Նոյն շրջանին կ'իշխէր Աղթամար Զաքարիա, ինչպէս գիտէ զայս նաեւ Թովմա Մեծոփեցի։ Կոնդակին խօսքերը Դաւիթ Ա. կաթողիկոսի վրայ են, ինչպէս մեր տուած բնագրէն յայտնի է։

Ցաջորդիւս կ'ամփոփեմ այն յիշատակարանները, որոնք Դաւթի կաթողիկոսութեան օրով գրուած են եւ զինքը կը յիշեն.

1. "Գրեցաւ ի թուականիս Հայոց ՊԽԴ ի յերկիրս Ռշտունեաց ի գեաւղս որ կոչի Տշող ... ի հայրապետութեան տեառն Դաւթի[1]:" Տօնամակ մը կը գրուի ՊԽԶ (1397) թուին "ի վանքս Գամաղիէլ կոչեցեալ. ի հայրապետութեան Կիլիկեցւոց տէր Կարապետին եւ ի մեր հայրապետութեանն Աղթամարայ Տէր Դաւթի[2]"։

2. "Աստուածաշունչ ... գրեալ ի թղթոյն Պօղոսի որ առ Հռովմայեցիս ցհանգիստ Յովհաննու ի գաւառին եւ քաղաքին Հիզան կոչեցեալ ... ի հայրապետութեան Կիլիկեցւոց Տէր Կարապետի եւ ի հայրապետութեան Ռշտունեաց որ յԱղթամար կղզի Դաւթի եղբօրն Տեառն Զաքարիայի ... ի թուին Հայոց ՊԽԹ (1400)[3]:"

3. Ծերուն քահանայ կ'օրինակէ ճառընտիր մը "ի քաղաքիս Ոստան. ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին ... ի թուականութեանս

---

1 Ինճիճեան՝ Ստորագր. Հին Հայաստ., էջ 171։

2 ԲԶՄ. 1898, էջ 30, ծն.։

3 Կար. Ցուց. Թ. 155։

Հայոց ՊԾ․ ի հայրապետութեան տէր Դաւթի Աղթամարայ. եւ ի Կիլիկեցւոց տէր կարապետի[1]„:

4. Գրիգոր Խլաթեցի ի խնդրոյ Կարապետ քահանայի կ'օրինակէ Աւետարան մը. "...ձեռնարկեալ գրեցի զսուրբ Աւետարանս ընդ հովանեաւ ամենամաքուր սուրբ Աստուածածնի ի վանս Մատնիվանի մերձ Խլաթայ մայրաքաղաք Բզնունեաց գաւառի, ի հայրապետութեան տեառն Կարապետի ընդհանուր կաթողիկոսի եւ մերոյս Նահանգի տէր Դաւթի Աղթամարայ կաթողիկոսի. իսկ յաշխարհակալութեան նեռողաց ազգին Միր Թամուրին եւ զարմից եւ զաւակաց նորին: Եւ գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ի ՊԾԱ ամին[2]„:

5. Աւետարան գրուած ի Հիզան "ի մեծի թուականիս Հայոց ՊԾԱ եւ ի կաթողիկոսութեան հայկազեան սեռի տեառն Դաւթի Աղթամարցւոյ, որ եւ եղբայր տեառն Զաքարիայի վկայեցելոյն ի Տեառնէ մարտիրոսական արեամբ...[3]„:

6. "Գրեցաւ սուրբ Աւետարանս յաստուածաբնակ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս, ի հայրապետութեան տէր Դաւթի, ի թուականիս Հայոց ՊԾԲ ձեռամբ Դանիէլի[4]„:

---

1 Նօտարք, էջ 13–14: Ուրիշ մ'ալ անդ էջ 14:

2 Աւետարան Ջնըլաչկերու. Հմմտ. Բանասէր 1905, էջ 100:

3 Նօտարք, էջ 18:

4 Նօտարք, էջ 20:

7. Դանիէլ սարկաւագ կ'օրինակէ Մաշտոց մը. “ի կղզիս Աղթամար, ի Հայրապետութեան տեառն Դաւթի, եւ թուականիս Հայոց ՊԾԳ. ի դառն ժամանակիս[1]„։

8. Ստեփանոս գրիչ կ'օրինակէ Տօնական մը “ի գեաւղս որ Տշող կոչի... ի թուականիս Հայոց ՊԾԳ. ի Հայրապետութեան տէր Դաւթի եւ ի բռնակալութեան աշխարհիս Թամուր Ղանի...[2]„։

9. Ստեփանոս քահանայ կ'օրինակէ ի Հիզան Աւետարան մը ՊԾԴ (1404) թուին “ի կաթուղիկոսութեան Հայկազանց սեռի տեառն Կարապետի Կիլիկեցւոյ. եւ ի մերոյ Հայրապետութեանս տեառն Դաւթի Աղթամարայ. զոր Տէր Աստուած պահեսցէ անսասանելի զաթոռ Հայրապետական[3]„։

10. Ցայսմաւուրք՝ Նկարէն, մեծագիր. “գրեալ ի թվին Հայոց ՊԾԵ (1405) յանապատիս յԱնձնապատ. ի Հայրապետութեան Տեառն Դաւթայ, եւ ի թագաւորութեանն ազգին Մարաց Եղտինչէրի։ Ցայսմ ամի մեռաւ Թամուր Ղան. որ ի մի ամ իբրեւ զբաժակ բարկութեան առեալ էր զնա Աստուած ի ձեռն. եւ ում կամէր արբուցանէր. զի յարեւելից մինչեւ ի մուտս արեւու զամենեսին հասարակ գերեաց, զհաւատացեալսն եւ զանհաւատսն զամենեսեան սրախողխող արար. եւ զԴրլմիշ՝ այնպէս արար

1 Թորոս Աղբար, Բ. էջ 276։
2 Նոտարք, էջ 22։
3 Նոտարք, էջ 23։

որպէս Ներսէս հայրապետն էր ասացեալ ի յողբն Ուռհայոյ: Յայսմ ամի շարժն ճ. գիւղ ի Հէշատայ երկիր յիրար խառնեցաւ: Յայսմ ամի ջուրքն յէնց պակասեցան որ բազում գետաղաց ջաղացք խափանեցան[1]„:

11. “Արդ գրեցաւ տառս այս (Յայսմաւուրք) ձեռամբ յոգնամեղ եւ անարհեստ գրչի Յովհաննէս քահանայի ի Հիզան քաղաքի… ի Թուականիս Հայոց ՊԾԶ. ի հայրապետութեան տեառն Դաւթի Աղթամարցւոյ, եւ ի խանութեան Ղարայ Յուսուֆի Թուրքի. ի խնդրոյ Պօղոս կրօնաւորի պատուական աբեղայի[2]:„

12. “Ճաշոց… գրեցի ի տեղիս որ կոչի Խորայձորու Ս. Աստուածածին որ է Տխում Ասորոց. ի Թվ. Հայոց ՊԾԹ. ի հայրապետութեան տէր Դաւթի… (յիշեցէք) զԱտոմ քահանայն…[3]:„

13. «Գրեցաւ սուրբ տառս (Յայսմաւուրք) ի Թուականիս Հայոց ՊԾԹ. ի հայրապետութեան տեառն տէր Դաւիթ սուրբ եւ անբիծ քաւչապետի. ի խնդրոյ աստուածասէր Յովհաննէս քահանայի… գրեցաւ սուրբ տառս ի դառն եւ ի վշտաբեր ժամանակիս… [ի բռնակալութեան] աշխարհիս Ղարայ Յուսուֆին, եւ ի հռչակաւոր գեաւղ՝ որ Տշող կոչի… յիշեցէք… զՍտեփանոս գծողս…[4]:„

[1] Թոր. Աղբ. Բ, էջ 391:

[2] Նոտարք, էջ 26:

[3] Ցուց. Դաշ. Բ, 51:

[4] Նոտարք, էջ 38:

14. Ի թուին ՊԿԱ (1412) «ի կաթողիկոսութեան մերոյ վիճակիս տեառն Դաւթի» Ստեփանոս Փիր վարդապետ կը նորոգէ ի Ոշտունիս Ս. Յակոբայ վանքը[1]:

15. Կարապետ գրիչ ՊԿԲ (1413) թուին կ'աւարտէ ճաշոցի մը ընդօրինակութիւնը «յերկիրս Մոկաց, ի վանքն Ծպատ» «ի հայրապետութեան տեառն Դաւթի»[2]:

16. Ստեփանոս գրիչ կ'օրինակէ Աւետարան մը ՊԿԴ (1415) թուին ի Նարեկայ վանս «ի հայրապետութեան տեառն Դաւթի[3] եւ յիշխանութեան գաւառիս մերոյ Բէլէք-բէկի»:

17. «Գրեցաւ (Յայսմաւուրք)... ի գեղս որ կոչի Իլոյ վանք... ձեռամբ Ղազար գրչի... ի հայրապետութեան տէր Դաւթի... ի թուականիս Հայոց ՊԿԴ. ի ժամանակիս ղանութեան Ղարայ Ուսուֆիս, ի յամիրութեան Եզդինշէրին եւ որդւոյ իւր Մելքին[4]:»

18. Ստեփանոս քահանայ կ'օրինակէ Մաշտոց «ի հայրապետութեան տէր Դաւթի. յոր էր թիւս ՊԿԶ[5]»:

19. «Կատարեցաւ սուրբ Աւետարանս (ի ձեռն Յովհաննէս գրչի) ի յերկիրս Ջերմաձորոյ, ի վանքս Ակոռոյ... ի թուաբերութեանս...

---

1 Նօտարք, էջ 137:

2 Նօտարք 72, ուր դրուած է 1423 տարւոյն մէջ. թերեւս կարդալ ՊԿԲ:

3 Բարխուդարեանց՝ Աղուանից երկիր եւ դր ցեք, Թիֆլիզ 1893, էջ 247:

4 Նօտարք, էջ 45:

5 Նօտարք, էջ 51:

ՊԿՁ. ի հայրապետութեան Հայոց տէր Դաւթի[1]։"

20. "Գրեցաւ սա (Աւետարանս) ձեռամբ... գրչի Յովհաննիսի, ի քաղաքս Հիզան կոչեցեալ... ի թուականիս Հայոց ՊԿՁ. եւ ի մերոյ հայրապետութեան տեառն Դաւթի Աղթամարցւոյ, (որ է) հեզահոգի եւ հացատու ամենայնի եւ բարի ընդդէմ չար հատուցանողաց...[2]։"

21. Քարոզգիրք Տաթեւացւոյ ընդօրինակուած ձեռամբ գրչի Աստուածատուր կրօնաւորի "ի թուականութեանս... ՊԿՁ. ի հայրապետութեան տեառն Դաւթի. եւ թագաւորութեան... Ղարայ Յուսուֆի... իսկ յիշխանութեան գաւառիս Մելիք Մահմատի... Գրեցաւ ի վանս Նարեկայ... եւ աւարտեցաւ ի մեծ եւ հռչակաւոր սուրբ ուխտս՝ Ս. Յակոբ[3]"։

22. "Աւարտեցաւ Ճառս որ կոչի Ոսկեփորիկ ի վանքս Ցիպնայ... ի թուականութեան Հայոց ՊԿՁ. ի ղանութեան Իւսուֆին, եւ ի կաթուղիկոսութեան Սրոյ Գրիգորի, եւ յԱղթամարայ կաթուղիկոսութեան տէր Դաւթի, ի չար եւ ի դառն ժամանակի...[4]։"

23. Աւետարան ընդօրինակութիւն "Թումայ Մեղուցեալ գրչի մեղսամած մատամբ ի

---

1 Նօտարք, էջ 51։

2 Նօտարք, էջ 51։

3 Նօտարք, էջ 52։

4 Նօտարք, էջ 53։

յաստուածարնակ եւ յանառիկ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս եւ սուրբ նշանիս եւ աստուածամուխ սուրբ Գեղարդեան ի հայրապետութեան Տեառն Դաւթի Հայոց ի ՊԿԷ (1418)[1]„։

24. Թովմա կրօնաւոր կ'օրինակէ Ճաշոց մը “ի յաստուածարնակ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս, եւ այլ սրբութեանց, որ աստ կան, ի հայրապետութեան տեառն Դաւթի, ի թուականութեան Հայոց ՊԿԸ[2]„։

25. Ստեփանոս քահանայ կ'օրինակէ Ճառընտիր մը, որուն Յիշատակարանին մէջ կը գրէ. “Եւ յայսմ ամի եկն մարախ բազում ի յաշխարհս մեր. եւ եկեր զամենայն բոյս դալարի, եւ եղեւ նեղութիւն մեծ. յորում էր թիւս Հայոց ՊԿԸ ի Նաւասարդի ամսոյ Ի (= 30 դեկտ. 1419), ի հայրապետութեան տէր Դաւթի եւ փոքր Զաքարիայի. եւ ի բռնակալութեան աշխարհիս Ղարայ Յուսուֆի եւ Ամիր Էզդընի։ Արդ գրեցաւ յերկիրս Ռշտունեաց՝ յանուանի եւ հռչակաւոր գեաւղս, որ կոչի Տայշող...[3]„։

26. Իգիտ (Պսակ) կրօնաւոր կ'օրինակէ Աւետարան մը ի վանս Նարեկայ “ի թուականութեանս Հայոց ՊԿԹ, ի հայրապետութեան տեառն Դաւթի. եւ [ի բռնակալութեան] Նա-

---

[1] Լալայեանց՝ Ջաւախք, էջ 310։

[2] Նօտարք, էջ 58։

[3] Նօտարք, էջ 59։

հանգիս մերոյ (Ռշտունեաց) բարձր անուն Մէլէքի...[1]»։

27. Ստեփանոս քահանայ կ'օրինակէ Աւետարան (ի Հիզա՞ն) «ի մեծ թուիս Հայոց ՊԿԹ. ի կաթուղիկոսութեան Հայկազեան սեռի տեառն Գրիգորի. եւ ի մերոյ կաթուղիկոսութեան Աղթամարայ տեառն Դաւթի. եւ ի թագաւորութեան այլասեռից Ղարայ Յուսուֆի...[2]»։

28. «Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականութեանս Հայոց տումարի ՊՀ (1421) ի հայրապետութեան Հայոց կաթուղիկոսի տէր Պօղոսի Սսոյ. եւ Աղթամարայ տէր Դաւթի. ի յաշխարհակալութեան Սքանտար ղանին, ի յերկիրս Վասպուրականի, ի գեաւղս որ կոչի Մարմետ...[3]»։

29. Յամի ՊՀ (1421) Թումա կրօնաւոր կ'ընդօրինակէ Ճաշոց մը. «բազում եւ մեծ աշխատանօք հասուցի զսա յաւարտումն յաստուածաբնակ եւ անառիկ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս եւ սուրբ Գեղարդեանս. ի հայրապետութեան տեառն Դաւթի կաթուղիկոսի, զոր Տէր Աստուած պահեսցէ զտեղիս զայս խաղաղութեամբ աթոռակալաւն իւրով ամէն[4]»։

30. «Աստուածաշունչ»... գրեալ ի Տոսպ գաւառի ի Մենաստանին Վարագայ ի կաթողիկոսութեան Աղթամարայ տէր Դաւթի ի

---

1 Նոտարք էջ 62։
2 Նոտարք, էջ 62։
3 Նոտարք, էջ 66։
4 Նոտարք, էջ 67։

Սաղաթիէլ աբեղայէ. ի թուին Հայոց ՊՀ (1421)[1]։"

31. Թումա դպիր կ'աւարտէ ՊՀԷ (1428) թուին Աւետարանի մը ընդօրինակութիւնը "յԱստուծով նախախնամեալ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ գմբէթայարդ եւ երկնանման սուրբ Խաչին եւ սուրբ Աստուածածնիս. եւ այլ բազմահաւաք սրբոց նշխարացս, որ աստ կան հաւաքեալ. ի հայրապետութեան տեառն Դաւթի. եւ ի ղանութեան ազգին Նետողաց ամիրզա Սքանտարին թուրք ազգաւ. որ եւ տիրեաց աշխարհիս մերում. եւ էառ բռնութեամբ զանառիկ ամրոցք աշխարհիս մերոյ. այս է զանմատչելիս եւ զանկոխ ոտից թշնամեաց՝ եւ զտեղիս ապաստանի բոլոր աշխարհացս զկղզիս Աղթամարայ, եւ զանառիկ ամրոցս եւ զմայրաքաղաքս երկրիս (Ռշտունեաց) զՈստան. զպարանոցատանջն զԱմուկ եւ մինչ ի Հէշատ եւ ի Նըւան, զբոլոր աշխարհս բռնակալեաց ընդ ձեռամբ իւրով եւ ընդ իշխանութեամբ...[2]։"

32. Վարդան դպիր կ'օրինակէ Յայսմաւուրք մը. "Եւ է ի մեծ թուականիս Հայոց ՊՀԹ (1430) ի կաթուղիկոսութեան Հայոց Աղթամարեցւոյ տեառն Դաւթի՝ եղբօր տեառն Զաքարիայի, որ վկայական արեամբ կատարեցաւ, եւ պսակեցաւ ի Քրիստոսէ ընդ ամենայն աւուրս. ի սուրբ ուխտս որ կոչի Հոսրովայ վանք[3]"։

---

1 Կար. Ցուց., Թ. 178։

2 Նոտարք, էջ 88։

3 Նոտարք, էջ 94։

33. Մահտասի Ներսէս կը նորոգէ Աւետարան մը ՊՁ թուին «ի կաթուղիկոսութեան Հայկազեանս սեռի տեառն Կոստանդեայ, եւ ի մերոյ կաթողիկոսութեան Աղթամարայ տեառն Դաւթի եւ ի թագաւորութեանս մերոյ ամիր Դայուտի, եւ ի ղանութեան աշխարհիս Սքանտարի. զոր Տէր Աստուածն Իսրայէլի պահեսցէ անսասան զաթոռ հայրապետական եւ զթագաւորական մերոյ ազգին[1]»։

34. «Արդ գրեցաւ սա (Աւետարան[2]) ի թվն ՊՁ ի հայրապետութեան Տ. Դաւթի յերկիրս Ռշտունեաց ի գիւղս Ճատուան, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնի .. ի դառն ժամանակիս զոր չեմ կարող ընդ գրով արկանել։»

## 11. Զաքարիա Գ. (1434—1464)։

Դաւիթ կաթողիկոս իր կենդանութեանը ձեռնադրած էր իրեն աթոռակից եւ յաջորդ «ի թագաւորական զարմէ զՏէր Զաքարիա, որ էր ի յազգէն Գագկայ թագաւորին[3]»։ Թէ ինչ արենակցական կապ ունէր Զաքարիա Դաւթի հետ՝ յայտնի չէ. իր ծնողաց եւ հարազատաց մասին կ'երեւայ թէ մանրամասնութիւններ կ'աւանդէ մեզի Զաքարիա խաչքարի մը հետեւեալ արձանագրութեան[4] մէջ (յամէ 1444).

---

1 Նոտարք, էջ 97։

2 Ղ. Գ. Նահապետեան տեսած է ի Ճատուան. Հայրենիք 1887, Թ. 2256։

3 Նոտարք, էջ 208։

4 Երւ. Լալայեանց՝ Ազգագր. Հանդ. Ի, էջ 211։

«Թվ. ՊՂԳ. Ես Տէր Զաքարիա կաթողիկոս կանգնեցի Խաչս բարեխաւս առ Ա(ստուա)ծ սակս փրկութեան Մելիք Ստեփանոսի եւ Խաթուն Մէլէքին ծընաւղացն[1], Տուղշահ բէկի, Տովլաթ շային, Ասլան բէկին որ երկիր պագանէք յիշեցէք ի Ք(րիստո)ս»

Զաքարիա արդէն 1419ին կը յիշուի իբր աթոռակից Դաւթի. այսպէս Ստեփանոս գրիչ ի Տշող Ուշտունեաց Ճառընտիր մը կ'օրինակէ «ի Հայրապետութեան տէր Դաւթի եւ փոքր Զաքարիայի[2]»: Բայց պաշտօնապէս նստաւ կաթողիկոսական աթոռին վրայ յետ մահուան Դաւթի՝ 1434ին սկիզբները[3]. այս թուին կը

---

1 «Հաւաքարան»ի մէջ (Բիւզանդիոն, Թ. 1195) կ'ըսուի «Տէր Աստուած լուսաւորէ զտէր Զաքարիայի հոգին եւ զիւր ծնողացն զԱմիրայ Գուրճիպէկին եւ եղբօր նորին Ամիրայ Ստեփանոսին եւ Խաթուն Մէլէքին»: Ուսկից սակայն յայտնի չէ թէ ի՞նչ էր յատկապէս հօր անունը. ըստ արձանագրին ըլլալու էր հայրն՝ Ստեփանոս եւ մայրն՝ Մէլէք Խաթուն. իսկ հօրեղբայրքն՝ Տուղշահբէկ, Ասլանբէկ եւ հօրաքոյրն՝ Տովլաթշահ: Այն ստոյգ է որ Զաքարիա ունէր Կուրճիպէկ անուն եղբայր մը, ուստի չշփոթեցնելու համար Հաւաքարանին տողերու նշանակութիւնն՝ ենթադրելու է եղեւառայութիւն:

2 Տես վերը, էջ 82:

3 Անիմանալի են Կարապետ գրչի խօսքերն, որ ՊՁԸ թուին կ'աւարտէ յՈստան Ճաշոց գրքի մը ընդօրինակութիւնն «ի Հայրապետութեան տէր Զաքարիայի որ յայսմ ամի նստաւ յաթոռ Հայրապետութեան» (Նշխարք, էջ 119). վասն զի բաց ի ՊՂԳ թուի արձանագրութենէն կը յիշուի Զաքարիա արդէն ՊՁԵ եւ ՊՁԶ թուին (Նշխարք, էջ 107 եւ 113): Հաւանօրէն հոս ընթերցման սխալ մը կայ. եւ կարդալու է փոխանակ ՊՁԸ՝ ՊԿԸ, որ կը յարմարի Զա-

պատահինք իրեն խաչքարի մը արձանագրութեան մէջ յԱղթամար.

“Թվ. ՊՁԳ. (Ես) Հայոց կաթողիկոս տէր Զաքարիայ կարողութեամբն Աստուծոյ կանգնեցի զխաչս բարեխաւս առ Աստուած հոգւոյս իմոյ. որք երկիր պագանէք յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս։ ԶԳրիգոր կազմող յիշեցէք ի Քրիստոս[1]։„

Աղթամարայ մեծագործ եւ անուանի կաթողիկոսներէն մին եղած է Զաքարիա. ժամանակի մարդը, որուն մասին սքանչանօք կը խօսին միաբերան ժամանակակիցք, իբրեւ “պատուական հայրապետ, ուղղափառ, անբիծ ախոյեան, քաջ եւ յաղթող, սրբասէր աղքատասէր եւ ողորմած„ (1437)։ Բոլոր հոգւով իւր հօտին նուիրուած անձնաւորութիւն մը, որ նաեւ յաչս այլազգեաց մեծարգի էր եւ ազդեցիկ։ 1459ին երբ Ղլիճ Ասլան կ'ասպատակէր Վասպուրականն եւ կը սպառնար նաեւ Աղթամարայ, Զա-

---

քարիա նահատակ կաթողիկոսի. որուն գահակալութիւնն Փիրղալէմեան կը դնէ ՊԺԸ թուին (Նօտարք, էջ 3, ծն. 3), եթէ չուզենք ըսել թէ Կարապետ Զաքարիայի կաթողիկոսութեան առաջին տարին՝ այն է ՊՁԳ՝ սկսած է ճաշոցին օրինակութիւնն եւ ՊՁԸ թուին աւարտած։

1 Նօտարք, էջ 103։ Այսպէս կարդացած է Փիրղալէմեան 1866ին եւ 1887ին։ Կարծեմ նոյն արձանագրութիւնն է զոր ի մէջ կը բերէ Հ. Ն. Սարգսեան՝ Տեղագրութիւն ի Փոքր եւ ի Մեծ Հայս. Վենետիկ 1864, էջ 278 եւ Լալայեանց՝ Ազգագր. Հանդէս Ի, էջ 209 հետեւեալ ձեւով. “Թվ. ՊԺԳ. Հայոց կաթողիկոս տէր Զաքարիա կարողութեամբն Աստուծոյ եւ աջողութեամբ նորին կանգնեցի զխաչս բարեխօս առ Աստուած հոգւոյ իմոյ„։ Տարեթիւն “ՊԺԳ„ յայտնապէս սխալ է. 1364ին Զաքարիա անուն կաթողիկոս չկար։

քարիա կը դիմէ անձամբ Ջհանշահին ի Խոյ եւ օգնութեան կը կոչէ քրիստոնեայ ժողովրդեան. որ արդեամբք ալ «բազում զօրօք» կու գայ «վրէժխնդիր վասն աւերման աշխարհիս եւ վասն տառապեալ ազգիս քրիստոնէից»: «Եւ մինչ ի խաղաղութեան Աղթամար... արիութեամբ տէր Զաքարիա կաթուղիկոսին[1]»: Նշանաւոր եղաւ իր դերը մանաւանդ 1461ին, երբ իր միջամտութեամբ հաշտեցուց Բաղէշի ամիրան Ջհանշահի հետ[2]:

1460ին, երբ Ջհանշահ Իրաղ, Հրէ եւ Խորասան նուաճեց եւ յաղթական մուտքն պիտի կատարէր Դաւրէժ, բազմահնարն Զաքարիա «բազում ընծայիւք եւ պատարագօք» ընդառաջ ելաւ յաղթողին շնորհաւորութեան. «զոր յոյժ սիրով ընկալաւ արքայն արքայից Ջհանշահ փաթշահն եւ դշխոյն Բէկում խաթուն եւ պատուեալ մեծարեցին զնա[3]»:

Զաքարիա մեծ ծրագիրներով եկած էր: Էջմիածնի այն ինչ նորոգուած Աթոռին խեթիւ կը նայէին Աղթամարեանք: Մանաւանդ փառամոլն Զաքարիա ինք զինքը շատ վիրաւորուած զգացած էր, որ Աթոռին նորոգութեան ժամանակ փոխանակ զինքն հրաւիրելու նստիլ նորահաստատ աթոռին վրայ[4], որով պիտի միանար Մեծ Հայաստան մէկ հովուի ձեռաց մէջ, Էջ-

1 Նոտարք, էջ 194. տե՛ս վարը:
2 Նոտարք, էջ 201. տե՛ս վարը:
3 Տե՛ս վարը Թ. 12:
4 Թովմա Մեծոփեցի՝ Յիշատակարան, էջ 66:

միաձնի ժողովն ընտրեց զԿիրակոս Վիրապեցին, եւ երբ սակէ տժգոհ մնաց՝ Գրիգոր Մակուեցին հանեց գահը։ Անշուշտ այս վէճքն աւելի զայրացուցին այն խնդիրք, որ յընթացս ժամանակի ծագեցան երկու աթոռներու իրաւասութեան սահմանին շուրջը։ Զաքարիա խորհեցաւ իր փառասիրութիւնն բանութեամբ յագեցնել՝ յինքն կորզելով Աթոռը։ Այս խիզախ քայլն իր քաջալերիչն ունէր Գրիգոր Մակուեցւոյ օրինակին մէջ, որ կաշառքով յափշտակած էր Վիրապեցւոյ ձեռքէն իշխանութիւնը։ Դժուարին չէր բազմահնար Զաքարիայի հաճել Ջհանշահն, որուն համար անտարբեր բան էր խնդիրը. տեսակէտով մը՝ մինչեւ անգամ բաղձալի։ Երկուց աթոռոց միութիւնն քրիստոնեայ ժողովուրդն սերտագոյնս կը կապէր իր գահին հետ։ Զաքարիայի առատաձեռն պարգեւները կը նպաստեն շինուած ծրագրին յաջող իրագործման։ Ջհանշահ կը հաւանի Զաքարիայի առաջարկութեան. «Եւ ետուն նմա խիլայ եւ պարգեւ զԱջն Լուսաւորչին մերոյ Ս. Գրիգորի եւ զպատիւ պատրիարքութեան ամենայն Հայոց[1]։

Յիշատակագրիս տողերուն համաձայն Լուսաւորչի Աջն արդէն Դաւրէժ կը գտնուէր, երբ եկաւ հոն Զաքարիա։ Այսպէս կ'իմանայ Առաքել Դաւրիժեցի, էջ 436 եւ կը հաստատէ Զամչեան (Գ. 503) ուրիշ աղբիւրէ մը քաղելով տողերս. Էջմիածին Արիստակէս վարդապետ

---

1 Յիշատակարան Թ. 12։

կաթողիկոսական իշխանութիւնն կը յափշտակէ Մակուեցւոյ ձեռքէն. «Եւ յայնմ շփոթութեան մի ոմն ի վարդապետաց կաթողիկոսարանին Սարգիս անուն գողացեալ զէջմիածնայ զԱջ Լուսաւորչին՝ տարաւ ի Գաւրէժ. եւ սպասէր անդ գալստեան Ջահանշահայ, զի առցէ ի նմանէ հրաման իշխանութեան՝ լինելոյ կաթողիկոս»։ Չամչեան այս դէպքին հետ կը կապէ Զաքարիայի Գաւրէժ գալը («Տեղեկացեալ այսմ ամենայնի կաթողիկոսն Աղթամարայ, որ կոչիւր Զաքարիա» եւն)։ Բայց ինձի շատ հաւանական չի թուիր այս միջադէպը. որովհետեւ ուղիղ չէ թէ Առիստակէս 1465էն յառաջ գրաւած է Մակուեցւոյ աթոռը, որ մինչեւ 1461 ինձ ծանօթ բազմաթիւ յիշատակարաններու մէջ առանձին կը յիշատակուի միշտ։

Ինձի բոլորովին ճիշդ չի թուիր նաեւ 1462 թուի յիշատակագրին խօսքերն (տե՛ս Թ. 13), որ կը գրէ. «որ տիրեաց երկու աթոռոցն՝ ոչ ղաբալով, այլ բաշխելով եւ շնորհելով Ջհանշահ ղանին»։ Նաեւ Զաքարիա գործածեց այն վատ միջոցն, կաշառքն, որ ժամանակակիցներու գլխաւոր զէնքն էր։

Զաքարիա աճապարեց անմիջապէս Էջմիածին. հալածեց անկէ զԳրիգոր Մակուեցի եւ տիրացաւ Աթոռոյն։ Այս կը պատահի յընթացս ՋԹ. (1460 Նոյ. 1 — 1461 Նոյ.) թուականին։ Այս թուին Ստեփանոս ոմն կը յիշատակագրէ նոյն տարին գրուած Աւետարանի մը մէջ. «Եւ ես Ստեփանոս ետու զՍ. Աւետարանս

Հաւատաւորի վանաց դրան Ս. Գէորգայ զօրավարին՝ ի հայրապետութեան տէր Զաքարիայի որ յայսմ ամի տիրեաց Էջմիածնին եւ Լուսաւորչի սուրբ Աջոյն[1]»: Այս իմաստով կ'ըսուի նաեւ ՋԺ թուին (1461 նոյ. — 1462 նոյ.) թէ «յայսմ ամի եղեւ պատրիարք[2]»: Երկու յիշատակագիրներուս վկայութիւնն աւելի կը հաստատէ ուրիշ յիշատակագիր մը, որ ՋԺ թուին յիշելով զԶաքարիա կը գրէ. «որ մին ամ է որ նստաւ յաթոռ սուրբ Լուսաւորչին ի յԷջմիածին[3]», այս ինքն սկսեալ 1460ի կէսերէն: Արդեամբք ալ Ջհանշահ ՋԹ—ՋԸ թուականներուն դեռ Հրէ եւ Խորասան պատերազմներ կը մղէր[4]:

Ստոյգ չ'երեւար Չամչեանի (Գ. 504) տողերն թէ Զաքարիա «յետ սակաւ աւուրց կարգեաց զՍարգիս վարդապետ ի փոխանորդութիւն՝ ձեռնադրեալ զնա եպիսկոպոս Էջմիածնի»: գոնէ իր անուան ամենեւին չեմ պատահած այս շրջանին:

1461ին ծագեցաւ Ջհանշահի եւ Խլաթայ սուլթանին՝ Ջհանգիրի մէջ նոր անհամաձայնութիւն. Ջհանշահ ստիպուեցաւ մեծ բանակ մը խաւրել Խլաթայ վրայ. զոր գրաւեց, քանդեց եւ բնակչութիւնն գերի վարեց: Նոյն

---

1 Նոտարք, էջ 196:

2 Անդ, էջ 199:

3 Բարխուդարեանց՝ Արցախ, էջ 139:

4 Աճառեան՝ Ցուցակ հայերէն ձեռագրաց Թաւրիզի, էջ 104:

պատուհասի պիտի ենթարկուէին նաեւ Բաղէշ, Սասուն եւ Տարօն։ Բնականաբար այս առթիւ մեծապէս պիտի կրէին այս կողմերուս քրիստոնեայ բնակչութիւնք։ Զաքարիա ուզեց հաշտարար մնալ երկու բռնապետներու մէջ եւ այսպէս պաշտպանել իր ժողովուրդն նոր ասպատակութեանց առջեւ։ Երեք չորս ամիս զբաղցուց այս գործը զինքը, բայց իր միջնորդութիւնն պսակուեցաւ յաջողութեամբ, եւ այսու անունն հռչակուեցաւ թէ քրիստոնեայ եւ թէ մահմետական ժողովուրդներու մէջ[1]։

Փառօք եւ անուամբ դարձաւ Էջմիածին։ Սակայն երկար չկրցաւ վայելել իր դրից մէջ։ Թէ ի՛նչ գործունէութիւն ցուցուց ինքը Էջմիածին, չէ աւանդուած։ Յամենայն դէպս շատ ապահով չէր զգար ինք զինքը աթոռին վրայ։ Իր հակառակորդներն չէին ննջեր. որոնք ամէն հնարագիտութեամբ կը ճգնէին հալածել զինքը Էջմիածնէն։ Առանց տարակուսի ասոնց գործն էր Հասան ալիի թշնամանալն Զաքարիայի հետ։

Սա Ջհանշահի որդին էր, որ “շրջէր թափառական զվերին կողմամբ գաւառին Արարատեան„։ Երբ Ջհանշահ, Զաքարիայի պաշտպանն, Իրաղ, Շիրազ եւ Կրման ծագած նոր ապստամբական շարժումներն ցածցնելու համար՝ այն կողմերն գացած էր, Հասան ալի “չարախօսութեամբ ոմանց„ կը խորհի նենգու-

1 Այս մասին տես վարը Թ. 12 յիշատակարանը։

թեամբ "ըմբռնել զմեծ պատրիարքն զտէր Զաքարիայն եւ պահանջել ի նմանէ գանձս եւ ինչս„ (1461 Դեկտ.)։ Աշալուրջն Զաքարիա վերահասու կ'ըլլայ ժամանակին իրեն դէմ ծրագրուած դաւին եւ կը կանխէ հնարագիտութեամբ խոյս տալ, այնպէս մը որ նաեւ իւր հակառակորդաց ծրագիրն ի դերեւ ելլէ։ Էջմիածնի ամենանուիրական գանձերն՝ "զԱջ Ս. Լուսաւորչին հանդերձ այլ սպասիւք„ առած "յաւուրս ձմեռայնոյ„ իրեններուն հետ գաղտագողի կը մեկնի Էջմիածնէն։ Բագուան-Պայազիտ ճամբով կը հասնի "ի սուրբ ուխտն Արգելան„։ Հեռացած Արարատեան սահմաններէն այլ եւս ապահով զգալով՝ հոն կը յայտնէ ինք զինքը եւ հետն բերած գանձերը։ Համբաւը կայծակի արագութեամբ կը տարածուի քրիստոնեայ բնակչութեան մէջ. որոնք խուռնընթաց կը դիմաւորեն կաթողիկոսը եւ թափօրաբար կը մեկնի Արգելեանի վանքէն դէպի Վան։ Հոն կը մեծարէ զինքը տեղւոյն կուսակալն Մահմատ Բէկ՝ Ջհանշահի կաթնեղբայրն, որ անշուշտ յառաջագոյն արդէն ծանօթ էր կաթողիկոսին։ Զուն վանէն կը մեկնի Ոստան, ուսկից նաւով պիտի անցնէր Աղթամար։ Հայոց անչափ ոգեւորութիւնն կը գրգռէ մահմեդական ժողովրդեան նախանձը, որոնք կորուստ կը նիւթեն կաթողիկոսին դէմ։ Սակայն Զաքարիա անվնաս կը զերծանի այս անգամ ալ. հրաժարելով Ոստան քանի մ'օր մնալու խորհրդէն՝ փութանակի կ'աճապարէ Աղթամար. ուր մեծ շքով մուտ կը

գործէ Դեկտեմբեր 11ին (Հայոց ՋԺԱ տարւոյն Նաւասարդ 16ին, Ուրբաթ օր մը[1]):

Յիշատակագրի մը համաձայն (ՋԺԱ թուէն)՝ Զաքարիա հետը բերած սուրբ իրերը Աղթամար ձգելով՝ կրկին Էջմիածին վերադարձաւ. "Եւ ինքն դարձեալ գնաց ի յաթոռն իւր յԷջմիածին եւ կացեալ յոլով ժամանակս եւ տիրէր երկու աթոռոցն ի թուականիս Հայոց ՋԺ[2]": Իրեն ընկերացած էր հօրեղբօրորդին Ստեփանոս, զոր Էջմիածին արքեպիսկոպոս ձեռնադրեց:

Բայց դարձեալ չշնորհուեցաւ իրեն հանգիստ աթոռին վրայ: Էջմիածին շատ հակառակորդներ ունէր Զաքարիա, որոնք ամէն հնարիւք իրեն կորուստը կ'ուզէին: Երկու Աթոռներուն հազիւ երկու տարի տիրացած՝ գեղակուր կ'ըլլայ յԷջմիածին իւր հակառակորդներէն, յընթացս 1464 տարւոյն: Այս դէպքն այսպէս կը յիշատակագրէ ժամանակակից մը՝ Յովհաննէս ՋԺԳ թուին՝ 1441ին գրուած Աւետարանի մը լուսանցքին վրայ. "Տէր Զաքարիա կաթողիկոսն էառ զԷջմիածինն եւ երկու տարի ի տեղն նստաւ. եւ գեղակուր եղեւ ի Նոցանէ[3]":

Հաւաքարանն (Բիւզանդիոն Թ. 1195) մահն Էջմիածին դառնալէն ամիս մը ետքը կը դնէ: Ուրիշ Յիշատակագիր մը ՋԺԲ թուին՝ Զաքարիայի ամենայն Հայոց կաթողիկոսութեան

1 Ուղիղ է ըստ տոմարագիտական հաշուին. ՋԺԱ. Նաւասարդ 1 կը համապատասխանէ փրկչական 1461 Նոյ. 26ին, ուստի Նաւասարդ 16 = Դեկտ. 11 Ուրբաթ:

2 Նօտարք, 208: Իմա՛ սկսեալ ՋԺ թուէն:

3 Նօտարք, էջ 220:

Թ տարին համամար կը դնէ Ջհանշահի ԻԴ տարւոյն[1]։ Ճշդիւ ալ՝ Ջհանշահ գահ բարձրացաւ 1437ին, որով անոր 24րդ տարին կ'իյնայ 1462ին։ Փիրղալէմեան մահուան տարին կը նշանակէ 1466ին (Դիւան, Գ, էջ 771)․ բայց ինծի կ'երեւայ թէ ճշդագոյն կ'ըլլայ եթէ մնանք 1464 թուին վրայ․ վասն զի բոլոր յիշատակագիրք կը յիշեն զինքը մինչեւ ԶԺԳ՝ այն է 1463 նոյ. — 1464 նոյ. թուականն եւ այնուհետեւ կը լռեն. Յովհաննէս գրիչն մինչեւ անգամ յայտնապէս այս տարին կը նշանակէր մահուան թուականը։

Այս հաշուով Զաքարիայի ընդհանուր Հայոց կաթողիկոսութիւնն տեւած էր 1460 Յուլիս — 1463/4, 3 տարի մօտաւորապէս։ Ճշդիւ դժուարին է որոշել, քանի որ ամսաթուերն անծանօթ են։

Էջմիածին Աթոռն կը գրաւէ Արիստակէս որ առաջին անգամ 1465 կը յիշուի[2]․ իսկ Աղթամար կը յաջորդէ Ստեփանոս։

Զաքարիայի կաթողիկոսութեան 30ամեայ շրջանին բազմաթիւ յիշատակարաններ գրուած են, որոնց մէջ կը յիշուի յաճախ իր անունը։ Այս տեղ ի մէջ կը բերեմ կարեւորներն միայն, որոնք Զաքարիայի կենսագրութեան համար մանրամասնութիւններ կը բովանդակեն։

1. Գրեցաւ սուրբ Աւետարանս ի կղզիս Աղթամար . . . ի հայրապետութեան տէր Զա-

1 Նօտարք, էջ 217։
2 Նօտարք, էջ 221։

քարիայի եւ ի թուին Հայոց ՊՁԵ (1436) ձեռամբ Գանիէլ քահանայի[1]։

2. Կարապետ գրիչ յամի ՊՂԶ (1447) կ՚օրինակէ Աւետարան մը ի Վան «ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ, եւ ի թագաւորութեան Ջ՛հանշայ ամիրզին... ի դառն եւ վշտաշատ ժամանակիս. որ վասն ծովացեալ մեղաց մերոց մահ տարածեցաւ յաշխարհի յԱսորոց մինչեւ ի Հայք եւ անողորմ կոտորեցան անթիւ տղայք եւ մանկունք, եւ ոչ գիտեմք զինչ լինելոց եմք։ Այլ եւ յիշեսջիք առաջի Քրիստոսի զպատուական հայրապետն զուղղափառ անբիծ ախոյեան քաջ եւ յաղթող՝ զսրբասէր զաղքատասէր եւ ողորմածն՝ զտէր Զաքարիա կաթողիկոս, զոր Տէր Աստուած պահեսցէ զնա ջահ անշիջանելի ի սուրբ եկեղեցի. եւ աջն անեղին եւ բազուկն հզօրին պահապան եւ հովանի լիցի նմա ամէն[2]։

3. Թովմա Մեծոփեցի[3] թուելով Էջմիածնի Աթոռոյն Նորոգութեան պատճառները՝ կը յիշէ երազ մը այսպէս. Ի սոյն աւուրցս որ կայր մեզ առաջի (այն է՝ 1441, ընտրութենէն յառաջ), Ստեփանոս ոմն ճգնաւոր եւ միայնակեաց, ի կողմանէն Աղթամարայ տրտնջելով գայր առ իս, թէ վասն էր ոչ զան յԱղթամար ի հնազանդութիւն նոցա առաջնոր-

1 Նօտարք, էջ 107։

2 Անդ 113. ուրիշ յիշատակարաններ յամի ՊՂԹ, էջ 121. ՊՂ՝ էջ 127։

3 Յիշատակարան, Հրտ. Կոստանեանց, էջ 66։

դին տէր Զաքարիա կաթուղիկոսին. եւ երթեալ ննջէ ի դուռն սուրբ Եկեղեցւոյն Ստեփանոսի Նախավկային ի գեղն Աղի...։

4. «ՊՂԶ[1] թվին (1447) ի հայրապետութեան Զաքարիայ՝ սուրբ Յարութիւնս նորոգեցաւ[2]։

5. Եւ արդ ես... Ներսէս անուամբ եւեթ աբեղայ՝ եղկելի ոգիս ծրագրող սորա (Աւետարանի)... գրեցի զսա ընդ հովանեաւ գերապայծառ եւ երկնանման սուրբ խաչիս գմբէթայարկ տաճարիս. եւ սուրբ Փրկչին՝ ընդ հովանեաւ սուրբ Սարգսիս. եւ ի հայրապետութեան տեառն Զաքարիայի. եւ ի թուականութեան հայկազեան տումարիս ՊՂԷ ամին։ Ներսէս սուտ անուն աբեղայիս որ զսուրբ Աւետարանս գծագրեցի եւ ծնողացն իմոց Կուռճի բէկին, եւ Էմնայ Խաթունին. եւ հարազատ եղբօրն իւրոյ Ստեփաննոս սրբասէր կրօնաւորի. Աստուած ողորմի ասացէք հոգւոր հօրն իմոյ անյաղթ փիլիսոփային՝ Մինասենց Թումային ամէն[3]։

6. Խորայէլ քահանայ կ՚օրինակէ Աւետարան մը «ի գիւղս Փասավանք» Մոկաց, «ի թուիս Հայոց ՊՂԶ ի կաթուղիկոսութեան հայ-

1 Այլ եւ այլ յիշատակարաններ՝ յամէ ՊՂԳ (Աղթամար)՝ Նօթեր., էջ 133, 134. ՊՂԴ (Աղթամար), էջ 146. ՊՂԵ (Բաղէշ), էջ 152 (Աղթամար), էջ 153 (Վան), էջ 154։

2 Խ. Լեւոնեան՝ Բիւզանդիոն 1903, Թ. 1905. Դիւա-բոյնի Ս. Յարութիւն վանքի աւերակներուն վրայ։

3 Նոտարք, էջ 159։ Ներսէս ունի ուրիշ Յիշատակարաններ ալ. տե՛ս իր մասին վարը։

կազեան սեռի տեառն Զաքարիայի Աղթամարցւոց. զոր Տէր Աստուած պահեսցէ անսասանելի զաթոռ հայրապետական եւ զթագաւորական. զի յիշելով զանուանս նոցա սասանեալ սաքրին եւ ոչ եւս երեւին թշնամիք ճշմարտութեան[1]:»

7. Աւետարան գրուած «ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի եւ Նորաշէն Ս. Էջմիածնին որ անուամբ Բազենից վանք յորջորջի (ի Գնունիս). ի հայրապետութեան տեառն Գրիգորի ընդհանուր Հայոց կաթուղիկոսի, եւ յաթոռակալութեան մերոյս վիճակին՝ պարծանք պարծանաց կաթուղիկէ եկեղեցւոյ սուրբ Խաչին Աղթամարայ տէր Զաքարիայի Հայոց կաթուղիկոսի. ի թագաւորութեան Ջհանշահի որդւոյ Ղարայ Ուսուֆի, ի թուականիս մերում ՋԴ (1455) յորում ժամանակի յոյժ ճշդիւ հարկապահանջութեամբ տառապի ազգս Հայոց[2]:»

8. Յամի 1459 Ոստան գրուած ճաշոցի մը յիշատակարանին մէջ կ'ըսուի[3]. «Եւ դարձեալ ծանուցանեմք ձեզ՝ զաւեր աշխարհիս մե-

1 Նոտարք, էջ 156. ուրիշ յիշատակարաններ՝ յամէ ՊԴԸ (Աղթամար), էջ 162. Ջ (ի վանս Փոքր Ակոռոյ Ջերմաձորոյ), էջ 168. ՋԱ (ի վանս Ս. Գէորգայ), էջ 169. (Աղթամար), էջ 170. ՋԳ (Բաղէշ), էջ 174. (ի վանս Սուխարայ), էջ 174. ՋԴ (Փառայվանք), էջ 178. ՋԵ (Հիզան), էջ 184. ՋԶ (Վան), էջ 189. ՋԷ (Աղթամար). Կար. Ցուցակ, թ. 945. ՋԸ (Աղթամար), Էջմիածնի թ. 1368. հմմտ. Արարատ 1910, էջ 625:

2 Թորոս Աղբար, Բ, էջ 387–388: Նոտարք, էջ 179:

3 Նոտարք, էջ 194:

րոյ, որ վասն մեր մեղաց հաս... [երեք տող անընթեռնլի] Մակու, եւ յազգմանէ չարին եւ վասն ծովացեալ մեղաց մերոց արձակեցաւ ի յերկաթոյն եւ բազում աւեր արար քաղաքաց եւ զինչ բռնած կայր հօրն ազատեաց՝ զՂլիճ Ասլանն եւ զորդին իւր զԱրապշէն եւ զորդին նորա. եւ ժողովեաց առ ինքն եւ արար իւր բազում հեծելս. եւ յետոյ առաքեաց զՂլիճ Ասլանն ի վերայ Վանայ բերդին զի առցէ զնա եւ ոչ կարաց. եւ ապա խորհուրդ չար արար վասն երկրին մերոյ եւ արար շատ աւեր եւ թա(լան). եւ գնաց ամօթով ի յետս եւ մնաց երկիրս աւերեալ. բայց մնաց փոքր ի շատէ երկիրն գաւաշից (Ռշտունեաց) ի դատարանք. ...եւ մնաց ի խաղաղութեան Աղթամար, զօրութեամբ սուրբ Խաչին եւ արիութեամբ տէր Զաքարիա կաթուղիկոսին: Ի սմին աւուրս գնաց (Զաքարիա կաթողիկոս) մինչեւ մօտ միրզայ Ջհանշէն զաւերումն աշխարհիս. եւ ելեալ (Ջհանշահն) ի քաղաքէն Խոյու բազում զօրօք, եւ եկեալ վրէժխնդիր վասն աւերման աշխարհիս եւ վասն տառապեալ ազգիս քրիստոնէից՝ զոր յուսամք որ զմիրզայ Ջհանշէն ընդ երկայն աւուրս արասցէ. զի թէ չէր եկեալ՝ ազգս քրիստոնէից կորուսեալ էր... Եւ այս եղեւ ի թուականիս Հայոց ՋԸ:»

9. Գրեցաւ սա (Աւետարանս) ի քաղաքս Արծկէ... ձեռամբ... Միքայէլ սուտանուն քահանայի ի թուականութեանս Հայոց ՋԹ (1460) ի հայրապետութեան տեառն Գրիգորի...

(ի խնդրոյ Ստեփանոս միայնակեցի)... Եւ ես Ստեփանոս ետու զսուրբ Աւետարանս Հաւատաւորի վանաց դրան Ս. Գէորգայ զօրավարին՝ ի հայրապետութեան տէր Զաքարիայի որ յայսմ ամի տիրեաց Էջմիածնին եւ Լուսաւորչի սուրբ Աջոյն[1]։

10. Գրիգոր քահանայ ՋԺ թուին կ'օրինակէ Ճառընտիր մը «յաստուածաբնակ կղզիս Աղթամար... ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, որ յայսմ ամի եղեւ պատրիարք[2]»։

11. Կարապետ քահանայ կ'օրինակէ Աւետարան մը յՈստան ՋԺ (1461) թուին «ի հայրապետութեան տեառն Զաքարիայի. որ եւ յայսմ ամի բերաւ Աջ սուրբ Լուսաւորչին ի յԱղթամար ի դուռն սուրբ Խաչին. ի դառն եւ ի վշտալից ժամանակիս՝ յորում ի խիստ նեղութեան եւ ի չար ծառայութեան կամք[3]»։

12. Զաքարիայի կենսագրութեան համար շատ կարեւոր յիշատակարան մը պահպանած է Առաքել Դաւրիժեցի, էջ 420—426 (ասկէ՝ Նոտարք, էջ 200—205), ուր նկարագրալից ոճով պատմուած է այս թուականին Զաքարիայի Ս. Աջով Էջմիածնէն փախչիլն եւ մեծահանդէս Աղթամար մտնելը։ Որչափ ալ բաղձալի էր մեզ այս նկարագրութիւնն այս տեղ յառաջ բերել ամբողջութեամբ, բայց զանց կ'ընենք երկա-

---

1 Նոտարք, էջ 196։ Անդ ուրիշ յիշատակարան մ'ալ գրուած նոյն թուին յԱղթամար։

2 Անդ, էջ 199։

3 Անդ, էջ 205։

րութեան համար, բաւականանալով քաղուա-
ծովս։

“Արդ գրեցաւ սուրբ գիրքս (Յայսմաւուրք) յամի թուականութեանս Հայոց ՋԺ ամին, յերկիրս Քաջբերունւոյ ի քաղաքս Արճէշ... ի հայրապետութեան տեառն Զաքարիայ կաթուղիկոսի ամենայն Հայոց եւ ի բռնակալութեան ազգին Նետողաց Ջհանշահ փատշահին, որ եկ բազում... զօրօք եւ գնացեալ եմուտ ի տունն Իրաղայ... էառ զքաղաքն (Ասպահան)... եւ անտի գնացեալ եմուտ ի Հրէ եւ ի Խորասան...։ եւ դարձեալ եկն ի թախտն իւր, ... ի Թարվէզն Որոյ ընդ առաջ գնացեալ մեծ հայրապետ-տէր Զաքարիայն աթոռակալ Ս. Խաչին Աղթամարայ, որ էր թագաւորազն ի թոռանց եւ շառաւիղէ արքային Գագկայ, բազում ընծայիւք եւ պատարագօք. զոր յոյժ սիրով ընկալաւ զնա արքայն արքայից Ջհանշահ փատշահն եւ դշխոյն Բէկում խաթունն, եւ պատուեալ մեծարեցին զնա. եւ ետուն նմա խլայ եւ պարգեւ զԱջ Լուսաւորչին մերոյ Ս. Գրիգորի. եւ զպատիւ պատրիարքութեան։ Որոյ... եկեալ... ի սուրբ Էջմիածինն... նստաւ ինքնակալ պատրիարք ընդհանուր ամենայն քրիստոնէական ազգի, որք են ընդ ամենայն ոլորտս տիեզերաց... Ընդ այնմ ժամանակին եղեւ ցասնուլ փատշահին ի վերայ ամիրային Բաղէշու. եւ բարկութեամբ առաքեաց չորս զօրագլուխս երկոտասան հազար հեծելազօրօք ի վերայ քաղաքին Խլաթայ. եւ գնացեալ աւարեալ քանդեցին զնա...

եւ զնոյն հանդերձեալ էին առնել ի Բաղէշ եւ ի Մուշ եւ ի Խութ եւ ի Սասունք եւ յամենայն գաւառսն նոցա: Զոր տեսեալ Նորընծայ պատրիարքն տէր Զաքարիայ զտարակուսանս աշխարհին այնորիկ... մտեալ առաջի Թագաւորին՝ ետ զանձն իւր փրկանս փոխանակ բազմաց. տուեալ ձեռագիր եւ մտեալ դաման առնուլ հարկս յամիրայէն Բաղիշու եւ տալ կայսերն առ ի մնալ երկրին ի խաղաղութեան... Որոյ հաւանեալ արքայն եւ գշխոյն ետուն նմա նշանագիր եւ հրաման առնել զինչ եւ կամեսցի. եւ Նորա ելեալ յերեսաց նոցա փաղփաղակի ձիընթաց արշաւմամբ գնացեալ եհաս ի քաղաքն Բաղէշ: Որոյ ընդ առաջ ելեալ ամիրայն հանդերձ ամենայն մեծամեծօքն իւրովք, եւ մեծարեալ փառօք տարաւ զնա ի գլուխ բերդին. եւ խոստացան առնել զկամս Նորա եւ տալ զինչ եւ խնդրեսցէ. բայց միայն զի յետս դարձուսցէ զամենայն հեծելազօրսն ի բերդէն Խլաթայ: Եւ Նա առեալ զվկայութիւն ի բերանոց նոցա գնաց ի Խլաթ. եւ ետ զօրագլխոցն կրկին ձեռագիր. եւ ցուցեալ նոցա զնշանագիր փատշահին եւ համոզեաց զնոսա, որք խաղաղութեամբ գնացին ի տեղիս իւրեանց. եւ ինքն դարձաւ ի Բաղէշ եւ նստաւ ամիսս երիս եւ առեալ զխոստացեալ հարկն կայսերական, եւ տարեալ մատոյց առաջի փատշահին. եւ արար խաղաղութիւն ի մէջ նոցա. եւ ազատեաց զամենայն խառնիճաղանճ ժողովուրդն զհայ եւ զտաճիկ ի ձեռաց անօրինաց...: Եւ Նորա դարձեալ ի փատշահէն

նստաւ յաթոռն իւր ի Ս. Էջմիածինն. եւ մեծարանօք խիլայեալ եղեւ յերկուց գոռոզաց յայլասեռից, ի Թուրքման փաշահէն եւ ի քուրդ ամիրայէն...:

Եւ եղեւ կրկին անգամ գնալ .՞.Հանշահ փաշահին ի տունն Իրաղայ, ի Շիրազ եւ ի Քրման. եւ էր նորա որդի մի Հասանալի անուն, որ շրջէր Թափառական զվերին կողմամբ գաւառին Արարատեան. եւ նա նենգութեամբ չարախօսաց ոմանց կամեցաւ ըմբռնել զմեծ պատրիարքն զտէր Զաքարիայն եւ պահանջել ի նմանէ գանձս եւ ինչս. զոր իմացեալ մեծ հայրապետն զնենգութիւն նորա, եւ առեալ զԱջն սուրբ Լուսաւորչին հանդերձ այլ սպասիւք յաւուրս ձմերայնոյ եւ գնացեալ մինչ ի Բագուան. եւ անտի եկեալ ի բերդն Բայազիտի. եւ անտի իջեալ ի սուրբ ուխտն Արգիլան... Եւ անդ հասեալ յայտնեաց զգանձն աստուածային՝ զԱջն Ս. Լուսաւորչին մերոյ զսրբոյն Գրիգորի. հանդերձ խաչալամովն, ... Եւ դէմ եդեալ գալ ի հայրենի աթոռն իւր ի... սուրբ խաչն Աղթամարայ: Եւ ել համբաւ գալոյ նորա հանդերձ Ս. Աջովն եւ խաչալամովն, որ բարձրացեալ կայր ի ծայրս ձողոյ, եւ խաչ ոսկի կառուցեալ ի գլուխ նորա. ընդ որ գլոհ տուեալ ամենայն բնակչաց գաւառացն. ընդ որ գայր հայրապետն եւ ամենեքեան ընդ առաջ ընթանային խնկօք եւ մոմեղինօք եւ զէնմամբ խոյոց եւ զուարակաց ...մինչեւ եկեալ եհաս ի գաւառն Տոսբոյ եւ մտեալ ի քաղաքն Վան՝ բազում եպիսկոպոսօք

եւ վարդապետօք, քահանայիւք եւ բազմամբոխ
ժողովրդօք՝ ձիօք եւ ձիաւորօք, եւ խաչալամն
առաջի. եւ քահանայքն յառաջ եւ յետոյ եր-
գէին քաղցր եղանակօք. եւ այնպէս պերճ եւ
փառաւոր եմուտ ի քաղաքն Վան։

Իսկ պարոնն այն, որ նստէր յամուրն Շա-
միրամայ՝ ի բերդն Վանայ Մահմուտ բէկ կոչե-
ցեալ, որ էր կաթնեղբայր Ջհանշահ փադշա-
հին, ...ցանկացաւ տեսութեան Ս. Աջոյն եւ
յղեալ տարաւ ի գլուխ բերդին... եւ մեծա-
րեալ խիլայեաց զհայրապետն եւ դարձոյց
յօթեւանս իւր... Եւ յետ աւուրց ինչ առեալ
հրաման ի պարոնէն գնալ ի հայրենի աթոռն իւր
ի յԱղթամար. իբրեւ ել ի քաղաքէն՝ ելին ընդ
նմա բազմութիւնք եպիսկոպոսաց, վարդապետաց
եւ քահանայից եւ ամենայն ազատագունդ խօ-
ջայքն Վանայ, ձիօք եւ ձիաւորօք սպառազի-
նեալք. եւ եկեալ հասին մերձ ծովահայեաց
քաղաքին Ոստանայ, որում ընդ առաջ ելին ա-
մենայն բնակիչք քաղաքին... մինչ գրեթէ քան
զհազար մարդ աւելի կայր յառաջ եւ յետոյ
մեծ հայրապետին... եւ այնպէս շքեղ փառօք
եմուտ ի քաղաքն յՈստան։ Իբրեւ տեսին այլա-
սեռ բնակիչքն... խորհեցան... զի գաղտագողի
ննջեսցեն հովուապետին. զոր իմացեալ... ընդ
լուսանալ առաւօտուն առեալ զՍ. Աջն՝ գնալ ի
յեզր ծովուն ուր նաւահանգիստն լինէր... Եւ
անդ զտեղի առեալ օրհնեաց զամենեսեան... եւ
ինքն... եմուտ ի նաւն եւ գնաց յաստուածա-
բնակ կղզին յԱղթամար ի հայրենի ժառանգու-

թիւն իւր... եմուտ ի յամուր կղզին Աղթամար եւ հանգեաւ ի գմբեթայարկ Ս. Խաչն[1] ի բուն տեղւոյն իւր. ի Թուականութեանս մերում ՋԺԱ ամին. ի սկիզբն տարւոյն, որ էր Նաւասարդի ամսոյ ԺԶ յաւուր Ուրբաթի սուրբ Յակոբայ պահոցն եմուտ սուրբ Աջն[2] յԱղթամար... Եւ զայս լուեալ ամենայն բնակչաց գաւառացն որ ըստ օրէ գային յերկրպագութիւն Ս. Աջոյն եւ յողջոյն մեծ հայրապետին բազում ընծայիւք եւ պատարագօք. եւ օրհնութեամբ, մեծաւ ուրախութեամբ դառնային ի յարկս իւրեանց...:»

13. Յայսմաւուրք մը կը գրուի ի Կտուց յամի ՋԺԱ (1462) «ի կաթուղիկոսութեան Հայոցս տեառն Զաքարիայի. որ տիրեաց երկու աթոռոյն, ոչ ղաբալով այլ բաշխելով եւ շնորհելով Ջհանշահ ղանին. որ գնաց տէր Զաքարիա կաթուղիկոսն եւ Նստաւ ի յԷջմիածինն, եւ եբեր իւր կամաւ զսուրբ Աջն Լուսաւորչին ի յերկիրս Վասպուրական. ի գեօղն եւ ի քաղաք շուրջ ածելով ի տեսութիւն ողղիացեալ քրիստոնէիցս. քանզի ուրախացեալ բերկրեցան յաստուածատուր պարգեւացն եւ շնորհացն՝ որ տուաւ ի սուրբ Աջէն Լուսաւորչին. եւ ամենայն ոք օրհնէր զարարիչն Աստուած եւ զտէր Զաքարիա կաթուղիկոսն որ արժանացոյց տեսլեան սուրբ Աջոյ Լուսաւորչին: Եւ ապա տարեալ ի յաստուածապահ կղզին Աղթամար. եւ դղրդեալ

1 Տպ. Աջն:
2 Տպ. Խաչն:

Աղթամար՝ ելին ընդ առաջ սուրբ Աջին եւ թագաւորական զարմին տէր Զաքարիայ կաթողիկոսին, որ էր ի յազգէն Գագիկ թագաւորին. եւ բերեալ պաշտելով եւ ուրախութեամբ ի յերկնանման եւ ի լուսեղէն գմբեթայարկ եւ կամարաձեւ սուրբ Խաչն. անդ էր տեսանել զուրախութիւն եւ զցնծութիւն վարդապետաց եւ եպիսկոպոսաց, քահանայից եւ կրօնաւորաց: Քանզի գրոհ առեալ էր յամենայն տեղաց եւ եկեալ էին տեսանել զսուրբ Աջ Լուսաւորչին. եւ եդեալ ի սուրբ եկեղեցին՝ ընդ այլ սուրբ Աջերոյն որ անդ կային. եւ ինքն դարձեալ գնաց ի յաթոռն իւր յէջմիածինն եւ կացեալ յոլով ժամանակս եւ տիրէր երկու աթոռոյն ի թուականիս Հայոց ՌՃ ի թագաւորութեան Ջհանշայ ղանին[1]:

14. Աւետարան[2] գրուած ի Վան «ի թուականութեանս Հայոց ՌՃ ի հայրապետութեան տեառն Զաքարիայի որ մին ամ է որ նստաւ յաթոռ սուրբ Լուսաւորչին ի յէջմիածնի»:

15. Յովհաննէս գրիչ կ'օրինակէ Աւետարան մի ՌՃԱ թուին յԱրծէշ «ի կաթողիկոսութեան մեծ խնամատարին քաջ եւ արի հայրապետին տեառն Զաքարիայի. որ եւ նա աստուածատուր զօրութեամբն տիրեաց երկու աթոռոյն Էջմիածնի եւ Աղթամարայ. զոր տէր Աստուած հաստատուն պահեսցէ զնա ամէն[3]»:

---

[1] Նոտարք, էջ 207, 208:

[2] Բարխուդարեանց՝ Արցախ, էջ 139:

[3] Նոտարք, էջ 209:

16. Մայր Մաշտոց[1] գրուած յԱղթամար ՋԺԹ թուին՝ «ի հայրապետութեան Տեառն Զաքարիայի որ եղեւ պատրիարք ընդհանրական ամենայն հայկազեան տոհմիս»։

17. Աւետարան գրուած ի վանս Ցաւղեաց քար ՋԺԹ թուին «ի կաթուղիկոսութեան տէր Զաքարիայի՝ Բ ամ, ի ղանութեան Ջհանշահին՝ ԻԴ ամ[2]»։

18. Յիշատակագրութիւն 1441 թուին գրուած Աւետարանի մը մէջ[3]. «ի թուականիս Հայոց ՋԺԳ (1464) տէր Զաքարիա կաթուղիկոսն էառ զէջմիածինն. եւ երկու տարի ի տեղն նստաւ. եւ դեղակուր եղեւ ի նոցանէ, եւ սրբութիւն սուրբ Խաչիս եւ Աւետարաններս եւ գրեանքս ի ձեռն այլոց մատնեցաւ: Եւ ես Յովանէս մաղթաւք թափեցի զսուրբ Աւետարանս յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց դաւթին»։

1 Էջմիածին՝ Գէորգեան Ցուցակ. Թ. 498։

2 Նորայր, էջ 217 Ուրիշ մը ՋԺԹ թուէն (յԱրծկէ) Սարգիսեան՝ Ցուցակ, էջ 620։ Դարձեալ 2 հատ ՋԺԳ թուականէն (Արծկէ) Նորայր, էջ 219. տես եւ Այրարատ, էջ 198։ Մաշտոց գրուած նոյն թուին Եղիվարդ «ի կաթողիկոսութեան տէր Զաքարէա ի յաթոռ սուրբ Էջմիածնին Վաղարշապատու»՝ Թովմա քահանայ ՋԺԹ թուին Մաշտոց մը կ՚օրինակէ յԱղթամար «ընդ հովանեաւ ամենայաղթ Ս. Խաչի եւ Հոգեհանգչի Ս. Լուսաւորչին Աջին, ի պատրիարքութեան տեառն Զաքարիայի Հայոց վերադիտողին». Նորայր, էջ 216։ Նոյն թուէն գրուած ի Բաղէշ՝ անդ, էջ 214, գրուած յՈղորդոտ Տարօնոյ՝ անդ, էջ 215 — Բիւզանդիոն 1908, Թ. 3500 եւ ի Վան, Բարխուդարեանց՝ Արցախ, էջ 267։

3 Նորայր, էջ 220։

Աղթամարայ այս շրջանի կաթողիկոսաց ցեղաբանութիւնը.




1 Ըստ 1444ի արձանագրութեան։ Հմմտ. Հաւաքարանին տողերը։ — 2 Ըստ 1444ի արձանագրութեան. ուսկից յայտնի չէ սակայն ստուգութեամբ թէ ասոնք Մելիք Ստեփանի եղբայրնե՞րն են։ — 3 Ըստ Վենետ. Թ. 41 ճառընտրին։ — 4 Որովհետեւ Ներսէս արքեպ. կ՚անուանէ իւր ծնողքն՝ Կուրճիբէկ եւ Էմնա խաթուն, հարկ է մտածել թէ Կուրճիբէկ երկրորդ անգամ ամուսնացած է՝ առնլով Թովմա Մինասենցի քոյրը զԷմնա։ — 5 Ըստ Վենետ. Թ. 41 ճառընտրի. տես իմ Գրիգորիս Աղթամարցի, էջ ԺԱ։ — 6 Հմմտ. Ներսէս Արքեպ. Յիշատակարանները։ — 7 Տես իմ Գրիգորիս Աղթամարցի. էջ ԺԱ—ԺԲ։

## 12. Ստեփանոս Դ. (1465—1489)։

Ընդ. Օր. զինքը “Զաքարիա Աղթամարցւոյն հօրեղբօրորդին եւ Դաւիթ Աղթամարցւոյն քրոջ թոռը„ կը համարի։ Մեզի ծանօթ են իր ծնողք՝ Գուռջիբէկ եւ Էմնա խաթուն. վերջինս էր քոյր Թովմա Մինասենց քաջագիր վարդապետի[1]։ Ստեփանոսի հարազատ եղբայրներէն կը յիշուի Ներսէս աբեղայ, ապա արքեպիսկոպոս, որ իւր եղբօր հետ ուսած է առ ոտս մօրեղբօր՝ Թովմա Մինասենցի։ Ունինք Ներսէսէն երեք Աւետարան, գրուած յԱղթամար 1448[2], 1457[3] եւ 1458[4] տարիներուն։

1448ին կը յիշուի Ստեփանոս իբր “սրբասէր կրօնաւոր[5]„։ 1461ին ընկերացած է Զաքարիայի դէպ ի Էջմիածին, ուր եւ ընդունեցաւ արքեպիսկոպոսական ձեռնադրութիւն։ Զաքարիայի եղերական մահուընէն ետքը վերադարձաւ Աղթամար, ուր ընտրուեցաւ եւ օծուեցաւ կաթողիկոս Աղթամարայ (1465)։ Յիշատակագիրք թէեւ ՋԺԴ թուին (1 Նաւասարդ = 25 Նոյ. 1465) զինքը արդէն կաթողիկոս գիտեն, բայց ուրիշ մը (տես վարը) ՋԺԵ թուին “Նորընծայ կաթողիկոս„ կ՚անուանէ, ուստի հաւանօրէն ՋԺԴ տարւոյն մէջերը պատահած ըլլալու է օծումը... օծութիւնը։ Հետաքրքրական է այս

1 Նոտարք, անդ։
2 Նոտարք, էջ 159։
3 Անդ, էջ 185։
4 ԱՐՐՏ 1910, էջ 625։
5 Նոտարք, էջ 159։

## Ստեփանոսի ազգաբանական տախտակն մօր կողմանէ.




---

[1] Տես վերը։ — [2] Տես վերը։ — [3] Ուսուցիչն Թովմա Մինասենցի. Դիւան, Ժ, էջ 13։ — [4] Դիւան, Ժ՝ էջ ԻԵ։ — [5] Այսր եղբայրն է Վարդան, հայրն Մկրտիչ կրօնաւորի. Դիւան, էջ ԻԵ։ — [6] Քաջ գրիչն Աղթամարայ. Իր մասին Դիւան, Ժ, էջ ԻԵ-ԻԸ։ — [7] Նօտարք, էջ 159. ԱՐՐՏ 1910, էջ 625։ — [8] Դիւան, էջ 13։ — [9] Դիւան, էջ 13։ — [10] Դիւան, էջ ԻԵ եւ 13։

նկատմամբ անթուական յիշատակարանի մը հաղորդած մանրամասնութիւնը[1].

“Եւ ապա եկն (յԷջմիածնէ) յԱղթամար տէր Ստեփաննոս արհիեպիսկոպոսն եւ ամենեքին ծովեզերեայքն ժողովեցան եւ ձեռնադրեցին զտէր Ստեփանոս կաթողիկոս ամենայն Հայոց, բազում եպիսկոպոսօք, վարդապետօք, կրօնաւորօք, քահանայիւք եւ ժողովրդեամբք.„ եւ կը յաւելու “Եւ յայնժամ օծեցին զպարոն Սմբատ թագաւոր ըստ նախնեաց իւրոց Գագկայ, զի ի վաղուց անտի ազգս Հայոց չէր տեսեալ թագաւոր: Փրկիչն մեր Քրիստոս զօրացուսցէ զնա եւ բարձրացուսցէ զաթոռ իշխանութեան մերոյ եւ զաթոռ յԱղթամարու եւ զսուրբ Աջն Լուսաւորչայ եւ զաթոռակալն մեր՝ զտեսուչ բանաւոր հօտիս զամենագով զտէր Ստեփաննոս կաթողիկոս ամենայն Հայոց եւ զնախնիս իւր ամէն„:

Այս Սմբատ ըստ Թովմա Մինասենցի անթուական յիշատակարանի մը[2] էր որդի Ամիր Գուրջիբէկի եւ Գունիա խաթունի, եղբօրորդի Զաքարիա կաթողիկոսի: Ամուսնացած էր Բէկի խաթունի հետ, ուսկից ունեցած զիսկենդէր, Գրիգոր Աղթամարցւոյ հայրը: Ըստ այսմ Ստեփանոսի հայրն պարոն Գուրջիբէկ կ՚իյնայ Սմբատի պապին եղբայրը: Սմբատ կը սերէր հետեւաբար հօր կողմանէ Սեֆէտինեան տնէն եւ

1 Բիւզանդիոն 1900, թ. 1196: Իրաւունք (Վանա), 1911, թ. 5:

2 Հանդ. Ամս. 1915, էջ 19:

մօր կողմանէ Արծրունեաց Գագիկ Թագաւորի գծէն, ինչպէս վերը բացատրեցինք։ Այս ծագմամբ կը պարծէին միշտ Սեփէտինեանք թէ յառաջ եւ թէ ետքը. եւ իրենց «արքայուն» տիտղոսն կը համապատասխանէր լիովին արքայական ծագման։ Մանաւանդ այս շրջանին երբ Զաքարիա երկուց աթոռոց իշխեց, Ս. Գրիգորի Աջն Աղթամար փոխադրուեցաւ եւ Ջհանշահի բարեբարութիւնն կը վայելէին, յիշեցին անոնք իրենց այս պանծալի արքայածնութիւնը[1]։ Թերեւս բացի փառասիրիկ ձգտումէ՝ նաեւ ծածուկ խորհուրդ մը կար, Աղթամարայ աթոռին նշանակութիւնն թէ եկեղեցական եւ թէ քաղաքական տեսակէտներով բարձր ընծայելով՝ ազգին համակրութիւնն եւ հաւանութիւնն յանկուցանել։ Յիշատակագիրք առաջին անգամ այս շրջանին ի վեր կը հանեն Աղթամարայ կաթողիկոսաց «յազգէն եւ ի ցեղէն Գագկայ» սերիլը։ Թէ բազմահնարն Զաքարիա իւր այս արքայածին ծագումն նաեւ Ջհանշահի առջեւ ի վեր հանած է եւ դիւանագիտական բանակցութեան մէջ մտած՝ իւր աթոռն յաչս ազգին ընդունելի երեւցնելու նպատակաւ Աղթամարայ հին թագաւորական գաւազանն ծաղկեցնելու մասին, գոնէ առ երեւոյթս իւր ազգականներէն մին թագաւորական թագով ճոխացնելով, յայտնի չէ։ Ջհանշահի ցոյց տուած մտերմութիւնն եւ սէրն

---

1 Հմմտ. մեր յօդուածն՝ Ազատութեան շարժումը ԺԵ—ԺԶ դարուն Հայոց մէջ, Հանդ. Ամս. 1917/18, էջ 141–154. յատկապէս էջ 143։

կրնայ զայս հաւանական ընծայել։ Թէեւ Ջաքարիա անակնկալ մահուամբ իւր այս ծրագիրն չկրցաւ իրագործել, բայց հաւանօրէն Ստեփանոս, որ անոր խորհրդակիցն էր եւ աջակիցն, կաթողիկոսական գահին հետ անոր ծրագիրներն ալ ժառանգեց։ Եւ ահա իշխանական աթոռն բարձրանալուն պէս փութաց ի գլուխ հանել զայն. ինչպէս յիշատակագիրն կ'ըսէ "Եւ յայնժամ օծեցին զպարոն Սմբատ թագաւոր ըստ նախնեաց իւրոց Գագկայ"։ Սակայն Սմբատ յիրականին "խաղոյ թագաւոր" եղաւ աւելի, քան որ եւ իցէ քաղաքական նշանակութիւն ստացաւ. ամփոփ շրջանակի մէջ միայն յիշեցուց Վասպուրականի հին փառքն եւ ընտանեկան պարծանք նկատուեցաւ[1]։ Ներսէս արքեպիսկոպոս՝ եղբայրն Ստեփանոսի՝ Թագաւորօրհնէք Մաշտոց մը կ'օրինակէ յԱղթամար "ի հայրապետութեան տեառն տէր Ստեփանոսի եւ ի նոր թագաւորիս մերոյ պարոն Սմբատին" (տես վարը)։ Յամի 1466 (ՋԺԵ) կը յիշէ զինքը Իսրայէլ գրիչ, որ ի փասայ վանս Մոկաց կ'օրինակէ Աւետարան մը "ի հայրապետութեան նորընծայ կաթողիկոսի տէր Ստեփանոսի եւ թագաւորին Սմբատայ" (տես վարը). եւ նոյն միջոցին Թովմա Մինասենց Աստուծոյ ողորմութիւնն կը խնդրէ "եւս առաւել ստացողի սուրբ գրոցս (ճառըն-

---

[1] Համմտ. առ. այս Տօսքունեայ խորհրդածութիւնք ի թերթին "Իրաւունք" (Վառնա) 1911, Թ. 5, "Հայ թագաւոր մը ԺԵ դարու մէջ (արտատպուած "Կոչնակ"էն, ինչպէս կ'ըսուի)։

տիր, Թ. 41 Ս. Ղազարու) Սմբատ Թագաւորին եւ ծնաւղաց Նորին Պարոն Գուրջիբէկին եւ Գունիա խաթունին[1]"։

Հասա՛ Ստեփանոս այսու իւր նպատակին։ Թագաւորի օծութեան վրայ աճապարեց ստուգիւ երթալ Էջմիածին, ինչպէս յիշատակագիր մը կը գրէ ՋԺԶ (1467) թուին՝ "որ յայսմ ամի գնաց յԷջմիածին եւ տիրեաց յամենայն հայկազեան ազգի", բայց ոչ յուսացուած փառօք եւ ոչ երկար ժամանակով։ Նոյն տարին կը մեռնի Ջհանշահ (1444—1467), Զաքարիայի եւ Ստեփանոսի մեծ պաշտպանն, եւ Հասանբէկ (1467—1478) կը հետեւի ուրիշ քաղաքականութեան։ Այս թուականէս վերջը յիշատակագիրք զինքը Աղթամարայ անձուկ շրջանակին կաթողիկոս գիտեն եւ Էջմիածնի աթոռին վրայ ուրոյն կաթողիկոս կը ճանչնան։

Մահն կ'երեւայ թէ պատահած է 1488էն վերջ, վասն զի 1489 Աղթամարայ աթոռին վրայ կ'անուանուի "Նորընծայ" Զաքարիա։ Լեւոնեան (Բիւզանդիոն, թ. 1196) ձեռագրաց մէջ հանդիպած է Ստեփանոսի 1466—1487 տարիներուն. Փիրղալէմեան մահն կը դնէ 1490ին (Դիւան, Գ, էջ 771). Ընդ. Օր. որ նախ 1489ին կը նշանակէր, 1908ին սրբագրած է 1487։

Ինձի ծանօթ են հետեւեալ յիշատակարանք.

---

1 Հանդ. Ամս. 1915, էջ 19։

1. «Յիշեցէք ի Քրիստոս... զգծողս (Աւետարանիս) կրօնաւոր Թումայ... եւ զերախտաւոր վարդապետն իմ եւ զհոգեւոր հայրն զտէր Ներսէս արքեպիսկոպոսն. եւ զհարազատ եղբայրն իւր զՏէր Ստեփաննոս կաթողիկոսն, որ բազում աշխատանաւք ուսուցին ինձ զաւրունս գրչութեանս. եւ բազում երախտիք ունին ի վերայ իմ... Արդ գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուա. Հայոց ՋԺԴ[1] (1465) ի սուրբ եւ աստուածաբնակ եւ աստուածապահ աթոռս Աղթամար կոչեցեալ, ընդ հովանեաւ Ս. Փրկչի տաճարիս եւ Ս. Գէորգ զաւրավարին: Այլ եւ յանցեալ ամին փոխեցաւ ի Քրիստոս կաթողիկոսն մեր Տէր Զաքարիայն, որ էր յարմատոյ եւ ի ցեղէն մեծ թագաւորին Գագկայ եւ եթող մեզ եւ ամենայն քրիստոնէից սուգ անմխիթար» եւն[2]:

2. Հայրապետ գրիչ Աւետարան մը կ'աւարտէ ՋԺԴ (1465) թուին յԱղթամար «ի հայրապետութեան տեառն Ստեփանոսի կաթողիկոսի, ի դառն եւ ի վշտալից ժամանակիս, յորում ի խիստ եւ ի նեղութեան եւ ի չար ծառայութեան կամք ազգին նետողաց. զի յոյժ կիզեն եւ կեղեքեն զազգս քրիստոնէից[3]»:

---

1 Սրուանձտեանց ունի ՋԽԴ, զոր ես տպագրական վրիպակ կը համարիմ եւ կ'ուղղեմ այսպէս. վասն զի պարագայք այս թուականը կը պահանջեն. Ներսէս այս Ստեփանոսի եղբայրն է. եւ ՋԺԴ թուին ճշդիւ վախճանած է Զաքարիա:

2 Թորոս Աղբար, Բ, էջ 446–447:

3 Հ. Ց. Քօսեան՝ Ցուցակ հայերէն ձեռագրաց Արծնեան Վարժարանի ի Կարին, Թ. 55 (= 863):

3. Ցայսմաւուրք կ՚աւարտի ՋԺԴ թուին ի ձեռն Վարդան երիցու ի Վան “ի կաթողիկոսութեան տեառն Ստեփաննոսի[1]„։

4. Մկրտիչ գրիչ ՋԺԵ թուին յԱղթամար գանձարան մը կ՚ընդօրինակէ “ի հայրապետութեան Ստեփաննոսի[2]„։

5. Իսրայէլ գրիչ Ցայսմաւուրք կ՚օրինակէ ի փասայ վանս Մոկաց “ի հայրապետութեան նորընծայ տէր Ստեփաննոսին Աղթամարայ„ յամի ՋԺԵ (1465/6)[3]„։

6. Նոյն Իսրայէլ գրիչ ի վանս փասայ Մոկաց կ՚օրինակէ Աւետարան մը 1466ին “ի հայրապետութեան նորընծայ կաթուղիկոսի տէր Ստեփաննոսի եւ թագաւորին Սմբատայ[4]„։

7. ՋԺԶ թուին Աւետարան մը կը գրուի յԱրծկէ “ի կաթուղիկոսութեան տեառն Արիստակէսի ընդհանուր Հայոց, Աղթամարայ տեառն տէր Ստեփաննոսի[5]„։

8. Կիրակոս գրիչ կ՚աւարտէ Ճառընտրի մը ընդօրինակութիւնը “ի կղզւոյն յԱղթամար. ընդ հովանեաւ սուրբ Խաչին եւ սուրբ Գէորգայ զօրավարին. ի թուականիս Հայոց ՋԺԶ. ի հայրապետութեան տեառն Ստեփաննոսի, որ յայսմ ամի գնաց յԷջմիածին եւ տիրեաց

---

[1] Նոտարք, էջ 222։
[2] Նոտարք, էջ 224։
[3] Նոտարք, էջ 225։
[4] Նոտարք, էջ 226։
[5] Նոտարք, էջ 229։

յամենայն հայկազեան ազգի. եւ ի ղանութեան Ջհանշահի[1]»:

9. Կարապետ քահանայ կ'օրինակէ Աւետարան մը յՈստան ՋԺԶ (1467) թուին «ի հայրապետութեան տեառն Ստեփաննոսի[2]»:

10. Ցամ ՋԺԶ Հայրապետ աբեղայ[3] ճառընտիր մը կը սկսի օրինակել յԷջմիածին եւ կ'աւարտէ յԱղթամար «ի հայրապետութեան տեառն Ստեփաննոսի Հայոց կաթուղիկոսի Աղթամարայ շնորհալից աթոռոյս»:

11. «Ի ՋԻԱ թվին ի հայրապետութեան տեառն Ստեփանոսին շինեցաւ տաճարս սուրբ Աստուածածնին ձեռամբ Ստեփանոսին որ մականուն Հա... (եղծուած)[4]:»

12. Աւետարան, գրիչ Թումայ քհ. ի կղզւոջ Աղթամարայ, ի հայրապետութեան Տ. Ստեփանոսի ի թուականութեանն ԹՃԻ (1471). Ստացող բառեցի (?) Մարտիրոս: Էջմ. Գէորգ. ցուց. 375. Հմմտ. վարը էջ 137:

13. «Գրեալ ի Վան քաղաք, ի թվին ՋԻԴ[5] (1475) ի կաթողիկոսութեան Էջմիածնի

---

1 Նօտարք, էջ 229:

2 Նօտարք, էջ 231:

3 Նօտարք, էջ 231, Փիրղալէմեան կ'ենթադրէ թէ գացած ըլլայ Ստեփանոս կաթողիկոսի հետ Էջմիածին եւ ապա վերադարձած անոր հետ Աղթամար: Հայրապետ աբեղայ թեռորդին էր Մինասենց Թովմայ Վարդապետին, ուստի եւ ազգական մը Ստեփանոսի մօր կողմանէ: Անդ՝ էջ 231/2:

4 Արձանագրութիւն յԱռաւէր. Բիւզանդիոն, 1901, Թ. 1571:

5 Սրուանձտեանց ունի ՋԽԴ, զոր ուղղեցի այսպէս.

Սարգսի, եւ Աղթամարայ՝ Ստեփաննոսի, ի Թա... Հասան բակին... յիշեցէք Զաքարիա գծող... եւ զուսուցիչն իմ զկարապետ քահանայն, որ նահատակեցաւ ի յԱրճէշ քաղաքիս[1]...:„

14. Ասոր է նաեւ հետեւեալ արձանագրութիւնը “անտաշ քարի մը վրայ„, որ կը գտնուի Աղթամարայ ծովուն մօտ անտառուտ լերան մը կողքին՝ Դիւարբոյնի Ս. Յարութիւն վանքին մէջ[2]. “Տէր Ստեփանոս Հայոց կաթողիկոս, Արծրունի, պահեսցէ զնա Տէր Աստուած անզրդուելի մինչեւ ի խոր ծերութիւն որ շնորհեաց զսուրբ ուխտս սնուցողի եւ ուսուցողի իւրոյ Թումայի[3] յիշեցէք ի Տէր:„

15. Չամչեան գ. 509, խօսելով Եղիշէ կաթողիկոսի վրայ յԷջմիածին կը գրէ. “Յորոյ աւուրս որպէս տեսանի ի յիշատակարանս գրեալ յայնմ ժամանակի՝ նստէր յԱղթամար կաթողիկոս Ստեփանոս անուն. եւ գործակից նորա եղբայր նորին Ներսէս եպիսկոպոս. եւ զայս Ներսէս դասէ Առաքել պատմիչ ի կարգս կաթողիկոսաց Էջմիածնի իբր աթոռակից Եղիշէի[4]:„

16. Աղթամարի թագաւոր օծելու Մաշտոցին վերջը. “Եւ արդ ես... սուտ անուն Ներսէս եպիսկոպոս տկար մարմնով յանձն առի

---

1495ին տեղ չկայ Ստեփանոս կաթողիկոսի եւ Հասան բէկ Ջհանշահի եղբայրն թագաւորեց 1467–1478:

1 Թորոս Աղբար, Բ. 276:

2 Բիւզանդիոն 1903, Թ. 1905 (Խ. Լեւոնեան).

3 Թովմա Վ. Մինասեանց, մօրեղբայրն Ստեփանոսի եւ ուսուցիչը:

4 Պատմ., էջ 437:

գրել զայս եւ կարողութեամբն Աստուծոյ ի յաւարտ ելայ ընդ հովանեաւ սուրբ խաչիս եւ սուրբ աթոռոյս Աղթամարայ... ի հայրապետութեան տեառն տէր Ստեփանոսի եւ ի Նոր թագաւորիս մերոյ պարոն Սմբատին եւ համշիրակ եղբարց մեր...[1]:

—

Ուշադրութեան արժանի է որ Ստեփանոսի յիշատակութիւնն ձեռագրաց մէջ 1465—1476 տարեաց մէջ միայն կը պատահին, իսկ 1476—1488 առ հասարակ կը լռուի: Այս շրջանէն ունիմ աչացս առջեւ յիշատակարան մը ուր ՋԻԶ (1477) թուին կը յիշատակուի Աղթամարայ աթոռին վրայ Զաքարիա: Որովհետեւ ուրիշ երկրորդ վկայ մը չունիմ այս շրջանիս Զաքարիա անուն կաթողիկոսի գոյութեան մասին եւ 1489ին նոյն աթոռին վրայ «Նորընծայ» Զաքարիա կը տեսնուի, այս պատճառաւ կասկածական համարելով անոր թուականը, կ'առաջարկեմ կարդալ ՋԽԶ[2]:

## 13. Զաքարիա Դ. (1489—1496):

Զաքարիա կ'երեւայ թէ Սմբատ թագաւորի որդին էր, հօրեղբայրն Գրիգորիս Աղթամարցւոյ, եղբօրորդին Ստեփանոս կաթողիկոսի, նկատելով որ «Զաքարեանք» Գրիգորիս Աղ-

1 Իրաւունք (Վանա) 1911, Թ. 5:
2 Տե՛ս վերը էջ 49:

թամարցւոյ «Հօրեղբարք», կ՚իյնան եւ Գրի-գորիսի Հայրը կը կոչուէր Խոկէնդէր եւ Հաւն ու-մամը՝ Սմբատ Թագաւոր եւ Խանըյ-բէկ-խաթուն։

Ստեփանոս կաթողիկոսի մահուընէն ետքը (1489) կը յաջորդէ անոր աթոռոյն վրայ Զա-քարիա։ Ինծի ծանօթ է իր օրով գրուած եր-կու յիշատակարան 1489էն եւ 1490էն. Ընդ. Օր. գիտէ երրորդ մ՚ալ յամէ 1491, որոնց մէջ կը յիշուի Զաքարիա։ Որովհետեւ 1496ին Աղ-թամարայ աթոռին վրայ Ատոմ կը նշանակուի, պէտք է ենթադրել թէ Զաքարիա վախճանած է 1495ի վերջերն կամ յաջորդին սկիզբը։

Ընդ. Օր. Ստեփանոս կաթողիկոսին յա-ջորդ կը դնէ յամի 1489 «Ներսէս Կուածի-բէկեան, Զաքարիա Աղթամարցւոյն Հօրեղբօր-որդին եւ Դաւիթ Աղթամարցւոյն քրոջ թոռը, եղբայր Ստեփանոս Կուածիբէկեանի. ընտրուե-ցաւ 1489. վախճանեցաւ 1491». իսկ 1908ին կը նշանակէ «1487—1489»։ Ես չգիտեմ ի՛նչ հիմամբ այսպէս. Ներսէս ծանօթ է ինծի Նախորդ կաթողիկոսաց օրով իբրեւ աբեղայ եւ արքեպիսկոպոս. բայց ոչ կաթողիկոս. այն ստոյգ է որ ձեռագիրք 1489—1490 միայն Զաքա-րիա կը ճանչնան. ասոնք են.

1. «Գրեցաւ սա (Աւետարան՝ ի ձեռն Առաքել քահանայի) յերկիրս Ռշտունեաց ի գիւղս որ կոչի Ղատուան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին... յամի Տեառն ՋԼԸ (1489) յառաջնորդութեան տեառն Զաքարիայի Նորըն-ծայ կաթուղիկոսի։ Այլ եւ յաշխարհակալու-

թեան Աղուբ ղանին (1479—1490)՝ ի դառն եւ վշտաբեր ժամանակի, յորում միահամուռ ամենեքեան ընթացան զհետ ոչինչին եւ գտանեն զոչինչ եւ դարձան ի մոլար օրէնս Մահմէդի, ...եւ բռնադատեն զամենեսեան՝ զմանկունս եկեղեցւոյ դառնալ ի սնոտի եւ ի պատիր յոյսն իւրեանց. հալածեն, նեղեն եւ տառապեցուցանեն. զոմանց ինչսն յափշտակելով, զոմն տանջելով, զոմն հայհոյելով. եւ ոչ այսու վերջացան՝ այլ եւ զբազում եկեղեցիս տապալեցին եւ զխաչ եւ զաւետարան նախատեցին...[1]»:

2. Հայրապետ աբեղայ կը գրէ Աւետարան մը «յաստուածապահ կղզիս Աղթամար ընդ հովանեաւ սուրբ Խաչիս եւ սուրբ Սարգիս զաւրավարիս, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի. եւ ի թուականիս մերում ի ՋԼԹ (1490)... կենաւք տառապանօք. ի դառն եւ ի վշտաբեր ժամանակիս, յորում կամք ընդ հարկի անօրինաց[2]»:

## 14. Ատոմ Կաթողիկոս (1496—1510):

Զաքարիայէն ետքը[3] Աղթամարայ աթոռն բազմած կ'երեւայ Ատոմ (1496՞)։ Ստոյգ չէ

[1] Ազգագր. Հանդ., ԺԲ, էջ 157. նոյնը բառ առ բառ նաեւ Սարգիս-գրչի կցուած Ատոմ քահանայէն. հրտ. անդ. էջ 168։

[2] Աճառեան՝ Ցուցակ Նոր-Բայազիտի. Հանդ. Ամս. 1910, էջ 53. Հմմտ. եւ Սմբատեանց, Գեղարքունիք, էջ 55։

[3] Վերագոյն տեսանք թէ վրիպական էին Թորոս Աղբար, Բ, էջ 446, տրուած կրկին թուականները՝ ՋԽԴ

նաեւ Ատոմի մահուան թուականը. ինձի ծանօթ յիշատակարանք կենդանի գիտեն զինքը 1496—1507. Լեւոնեան (Բիւզանդիոն, Թ. 1197) ձեռագրաց մէջ կը յիշուի կ'ըսէ 1496—1509. Ազգ. Օր. համաձայն 1496—1510։ Յամենայն դէպս 1510ին մօտերը վախճանած ըլլալու է, վասն զի քիչ յետոյ (1512) կաթողիկոս կը յիշատակուի Յովհաննէս[1]։

Ծանօթ յիշատակագրութիւնք են.

1. Աւետարան՝ «Գրեալ յԱւեխու վանք մերձ ի Բաղէշ, յառաջնորդութեան Յակոբ եպ.ի եւ Վարդան հէրպետի. ձեռամբ Զաքարիա սարկաւագի, ի հայրապետութեան տեառն Սարգսի ընդհանուր Հայոց կաթողիկոսի Վաղարշապատու Էջմիածնի, եւ Աղթամարայ տեառն Ատովմի. ի թվ. Հայոց ՋԽԵ (= 1496). ի ղանութեան ազգին Նետողաց Ըռստում բէկին (1492—1496), ի դառն եւ ի չար ժամանակիս, որ բռնացեր են ի վերայ Հայոց ազգիս[2]»։

2. Աւետարան... գրեալ յԱղթամար կղզւոջ ի հայրապետութեան տեառն Ատոմի[3],

(1495), զորոնք պէտք է կարդալ ՋԺԴ եւ ՋԻԴ։ Ըստ այսմ տեղիք չկայ 1495 թուին Զաքարիային Ստեփանոս անուն յաջորդ կարգել։

1 Ազգ. Օր. կը գրէ. «Ստեփանոս կը յիշուի իբր յաջորդ Ատոմ կաթողիկոսի». նոյնպէս Փիրղալէմեան (Դիւան, Դ. 771) իսկ Յովհաննու անծանօթ կը մնայ։ Ինծի չէ հանդիպած՝ Յիշատակարանաց մէջ այս ժամանակները Ստեփանոս։

2 Թորոս Աղբար, Բ. էջ 426։

3 Տպ. Անտոնէ, բայց կարդալու է «Ատոմի», ինչպէս տեսած է Brosset, Rapports sur un voyage archéolo-

ի Մատթէոս աբեղայէ ի թուին Հայոց ՋԽԶ (= 1497)[1]։

3. Աւետարան գրուած ի գեղջն Որձոկ Հիզանայ. «Եւտուր զսա գրել (Խուդադար) յիշատակ հոգւոյ իւրոյ եւ ծնողաց իւրոց Դաւթին եւ Ջուհարին. արդ գրեցաւ սուրբ աւետարանս ի մեծ թվականիս Հայոց ՋԽԶ (=1497) ի կաթողիկոսութեան հայկազեան սեռի տեառն Սարգսի, եւ ի մերոյ կաթուղիկոսութեան Ախթամարայ Տէր Ատոմի, զոր Տէր Աստուածն իսրայեղի պահպանեսցէ անսասան զաթոռ հայրապետական եւ զթագաւորական մերոյ ազին[2]...։»

4. «Գրեցաւ Աւետարանս ի քաղաքիս որ կոչի Հիզան, ի մեծ թուականիս Հայոց ՋԽԸ (= 1499), ի կաթողիկոսութեան հայկազեան սեռի տէր Սարգսի եւ ի մերոյ կաթողիկոսութեան Աղթամարայ տէր Ատոմին... ի դառն եւ ի նեղ ժամանակիս՝ զի աշխարհս ամենայն ի յերերմանի կան, զի ոչ թագաւոր կայ եւ ոչ իշխան. զի որդին Եզդընշէրին Զէհիդ բէկն եմուտ ի յԱղթամար[3]։»

5. «Արդ յանգ ելեալ աւարտեցաւ լուսազարդ եւ վարդափթիթ մարգարտաշար եւ

---

gique dans la Géorgie et dans l'Arménie, Livraison I. St. Pétersbourg 1849, p. 39.

1 Կարինեանց՝ Ցուցակ Ձեռագրաց Էջմիածնի. Թ. 254, էջ 18։

2 Տաշեան՝ Ցուցակ, էջ 284։

3 Սարգիսեան՝ Ցուցակ, էջ 577. Հմմտ. ԲԶՄ. 1905, էջ 493։

ոսկեակազմ Շարակնոց ի մայրաքաղաքս Վան. ձեռամբ Զաքարիա սուտանուն իրիցու. ընդ հովանեաւ սրբազան առաքելոց Պետրոսի եւ Պօղոսի. ՋԾԶ. թվին. ի հայրապետութեան Տեառն Ատոմի. եւ մերոյ առաջնորդի սուրբ ուխտիս Վարագայ Ատոմ հեզահոգի վարդապետի. եւ թագաւորութեան շահ Իսմայելի կարմիր գտակի եւ մեր տեղակալ պարոնիս միր Ջեհիգի[1]:„

## 15. Յովհաննէս (1510—1512):

Ատոմէն ետքը Աղթամարայ գահին վրայ կը յիշատակուի Յովհաննէս: Իր գահակալութեան ճշգրիտ տարին չգիտենք, յամենայն դէպս 1507էն վերջը, թերեւս 1510ին հարկ է դնել: Ժամանակակից յիշատակագիրներու քով անգամ մը միայն կը պատահիմ իր անուան, եւ այն 1512ին, որ եւ միաժամանակ իր կաթողիկոսութեան վերջին տարին է: Վասն զի մի եւ նոյն տարին Աղթամարայ աթոռին վրայ կը յիշատակուի Գրիգորիս:

Յիշատակարանն է.

1. “Գրեցաւ եղանակաւոր տառս ի թուին Հայոց ՋԿԱ (= 1512), յաշխարհակալ թագաւորութեան Տաճկաց կարմրագտակ Շահ Իսմայէլին, եւ ի հայրապետութեան տեառն Յովանիսի, յաստուածախնամ կղզիս Աղթամար, ձեռամբ անիմաստ գրչի Յովսէփի՝ ի խնդրոյ պա-

---

1 Conybeare, Catalogue cf the Brit. Mus., p. 49.

տուական եւ սրբասէր կրօնաւորին Մկրտչի, ի վայելումն անձին իւրոյ[1]:„

2. Ինքն է հաւանօրէն նաեւ Խարբերդի Սորսորու վանքի “պարսպի„ դրսի մեծ դրան ճակատին դրուած քարի մը վրայ կարդացուած արձանագրութեանս մէջ. “...ամէն անեղին Աստուծոյ եւ անմահին շինեցաւ դուռս ի թվին ՋԿԱ (= 1512) ի փատիշահութեան Շահ Աբասին[2], ի հայրապետութեան տէր Ցվս. ով կարդաք, Աստուած ողորմի ասացէք աշխատողաց[3]„:

### 16. Գրիգորիս Ա. (1512—1544):
### 17. Գրիգորիս Բ. (1544—1586):

1512ին Յովհաննու կը յաջորդէ Գրիգորիս Ա. որդի Իսկէնդէրի եւ Շահում խաթունի, որ է ինքն բանաստեղծն Աղթամարայ: Գրիգորիս հաւանօրէն նստաւ աթոռին վրայ 30 տարի մը, մինչեւ 1544:

Իրեն յաջորդեց Գրիգորիս Բ. որդի Իսկէնդէրի եւ Գուլան փաշի, որ կը յիշատակուի ծնողաց անուամբ առաջին անգամ 1559ին: Սա եւս կառավարած կ'երեւայ աթոռն իբր 40ամեայ ժամանակ մը, մինչեւ իբր 1586: Դարուն վերջերը մեր առջեւ կ'ելլէ Գրիգորիս Գ. որդի Սէֆէտինի եւ Ղրիմ խաթունի:

---

1 Շարակնոց Ե. Ս. Ղազարու Մատ. Հրտ. ԲՋՄ 1905, էջ 492:

2 Իմա Շահ Իսմայէլի (1502-1523):

3 Թորոս Աղբար., էջ 89:

Գրիգորիս Ա. եւ Բ.ի վրայ երկար գրած եմ յառաջ բերելով ժամանակակցաց վկայութիւնները, առթիւ քննութեան Գրիգորիս Աղթամարցւոյ կենսագրութեան[1]. ուստի եւ աւելորդ կը համարիմ կրկնութեանց մէջ մտնել հոս միւսանգամ:

## 18. Գրիգորիս Գ. (1586՞—1612՞):

Գրիգորիս Գ., որ Յովսէփ գրչէն “Փոքր Գրիգորիս” կը կոչուի, էր որդի “պարոն Սեւդենին եւ մօրն Ղրիմ Խաթունին”: Եղբայրներէն կը յիշուին “պարոն Խէտէն(իկ), Սմբատ, Զաքարիա եպիսկոպոս, պարոն Իսքանտար”, եւ քոյրերէն “Մարգարիտ Խաթուն”: Երկար ժամանակ նոյնացուեցաւ սա Աղթամարայ համանուն բանաստեղծ կաթողիկոսին հետ: Թէ՛ կաթողիկոսութեան բարձրանալու եւ թէ՛ մահուան թուականները անստոյգ են: Հաւանօրէն 1586ին, եթէ հարկ չըլլայ ենթադրել չորրորդ Գրիգորիս մ'ալ, նստաւ կաթողիկոսական աթոռին վրայ: Ինծի ծանօթ են յիշատակարաններ 1595, 1602, 1604 եւ 1605 տարիներէն, որոնք կը յիշատակեն զինքը: Մահն Լեւոնեան 1610ին կը նշանակէ. իսկ Ընդ. Օրացոյց 1612ին, աթոռակից տալով իրեն 1600ին Ստեփանոս մը եւ 1609ին Մարտիրոս մը: Ես աթոռակիցներ չեմ ճանչնար. բայց կը մնամ առ այժմ 1612

[1] Հանդ. Ամս. 1915, էջ 31-36:

թուականին վրայ՝ ընդունելով զայն մերձաւորագոյն ժամանակ մը[1]։

Գրիգորիս արդիւնաւոր եղած է Աղթամարայ աթոռին վրայ. այցելած է 1602էն յառաջ Երուսաղէմ, ինչպէս Յովսէփ գրիչ կը պատմէ (տե՛ս վարը)։

Ի մէջ կը բերեմ հոս ինձի ծանօթ յիշատակարանները.

1. «Գրեցաւ եղանակաւոր տառս ի թուականիս Հայոց ՌԽԴ (1595) ի պարոնութեան Մոկաց Անտալ բեկին եւ ի հայրապետութեան տեառն Գրիգորի կաթողիկոսին, ի գիւղն որ կոչի Սուրս, ընդ հովանեաւ Ս. Յովհաննիսիս եւ Ս. Գէորգայ զօրավարիս[2]։»

2. «Աստուած ողորմի ասացէք Փոքր Գրիգորիս կաթուղիկոսին, որ զարդարեաց Աւետարանս հրաշալի ոսկով եւ արծաթով. եւ ետ ի դուռն Խաչին Աղթամարայ, յիշատակ իւր եւ

---

1 «Հանդ. Ամս.» 1915, էջ 30 գրած եմ. «սա կը յիշուի դեռ 1626ին». եւ այս հիման վրայ Գրիգորիս Աղթամարցի ԺԶ–ԺԷ դարերը. էջ ԼԴ մաշուած թուականն նշանակած եմ 1630։ Ու այս աչաց առջեւ ունէի Մաշտոցի մը յիշատակարանն, գրուած «ի մեծ թուականիս Հայոց ի ՌՀԵ (1626) ամի, ի քաղաքս որ կոչի Խիզան ... ի կաթողիկոսութեան տէր Գրիգորիսի, ի թագաւորութեան աշխարհակալ աշխարհին սուլթան Սուլիման խոնդքարին եւ մերոյ քուրդ պարոնին Սօլթան Ահմատ բէկի...» (Թորոս Աղբար, Բ, էջ 254)։ Բայց այժմ կը նկատեմ որ թուականը չի համապատասխաներ ժամանակագրութեան. Սուլթան Սուլէյման իշխած է 1522—1566. ուստի եւ հարկ է ՌՀԵ իբրեւ տպագրական սխալ ուղղել ՌԺԵ (1566)։

2 Էջմ. Գէորգ. Ցուց., Թ. 598։

ծնողաց իւրոց հօրն պարոն Սեւտենին եւ մօրն Ղրիմ խաթունին... (եւ այլն) բազում յիշատակ արար սա ի դուռն խաչիս եւ ետ չորս արծաթէ սկիհս, մեծ վառի խաչ մի եւ նորոգեաց զծը-միան ժամատուն եւ զամառան, եւ զսուրբ Ստե-փաննոսի գլուխ սալեց, եւ ձիթաղաց մի կորտէ շինեաց յարեւելից կուսէ հանդէպ կարմիր ե-կեղեցւոյն, զի փոքր ժամանակ բանաւ՝ վասն այնորիկ զի ձրմայ էր տեղն։ Եւ յետոյ դարձոյց ի յարեւմտեան կողմն մերձ առ սուրբ Յարու-թիւն, եւ շինեաց ի հիմանց բազում աշխատա-նօք եւ ազգի ազգի վշտօք, եւ այլ բազում առա-տաղ նորոգեաց մեծ եւ փոքր զամէն։ Եւ յետոյ գնաց յԵրուսաղէմ երկոտասան արամբք վար-դապետօք եւ կրօնաւորօք. զի միայն եղբայրն էր ի հետն, ազգական պարոն Խէդէն, եւ այլ բա-զում աղքատ կու կերակրէր ի ճանապարհին. եւ բազմաց օգնական լինէր ի յողորմութիւն տալն. զի ողորմած բնութիւն ունէր եւ էր աղ-քատասէր յոյժ... Եւ յետոյ դարձաւ յԵրու-սաղէմայ եւ բերեալ ընծայ սուրբ խաչին զար-բաֆ շուրջառ մի հանդերձիւ, քիմխայ վարա-գուր մի սուրբ Ստեփաննոսի, վեց ժամու գդակ պատկերով արծաթի առաքելոցն, երեք ժամու շապիկ փռանգի, թագ մի թագաւորական, չորս արծաթէ ոսկի սկիհ, երկու ցնծղայ... եւ այլ բազում յիշատակ արար սա ի ծածուկ եւ յերեւելի, յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց, հօրն պարոն Սէֆէտնին, եւ մօրն Ղրիմ խաթունին եւ եղբարց պարոն Խէտէնին, Սմբատին, Զաքարիայ

եպիսկոպոսին, եւ պարոն Իսքանտարին, եւ քուեր Մարգարիտ խաթունին, որ արծաթէ սկիհ մի ետ ի դուռն սուրբ խաչին... Աստուած ողորմի ասացէք տէր Բարսեղ լուսարարին, որ բազում կու աշխատէ ի հետ սուրբ խաչին. եւ խնամակալ սպասաւորին... Աստուած ողորմի ասացէք անարժան Յովսէփիս եւ իմ ծնողացն, որ զսակաւ յիշատակարանս գրեցի... թուին ՌԾԱ (1602)[1]։”

3. Սարգիս Հիզանցի կ'օրինակէ Աւետարան մը “ի մեծ թուականին Հայոց ի Ռ եւ ԾԳ ամին, ի քաղաքիս որ կոչի Հիզան... ի հայրապետութեան հայկազեան սեռի Էջմիածնին տէր Մելքիսեդի եւ մերոյս կաթողիկոսութեան Աղթամարայ տէր Գրիգորիսի։ Ի թագաւորութեան սուլթան Մահմուտ խոնդքարին, որ ի յայսմ ամի մեռաւ. եւ արեւելեան թագաւորին Էդիլ փաթշահ Շահաբասին...[2]”։

4. Մխիթար գրիչ կ'աւարտէ Աւետարանի մ'ընդօրինակութիւնը “ի յերկիրն Մայեկայ ի գեօղն որ կոչի Սեպ, եւ ծաղկեցաւ ի մայրաքաղաքս Խիզան ընդ հովանեաւ սուրբ եօթն խորանացս... ի թւականիս Հայոց ի ՌԾԴ (1605), ի հայրապետութեան տեառն տէր Մելքիսէթ կաթուղիկոսի Էջմիածնայ, եւ մերոյս Ախթամարայ տէր Գրիգորիս կաթուղիկոսի ամենայն Հայոց[3]”։

---

[1] Փիրղալէմեանի Յիշատակարաններէն հանուած հրատարակուած՝ “Հայերգ”, էջ ԺԲ–ԺԳ։

[2] Թորոս Աղբար, Բ, էջ 266։ “Տաճար” շաբաթաթերթ, 1912, էջ 413։

[3] ԱՐՐՏ 1911, էջ 316։ Նոյնը Սմբատեանց՝ Երնջակ, էջ 309։

5. «Գրեցաւ Սուրբ Աւետարանս ի գաւառս Մոկաց ձեռամբ Յովհաննէս քահանային եւ ծաղկեցաւ ի քաղաքս Խիզան ձեռամբ Խաչատուր տգէտ քահանայիս ... ի մեծ թուականիս Հայոց ՌԾԴ (1605) ի հայրապետութեան Էջմիածնայ տեառն տէր Գրիգորիսի Ուրֆայեցւոյ եւ մերոյս Աղթամարայ տեառն տէր Գրիգորիսի, թագաւորութեան այլազգեաց սուլթան Մահմուտ Խոնդքարին ...[1]»։

Գրիգորիս Գ.ի յաջորդը մեզի անյայտ է. ձեռագրաց մէջ կամ այլուր 1606—1660 55ամեայ շրջանին Աղթամարայ կաթողիկոս չէ յիշուած։ Սիմէոն Սսոյ կաթողիկոսի թղթէն կը տեսնուի սակայն թէ այս շրջանը նշանակալից եղած է Աղթամարայ եւ Էջմիածնի կաթողիկոսաց յարաբերութեանց համար (հմմտ. այս մասին վերը էջ 29)։ Այնպէս կ'երեւայ թէ Փիլիպպոս կաթողիկոս (1632—1655) կերպով մը հնազանդեցուցած իսկ է իրեն Աղթամարայ կաթողիկոսը, որուն անունը չէ յիշատակուած։ «Հաւաքարանը» այլ եւ այլ անուններ կը թուէ, զորոնք յառաջ կը բերէ նաեւ Լեւոնեան, որոնք սակայն պատմական չեն երեւար։ Լեւոնեան 1614—1648 շրջանի համար (Բիւզանդիոն, Թ. 1197, ասկէ ընդ. Օր. ունի 1612—1648) եւ Փիրղալէմեան (Դիւան, Դ, էջ 771) իբրեւ «ժամանակակից Մովսէս կաթողիկոսին Էջ-

---

1 Սմբատեանց՝ Նկարագիր Շամախւոյ թեմին, Տփղիս 1897, էջ 239-240։ Ազգագր. Հանդէս, ԺԲ, էջ 159։ Բարխուդարեանց՝ Աղուանից երկիր, էջ 167—168։

միածնի” (1629—1633) կը նշանակեն Ստեփանոս կաթողիկոս մը, որուն ըստ Ընդ. Օր. “իբր հակաթոռ կամ աթոռակից կը յիշուի Մարտիրոս Գուռճի 1645էն 1648”. ասոնք ուրիշ կողմանէ անծանօթ են ինծի։

## 19. Մարտիրոս Գուրջի:

Մարտիրոս, ըստ “Հաւաքարանին” “մականուանեալ Գուրջի, յերկրէն Մոկաց, ի գեղջէն Նանէնից”, Դաւիթ Բաղիշեցիէն կը կոչուի “Փշրուկ” (Դիւան, Ժ, էջ 54—55)։ Ազգ. Օր. զինքը 1645—1648 “աթոռակից” կը նշանակէ Ստեփանոս կաթողիկոսի. եւ 1652—1663 ինքնիշխան կաթողիկոս յաջորդած Կարապետ քռնած կամ քաջած (Ծաղկառապի, Ծաղկաւէր) կաթողիկոսին (ըստ 1908ի Օրացոյցի՝ 1661ին)։ Պատմութեան մէջ յերեւան կ'ելլէ ինքը 1660ին։ Սիմէոն Երեւանցի իւր Ջամբռին մէջ (էջ 93—95) կը պատմէ թէ ինչպէս Յակոբ Կաթողիկոսի (1655—1680) օրով “Մարտիրոս կաթողիկոսն Աղթամարու” կը փորձէ Էջմիածնի թեմէն հանել “Վան, Բերկրի, Արճէշ, Խլաթ, Բաղէշ, Մուշ, Հօշապ եւ մինչեւ ի Համիթ”, եւ առ այս մինչեւ իսկ հրաման կը բերէ Բարձրագոյն դռնէն. բայց Յակոբ կաթողիկոս արթուն գտնուելով՝ ի դերեւ կը հանէ Մարտիրոսի ջանքերը։ Որովհետեւ Աղթամարայ կաթողիկոսաց պատմութեան համար կարեւոր էջ մը կու տայ Երեւանցի, ամբողջութեամբ կ'արտագրեմ հոս այս մասը.

"Ի ՌՃԴ թուոյն մերում մինչ մեռանի Փիլիպպոս կաթողիկոսն մեր եւ Նստի Յակոբ կաթողիկոսն Ջուղայեցի, յայսմ միջոցի մինչ սաստիկ պատերազմն եւս գոյր ի մէջ Պարսից եւ Օսմանցւոց թագաւորացն, Մարտիրոս կաթուղիկոսն Ախթամարու ժամանակ գտեալ ի ձեռն իւրոց ծածուկ արզայ հասուցանէ առ Օսմանցւոց սուլթան Մահմուտ թագաւորն թէ Վան, Բերկրի, Արճէշ, Խլաթ, Բաղէշ, Մուշ, Հօշապ եւ մինչեւ ի Համիթ ընդ տէրութեամբ քով են, սակայն ի յերկիրն Պարսից Նստող խալիֆայն (կաթողիկոսն) զայսոսիկ զաւթեալ է, եւ զարդիւնս սոցա ժողովեալ տանի յերկիրն Պարսից. հրամայեսցես՝ զի մեզ լիցին վիճակք. որովհետեւ ի յիշխանութիւնս քո նստիմք մեք: Զոր ի լսելն Սուլթան Մահմուտին՝ տայ նմա զֆարման, զի նա տիրեսցէ այնց վիճակացն: Զայս իբրեւ լսէ Յակոբ կաթուղիկոսն՝ եւ սա գրէ արզայ առ նոյն սուլթան Մահմուտն հաւաստելով ի բնէ անտի Էջմիածնի գոլ վիճակք վերոյիշեալ նահանջքն. եւ սուլթան Մահմուտն եւս ի վերահասու լինելն ճշմարտութեանն՝ վերստին հաստատուն ֆէրման գրէ թէ այն վիճակքն որովհետեւ ի բնէ Էջմիածնի են լեալք՝ մեք եւս Էջմիածնի շնորհեցաք, եւ մի եւս ձեռնամխեսցին Ախթամարու կաթուղիկոսն եւ կամ այլք. (եւ նոյն ֆարմանն եւս ահա ի սուրբ Աթոռս գոյ.) որ գրի ի Տաճկաց թիւն ի ՌՀԲ (1661/2). զորս գտցես ի յերեսն գրեցեալ ցուցակաւն եւ ՄԼԱ համար նշանաւն:

Իբրեւ այս այսպէս լինի, ապա Մարտիրոս կաթողիկոսն Ախթամարու անկանի ի Վանայ մովպետն եւ ի մեծամեծսն կաշառելով, ասէ թէ ես զայսքան դրամ եմ խարճեալ, ֆարման եմ հանեալ, այժմ ի վիճակացս եւս զրկիմ. եւ շատ զրոյց առարկի ի մէջ այլազգեաց եւ մերայնոցն ի դատարանի Նոցին. վերջապէս Յակոբ կաթուղիկոսի գիտութեամբն եւ խորհրդակցութեամբն տեղւոյ իշխանացն՝ տեղւոյ առաջնորդ Պօղոս վարդապետն վէքիլ լինի Էջմիածնի կողմանէ ՌՊԽԲ. ղուռուշ տայ Մարտիրոս կաթուղիկոսին եւ ի բերանոյն գգիր առնու թէ Ես Մարտիրոս կաթուղիկոս Ախթամարու յառաջ քան զայս վասն Վանայ, Բաղէշու, Մշու, եւ այլոց շրջակայից քաղաքաց, որոց գնուիրակութիւնն Էջմիածին առնոյր, ֆարման հանի յարքայէն թէ՝ Էջմիածին ի յիշխանութիւնս Պարսից է, եւ այս երկրաց զարդիւնսն ժողովեալ տանի յերկիրն Պարսից, հրաման լիցի զի Ախթամար կերիցէ, որովհետեւ ի յիշխանութիւնս Օսմանցւոց է: Ապա յետոյ Վանայ առաջնորդ Պօղոս վարդապետն ընդ յիս դաւ յարոյց եւ վկայս եբեր ի դատարանի թէ այդ վիճակքդ Ետոի քիլիսային են եւ ոչ Ախթամարու: Եւ յետ խօսակցութեանց, ապա ի Պօղոս վարդապետէն ես Մարտիրոս կաթուղիկոս առի 1848 ղուռուշ եւ զայս գիրս ետու: Որ այսուհետեւ եթէ ես ձեռնամուխիլ կամիցիմ այսց վիճակացս՝ թալպիս (խաբերայ) լինիմ եւ յանցաւոր: Եւ զայս գիրս գիտ ի յերեսն գրեցեալ ցուցական եւ ՄԼԲ համար

նշանաւն։ Որ գրի ի թիւն Տաճկաց ի ՌՀԲ (1661/2)։

Իբրեւ այս այսպէս լինի, ապա ի միւս ամին, Մուստաֆայ փաշայի որդի Ապտուլլայ-չէլէպի ոմն կոչեցեալ՝ որ լինի իշխող Ախթամարու կղզոյն, դաւ յարուցեալ ընդ Պօղոս վարդապետին եւ ընդ իշխանսն Վանայ, ասէ թէ՝ Աղթամարու կաթողիկոսին յաղագս ես զայսքան դրամ խարճեցի եւ ֆարման բերել ետու, զի նա տիրեսցէ այսց վիճակացս. եւ ի տարւոյն տայցէ Վանայ բերթին 3000 ստակ, եւ 10.000 ստակ եւս ինձ տայցէ ի տարւոյն։ Այժմ որովհետեւ դուք ի ձեր կողմն արկեալ դուք տիրեցիք. ուրեմն Ետոի քիլիսէի առաջնորդ Պօղոս վարդապետն տայցէ զնոյն 3000 ստակն Վանայ բերթին, 10.000 ստակ ինձ ամ յամէ եւ 100 ղուռուշ եւս զոր խարճեցի վասն ֆարմանի Մարտիրոս կաթուղիկոսին. ապա թէ ձեզ լիցին այդ վիճակքդ։ Եւ Պօղոս վարդապետն եւ իշխանքն եւս յանձն առեալ զայս ասացեալ դրամքս ի տալ, եւ ի նոյն Ապտուլլայէն եւս զգիր մի առնուն թէ այսուհետեւ թէ ես, եւ թէ Ախթամարու կաթուղիկոսն դաւի արասցուք, եւ կամ ձեռնամխիլ կամիցիմք յայս վիճակս, թալպիս եւ խարբերայ եղիցուք։ Որ է գրեցեալ ի ՌՀԳ (1662/3) թուին Տաճկաց. զոր գտցես յերեսն գրեցեալ ցուցակաւն եւ ՄԼԳ համարաւն[1]։„

1 Ջամբռ, էջ 93–94։

Այս վէճը կը յիշատակէ նաեւ Դաւիթ Բաղիշեցի իւր ժամանակագրութեան մէջ այսպէս.

"Թուին ՌՃԺԱ (1662) գրգռեաց չարն սատանայ Աղթամարցիք ... կաշառս ետուն վանայ փաշային ուր հարիւր կարմիր ոսկի. ձեռամբ Աղթամարայ աղին, որ զուլ է. եւ արդ առին ի փաշայէն գնացին ամր հանին ի Ստամբօլայ, թէ վանայ քաղաք եւ Բաղէշ Աղթամարայ լինի. եւ գրոհ տուեալ արբանեակք չարին մարդիկ եւ տանուտէր Ոստանայ, եւ միաբանութեամբ չայուշով եկին ի Բաղէշ քաղաք. իբր այսուհետեւ մի ոք իշխեսցէ զանուն Էջմիածնայ տալ՝ այլ Աղթամարայ: Եւ զայն տեսեալ մեծ վարդապետին Մեսրոբայ՝ հանդերձ մեօք զմահ յանձն առեալ. եւ մի տեսանել զարհամարհանս մօրն լուսոյ. եւ ոչ թողաք յեկեղեցի. եւ գնացեալ իջեւանեցան ի խանութսն եւ ի խանսն. եւ էջ հոգեւոր հայրն մեր ի քաղաքն եւ խրատեաց զժողովուրդն եւ ծանոյց զառաջին կապանս նոցա. եւ թէ ոք նոցա հնազանդին ուրացողք կոչին. զի ուրանան զաթոռն սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ. եւ հաւանեալ ամենայն ժողովրդեանն բռնութեամբ Աւտալ խանին արտաքսեցին զնոսա ի քաղաքէն. զի՞նչ երկարեցից. այս երկու ամ եօթն անգամ եկին. Մարտիրոս Փշրուկ անուանեալ կաթողիկոսն Աղթամարայ, եւ չՍահակ վարդապետ. եւ Մովսէս գող չեպիսկոպոս, եւ շէկ անիծեալ աշխարհական մի. եւ Գաւաշու պեղծ մելիք աւելի քան զքսան

այր. եւ զ՞ինչ ասացից Քրիստոսի շնորհն յաղթեաց նոցա. եւ ոչ կարացին մուծանել զաղանդն իւրեանց յաշխարհն մեր: Այլ թափեցաք յընչից եւ աղքատացաք. զի գնաց աւելի քան զերկու հազար ղուրուշ սաղ դրամ փաշին, խանին, չավուշին, հազար ղուրուշ կարդացողին, հազար ղուրուշ քաղաքն, յետոյ եկն ամի ի Կոստանդնուպոլսէ, եւ կրկին հաստատեալ ի վերայ սուրբ Էջմիածնի. օրհնեալ է Աստուած[1]:»

## 20. Պետրոս:

Մարտիրոսի կաթողիկոսութիւնը երկար տեւած պիտի չըլլայ. վասն զի 1670ին կը յիշուի վախճանած Պետրոս անուն կաթողիկոս մը, որուն տապանն կը գտնուի յԱղթամար այսպիսի տապանագրով.

«Սրբազան յակուցեալ (sic) Պետրոս կաթողիկոս. Թվ. ՌՃԺԹ (1670)[2]:»

## 21. Ստեփանոս:

Պետրոսի յաջորդած է Ստեփանոս, որուն պատահած եմ միակ յիշատակարանի մէջ, որ է հետեւեալը[3].

«Աւետարան Թումայ քահանայի ի կղզւոջ Աղթամարայ, ի հայրապետութեան տեառն

---

1 Դաւիթ Բաղիշեցի, Ժամանակագրութիւն. Դիւան Հայոց Պատմութեան, Ժ, էջ 54–55:

2 Ազգագր. Հանդ., Ի, էջ 211:

3 Էջմ. Գէորգ. Ցուց., Թ. 375. Հմմտ. վերը էջ 117:

Ստեփաննոսի ի Թուականին ՌՃԻ (1671, ԹՃԻ? = 1471) ստացող Բառեցի Մարտիրոս։„

[Փիլիպպոս։]

Ե. Լալայեանց յառաջ կը բերէ Վասպուրականի Ս. Թումաս վանքի պարսպի արձանագրութիւնը այսպիսի ընթերցուածով.

“Ես Թոմա վարդապետ ծառայ Փիլիպոս կաթողիկոսի արդեամբ գաւազանաւ իմով նորոգեցի զպարիսպս Թվ. ՌՃԻ (1671)[1]։„

Եւ կը յաւելու Լալայեանց թէ “վերոյիշեալ Թումա վարդապետը եւ Աղթամարցի Փիլիպպոս կաթողիկոսը այստեղ են թաղուած. որոնց տապանագրից զուրկ գերեզմանները այժմ էլ ցոյց են տրւում։„

Ես կը կասկածիմ Աղթամարայ աթոռին վրայ Փիլիպպոս անուն կաթողիկոսի մը գոյութեան վրայ։ Թովմաս վարդապետ կրնար նաեւ Էջմիածնի Փիլիպպոս կաթողիկոսին “ծառան„ ըլլալ։ Դժուարաւ այս Փիլիպպոսի պիտի վերաբերի անթուական տապանագիրս, որ կը գտնուի յԱղթամար.

“Ես տէր Փիլիպոս կանգնեցի խաչս բարեխաւս առ Աստուած կենակցին իմոյ Գինէի եւ որդոց իմոց Խաչատուրին եւ Միքայէլին, որ յայսմ աւուր փոխեցաւ առ Աստուած եւ եթող ինձ սուգ անմխիթար. որք երկրպագանէք յիշեցէք ի Քրիստոս[2]։„

---

1 Ազգագր. Հանդ., Ի, էջ 209։

2 Ազգագր. Հանդ., Ի, էջ 212։

## 22. Կարապետ:

Ստեփանոսի կամ Փիլիպպոսի յաջորդած կ'երեւայ Կարապետ, որ կը յիշուի անգամ մը 1677ին հետեւեալ յիշատակարանի մէջ[1].

Մխիթար քահանայ յերկրին Մոկաց ի գիւղն Դաշտ կ'օրինակէ Աւետարան մը "ի Թուին Հայոց ՌՃԻԶ (1677) ի հայրապետութեան Աղթամարայ տէր Կարապետի:"

Թերեւս սա ըլլայ Լեւոնեանի "Քննած" կամ Ազգ. Օր. "Քրջած" Կարապետ կաթողիկոսը, զոր կը յիշէ նաեւ "Հաւաքարանը":

## 23. Յովհաննէս Թիւթիւնջի:

Կարապետ կաթողիկոսէն յառաջ կամ ետքը երեւցած կը թուի Յովհաննէս Թիւթիւնջի, եւ այն կարճ ժամանակով մը միայն, վասն զի այլազգ տեղ չկայ իրեն կաթողիկոսաց շարքին մէջ: Լեւոնեան 1669—1689ի մէջերը կը համարի զինքը, իսկ Փիրղալէմեան չի յիշեր: Ընդ. Օր. 1904ին կը նշանակէր 1679—1681, իսկ 1908ին՝ 1669—1683: Ժամանակագիր մը այսպէս կը գրէ անոր մասին[2].

1669ին՝ "Ի Թվին ՌՃԺԸ եղեւ շարժ ի քաղաքն Վան եւ վնաս ինչ ոչ եղեւ, բայց ի

---

1 Մ. Վ. Ամատունի՝ Ցուց. Ձեռագրաց Սեւանայ, Թ. 31. Հմմտ. Սմբատեանց՝ Գեղարքունիք, էջ 399: Ն. Մառ իր Ցուցակին մէջ, Թ. 24, էջ 13 յառաջ չէ բերած յիշատակարանը:

2 Դիւան, Ժ., էջ 105:

յոտն Վարագայ՝ լեառն մի ոստեալ ի տեղւոջէն եւ թռուցեալ անկաւ ի յոտն, եւ արգիլեաց զգետն... (Վարագայ ջրաղացն կը խանգարի...) վասն որոյ հանճարեղ խորհրդականն այն Յով-հաննէս վարդապետն, որ ի ժամանակին այնմիկ էր Առաջնորդ անուանի վանուցն Վարագայ, որոյ մականունն «Թիւլթիւնչի» ասէին, — սա լեալ էր պատրիարք ի մեծ քաղաքն Բիւզանդիս եւ եկեալ աստ եղեւ առաջնորդ, եւ ի միասին տիրէր Սալապատոյ վանիցն եւս, այլ եւ տիրեաց Հոգւոց վանիցն եւս, եւ եղեւ կաթողիկոս Աղթամարայ — սա հնարեաց այլ իմն կեր-պիւ բերել զջուրն ջրաղացին ի վանքն... բայց զանտանելի նեղութիւն եւ զանբաւելի ծախսն, որ ի վերայ եղեւ ոչ գոյ թիւ եւ ոչ համար. եւ յետոյ այս վարդապետն եղեւ գլուխ ազգին Փռանկաց եւ եկն ի վերայ թուրքին. յորոյ աւուրն էր Վաքիլ Վարագայ Խօճայ Փիրումն. եւ աւագ երէց տէր Մինասն. եւ վերակացու գործոյն Չմշկայ տէր Աւետիսն. որ եղեւ յետոյ արհի եպիսկոպոս եւ գործակալ սուրբ Էջմիած-նայ. այլ գլխարճն Ալթունենց Խօճայ Մարխասն հոգաց։»

Արդեամբք ալ երկիցս կը պատահինք ի Կ. Պոլիս պատրիարքական աթոռի վրայ Յովհաննէս Թիւլթիւնճիի, 1663—1664 եւ 1665—1667։ Յովհաննէս իբրեւ պատրիարք Կ. Պոլսոյ յիշատակուած է Վենետիկի Մխիթ. Հարց Թ. 76 Սաղմոսարանի մէջ, որ գրուած է «ի մայրաքաղաքն Տրապիզոն... ի հայրապետու-

թեանն Հայոց տէր Յակոբ կաթողիկոսին, ու- ի յառաջնորդութեանն սուրբ Երուսաղէմայ Եղիազար վարդապետի, եւ ի պատրիարգութեանն տէր Յովհաննէս արքեպիսկոպոսին... ի թուականիս Հայոց ՌՃԺԲ ամի յուլիս ամսոյ ժա[1]»: Ուստի հաւանորէն 1668էն սկսեալ ժամանակ մը Վարագայ առաջնորդութիւնը վարեց եւ ապա անցաւ Աղթամար, թերեւս տապալելով կարապետը կամ անոր իբր հակառակաթոռ մը. ինքն ըլլայ թերեւս Վասպուրականի Մոկս գիւղաքաղաքի Ս. Աստուածածին եկեղեցւոյն արձանագրութեան մէջ 1677ին յիշուած Յովհաննէսը: Արձանագրութիւնն է[2].

«ԻԱ յոբէլինին ը քառեակ հերեալ ի նմին նորոգեցաւ տաճարս կոսին ձեռամբ մեղօք մեռեալ ս... թին ի ժամանակին Տ. Յովհաննէսին ՌՃԻԶ:»

Յամենայն դէպս 1683էն յառաջ հեռացած էր նա Աղթամարէն վասն զի այս թուին կը գտնուէր յԵւրոպա. Խ. Լեւոնեան[3] մագաղաթեայ գրուածքի մը մէջ կարդացած է հետեւեալ տողերը.

«Ի թվին ՌՃԼԲ (1683) փետրվարի ամսոյ Բ. Ես Բաղիշեցի մղտեսի Մարուգս գնացի ի Թագաւորանիստ քաղաքն Վերսալեայ եւ անդ

1 Սարգիսեան՝ Ցուցակ, էջ 340:
2 Բիւզանդիոն 1903, Թ. 2196 (Խ. Լեւոնեան):
3 Բիւզանդիոն 1903, Թ. 1931. այս տեղ՝ «Վանեցի բարձրաստիճան եկեղեցականներ ի հնումն» խորագրոյ տակ ընդարձակ գրած է Լեւոնեան Յովհաննէսի վրայ:

գրի զԹութունջի Յովհաննէս վարդապետն եւ զԱխեանցի Զաքարիայ վարդապետն եւ Հալապցի Ղազարի որդի Ջուղէպն եւ Արզրումցի Յովհաննէսի որդին Գրիգորն եւ Խազանկէլէրցի Մուրատն եւ Ոսկան վրդ.ի քեռորդին Սողոմոն եւ գնացեալ ի միասին տեսաք զՖռանսէզի Թագաւորն եւ զԹագուհին եւն:„

Թէ ինչ կ՚իմանայ տարեգիրն "եւ անդ եղեւ գլուխ ազգին Ֆռանկաց եւ եկն ի վերայ Թուրքին„ ինձի առ այժմ անիմանալի է։

Ուրիշ յիշատակարանէ մը կ՚իմացուի թէ Յովհ. անցած է Եւրոպա իբրեւ Էջմիածնի Նուիրակ, ուր պատահած է Իլվովի (Լեմբերգի) եւ Կամենիցի Հայոց ալ, եւ Կամենիցէն առած հետը հին պատկեր մը Ս. Աստուածածնի, որ կ՚ըսուի թէ 1354ին Անիէն բերուած է — եկած է Տրապիզոն: Հոն 1698ին ականատես կ՚ըլլայ Կարապետ պատանւոյն նահատակութեան, որուն նշխարք նոյն թուին տեղւոյն Ամենափրկիչ վանքի Յակոբ առաջնորդին հետ ի միասին կ՚ամփոփէ։ Այս նկատմամբ Տրապիզոնի Չարխափան եկեղեցւոյն Յայսմաւուրքին մէջ (Յունուար ԻԶ) վկայաբանութեան ծայրը կը կ՚ըսուի. "Ես Յովհաննէս վարդապետս որոյ մականուն Թութունջի կոչի, եւ առաջնորդ սուրբ Ամենափրկչին Յակոբ վարդապետ՝ եղեալ ականատես այս սուրբ նահատակիս, եւ ես Յովհաննէս արքեպիսկոպոս ոտիւք իմովք ընթացայ եւ գրկախառն համբուրեցի, եւ փափագ ծնողացն բազում խրատիւք մխիթարեցի։ Եւ յերրորդ աւուրն յետ թաղ-

մանն ես Յովհաննէս վարդապետս տեսի լոյս ի վերայ գերեզմանին... Թվին ՌՃԽԷ (1698)[1]:„

Յովհաննէս այնուհետեւ Թուի թէ Տրապիզոն մնացած եւ վախճանած է, ուր Չարխափան եկեղեցւոյն գերեզմանոցին մէջ կը ցուցուի տապանը՝ հետեւեալ կիսեղծ արձանագրութեամբ[2].

“Այս է տապան Սուրբ Էջմիածնայ Նուիրակ Յօհաննէս եպիսկոպոսին, որոյ ձեռամբն եկեալ Ամենափրկչի վանից սուրբ Աստուածածնի պատկերն... Խաչկալն եւ Մարիամու սուրբ Աստուածածնայ խաչկալն, որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի. Թուին ՌՃԾԲ:„

## 24. Թովմա Ա. (1681—1698):

Թովմա, որ ըստ “Հաւաքարանի„ Յերճ գիւղէն էր, եւ ըստ Ընդ. Օր. տոհմով՝ Տօղլան բէգեան, կը յիշուի արդէն ՌՃԼ թուին իբր կաթողիկոս Աղթամարայ. այսպէս Թումայ գրիչ կ'օրինակէ Աւետարան մը “յերկիրն Մոկաց ի գիւղն որ Դաշտ կոչի, ի դուռն սուրբ Յակոբին եւ կեցնայ սուրբ Աւետարանին... ի Թուականութեանս Հայոց ՌՃ եւ Լ. ի հայրապետութեան տեառն Թումայի[3]:„

Թէեւ ուրիշ յիշատակագիր մը անոր ձեռնադրութիւնը կը համարի կատարուած Եղիազար

---

1 Արեւ. Մխիթարեանց՝ Վէպ գաղթականութեան Հայոց ի Տրապիզոն, Կ. Պոլիս 1857, էջ 41–43:

2 Անդ, էջ 132:

3 Սարգիսեան՝ Ցուց., էջ 788:

կաթողիկոսի ձեռօք յԷջմիածին։ Վանայ Տօսբ գաւառի Խժեղկ գիւղի ձեռագիր Մաշտոցի մը մէջէն Խ. Լեւոնեան յառաջ կը բերէ հետեւեալ Յիշատակարանը.

"Ի Հայրապետութեան Լուսաւորչական տոհմին տեառն Եղիազարի սրբազան կաթուղիկոսի եւ մերոյս Աղթամարայ տեառն Թումայ կաթուղիկոսին որ եւ յԱղթամարայ բազում ընծայիւք, եպիսկոպոսօք, քահանայիւք եւ տանուտերօք եւ գնաց յԷջմիածին յաթոռն սուրբ Լուսաւորչին եւ ձեռնադրեցաւ ի տեառն Եղիազարէ կաթուղիկոս Աղթամարայ եւ դարձաւ մեծաւ պատուով ի մեծամեծ պարգեւօք հանդերձ սրբալոյս միւռոնաւ եւ ընդհանրական օրհնութեամբ յաթոռն իւր յԱղթամար եւ եբարձ զըմբոստութիւն ի նախնեաց առաջնոց Հայրապետաց, եւ պապանձեցոյց զբերան երկաբնակացն, եւ եղեն յԷջմիածին եւ յԱղթամար մի հօտ եւ մի հովիւ ի փառս անուան մարդասիրին Աստուծոյ որ ի ՌՃԼԲ (1683) ամին[1]։"

Որովհետեւ Եղիազար հասաւ յԷջմիածին ՌՃԼԱ (1682) թուին Օգոստոս 30ին[2], հարկ է ըսել թէ Թովմայի ձեռնադրութիւնը կատարուած ըլլալու է յընթացս 1683ի, իսկ անկէ յառաջ կը գտնուէր աթոռին վրայ առանց ձեռնադրութեան։ Ընդ. Օր. 1904ին կաթողիկոսութեան սկիզբը կը նշանակէր 1681, իսկ 1908ին՝ 1683։

---

1 Բիւզանդիոն, Թ. 1198։

2 Սմբատեանց՝ Երնջակ, էջ 209։

Զինքը 1683ին կաթողիկոս գիտէ Նաեւ Մխիթար երէց[1], որ ՌՃԼԲ թուին Սաղմոսարան մը կ'օրինակէ "յերկիրս Մոկաց ի գիւղս որ կոչի Նանենց ընդ հովանեաւ Ս. Սարգսի զօրավարին՝ ի կաթողիկոսութեան Աղթամարայ տեառն Թումային. Տէր Աստուած Յիսուս Քրիստոս զինքն անշարժ պահեսցէ ի վերայ իւր աթոռին. ամէն":

Թովմայի այս զիջումը առաջին դէպքն է Աղթամարայ կաթողիկոսաց պատմութեան մէջ: Այսպիսի խոնարհեցուցում մը յանձն առաւ Նա անշուշտ Եղիազարի կաթողիկոսութեամբ յառաջ եկած ոգեւորութեան հետեւութեամբ: Բայց, ինչպէս կը գրէ Լեւոնեան՝ օգտուելով ձեռագիր աղբիւրներէ եւ որուն կը հետեւինք հոս մենք ալ, այս համերաշխութիւնը շատ չտեւեց. որովհետեւ 1691ին Եղիազար վախճանելով՝ անոր յաջորդն Նահապետ կաթողիկոս "նոյն տարին" (Լեւոնեան) կամ 1696ին (Դիւան, Դ, 771) եւ կամ "1697 Յունվ." (Ազգ. Օր.) իր ձեռքով Աւետիս եպիսկոպոսն ընդդէմ Թումայի կաթողիկոս ձեռնադրելով՝ Աղթամար ղրկեց: Թումա կաթողիկոսն ալ տեսնելով թէ այս կերպով իր զիջողութիւնը չարաչար գործածուեցաւ, անմիջապէս Արծկեցի Սահակ Պարոն Տէր կաթողիկոս օրհնեց (1697 Մայ. 24 ըստ Ազգ. Օր.), որպէս զի իր մահէն ետքը յաջորդէ իրեն, մանաւանդ որ ինքն ալ ծերացած ըլլալով՝ օգնականի պէտք ունէր: (Փիրղալէմեան, Դիւան, Դ, 771, այս դէպքը կը

[1] Աճառեան՝ Ցուց. Թաւրիզի, էջ 98:

նշանակէ «Գրիգոր Ա. ձեռնադրուած Թովմայ Ա.ից իբրեւ իրան յաջորդ»)։ Յետոյ 1697ին Վան երթալով, տեղւոյն Տուրսուն փաշայի միջոցաւ Վանայ Թեմն ալ նորէն հանեց Էջմիածնէն ի հեճուկս Նահապետ կաթողիկոսի։

Թովմա կը վախճանի 1698 Ապր. 1 (ըստ Ազգ. Օր.)։

## 25. Սահակ Արծկեցի։

Թովմայի կը յաջորդէ Սահակ Արծկեցի (1698 Ապր.), երբ Աւետիս կը շարունակէր աթոռն ձեռք բերելու համար իր ճիգերը։ Բայց կարճատեւ կ'ըլլայ Սահակայ պաշտօնավարութիւնը, ըստ Ընդ. Օր. 4 ամիս, եւ կը վախճանի։ Փիրղալէմեան կը նշանակէ զինքը իբրեւ յաջորդ Գրիգորի։

## 26. Յովհաննէս Կէծուկ։

Սահակայ կը փոխանակէ Յովհաննէս Կէծուկ կամ Կէծուկեանց (Դիւան, Դ, 771), «որ միայն մէկ երկու տեղ կայ յիշատակուած 1699էն մինչեւ 1704», եւ ըստ Փիրղալէմեանի՝ «ժամանակակից Աղեքսանդր կաթողիկոսի Ջուղայեցւոյ» (Դիւան, Դ, 771)։

## 27. Հայրապետ Ա.։

Հայրապետ Նարեկի մօտ Փայխ գիւղէն էր, Թովմա կաթողիկոսին քեռորդին։ Իբրեւ շուշտակ վարդապետ 1705ին կը յաջորդէ Յով-

Հաննէսին՝ ըստ Լեւոնեանի։ Ընդ. Օր. 1908ին պաշտօնավարութիւնը կը դնէ 1705—1707։

Ինքնագիր յիշատակարանի մը մէջ կը գրէ.

«Ես Հայրապետ կաթողիկոս Աստուծոյ տուաչնորհութեամբ նստայ ի յաթոռն Աղթամարայ... եւ Աստուծոյ կարողութեամբն տարի բազում անօթս... Անդրէաս առաքելոյ սուրբ Աջն եւ զայս սուրբ Աւետարանս եւ եդի ի դուռն սուրբ Խաչին ի վայելումն տեսողաց եւ յիշատակ հոգւոյ իմոյ. նաեւ ծնողաց իմոց հօրն Վարդանէսին եւ մօրն Խանայէին եւ որդւոց իմոց Թումին եւ Աղամին եւ կողակցոյն իմոյ Նուպարին եւ Հարսներաց իմոց Նազլիխանին, Մարեմին եւ զաւակաց նոցին... եւ փեսային իմոյ պարոն Վարդին... եւ քերոյն իմոյ Թումայ կաթողիկոսին, ի թվականիս ՌՃԾԵ[1]։»

## 28. Գրիգոր Գաւաշեցի (1707—1711)։

Հայրապետի կը յաջորդէ Գրիգոր, որ կը յիշատակուի 1707 (Բիւզանդիոն 1903, թ. 2031), 1711 (անդ, թ. 1198) թուերուն։ Ընդ. Օր., որ 1707—1711 գիտէր պաշտօնավարութիւնը, 1908ին՝ սկիզբը 1711ին կը դնէ, առանց նշանակելու կատարածը։

## 29. Յովհաննէս Հայոց-Ձորեցի (1720)։

Յովհաննէս կը յիշուի 1720ին. Մոկաց Ողեմ գիւղի եկեղեցին կը շինուի «ի թուին

[1] Լեւոնեան՝ Բիւզանդիոն, թ. 1198։

Ասոր յաջորդած է ըստ «Հաւաքարանի» Սահակ Յաղըակեցի, եւ ասոր Յակոբ Յամթեցի։ Փիրղալէմեան Բաղդասարի յաջորդ կը նշանակէ միայն զՅակոբ, որ վախճանած է 1758ին յաջորդ թողլով զԳրիգոր, որ 1763ին կը յիշուի։

Բայց ուղիղ չէ այս ժամանակագրութիւնը։

Սիմէոն կաթողիկոս «Ջամբռի» մէջ կուտայ մեզի հիմնուած վաւերագիրներու վրայ Աղթամարայ երեք կաթողիկոսաց՝ Նիկողայոսի, Գրիգորի եւ Թովմայի յաջորդութիւնը, այնպէս որ այլ եւս խնդրական չի կրնար համարուիլ այս կէտը։ Դժբախտաբար Սիմէոնի անծանօթ մնացած է Նիկողայոսի նախորդին անունը, որ ըլլալու է հաւանօրէն Բաղդասար։ Սիմէոն ասոր մասին կը գրէ.

«Ի ՌՃՂԲ թուոյն մերում ի ժամանակս Ղազարու կաթողիկոսին մերոյ Ճահկեցւոյ (1737—1751). Ախթամարու բոլոր վիճակքն զզուեցեալ ի... (դատարկ) կաթուղիկոսէն իւրեանց վասն անյարմար կացութեանն, եւ մանաւանդ զի զաթոռն իւրեանց ի սպառ անշքացոյց եւ ի ներքոյ յոլովից պարտուց էարկ, եւ զեկեղեցական միաբանսն ցրուեաց եւ զկնաւոր աշխարհական բնակեցոյց ի վանքն. վասն որոյ ընկեցին զնա յաթոռոյն եւ զՆիկողայոս վարդապետ ոմն ընտրեալ արարին իւրեանց կաթուղիկոս[1]։»

1 Ջամբռ, էջ 95։

## 32. Նիկողայոս (1736 [1743]—1751):

"Հաւաքարանը„ կը կոչէ զինքը "Նիկողայոս Սպարակերտցի, ի գեղջէն Լուառայ, ի տանէն Մեծի Սեւոնց Գրիգորի, այր իմաստուն եւ հռետոր՝ Հին եւ Նոր Կտակարանաց եւ արտաքնոց, որ բազում աշխատանս կրեաց յԱթոռին յԱղթամարու, եւ ետ Յայսմաւուրք գիրք մի եւ Ոսկեան Աստուածաշունչ մի եւ Հարցմանց գիրք մի. եւ Ճաշոց մի ի Սուրբ յԱթոռն ի յիշատակ, ի թվին ՌՃՂԹ[1]:„

Այս տողերը գրուած ժամանակակից Ներսէս տիրացուէն՝ վստահելի կարելի է համարել եւ Նիկողայոսի ընտրութիւնն կրնանք դնել իբր 1736ին (ընդ. Օր. 1738ին կը դնէ), երբ վախճանած կ՚ըսուի Բաղդասար. եւ կամ այս թուականէն քիչ վերջը, յամենայն դէպս 1740էն յառաջ, թէեւ Սիմէոն կաթողիկոսի խօսքերուն համաձայն ընտրութիւնը պատահած է ՌՃՂԲ թուին (1743). բայց այս թուականը կրնայ նաեւ հետեւեալ դէպքին տարին ըլլալ:

Սիմէոն կաթողիկոսի համաձայն (Բաղդասարի) անկմանէն ետքը կ՚ընտրուի Նիկողայոս: Յետ ժամանակի, կ՚ըսէ Սիմէոն, Նիկողայոս կը խորհի ընդարձակել Աղթամարայ թեմը. եւ համամիտներու հետ խորհուրդ կ՚ընէ եւ Աղեքսանդր աբեղայի ձեռօք ի Կ. Պոլիս հրաման կը հանէ սուլթանէն թէ "Վան, Բաղէշ, Մուշ եւ շրջակայք սոցին Աղթամարու են վիճակք„:

---

1 Բիւզանդիոն, Թ. 1199:

Աղեքսանդր “զայս հրաման առեալ գայ ի Վան. գայ եւ Նիկողայոսն ի Վան եւ ցուցանէ զհրամանագիրն զայն տեղւոյ մեծաւորին, յորմէ եւ զգենու զփիլոյ„։ Հոն զԱղեքսանդր նուիրակ կը կարգէ եւ զՅովհաննէս վարդապետն, որ նոյն ժամանակներ Էջմիածնէն նուիրակութեամբ կը գտնուէր այն կողմերը, կը բանէ եւ ժողված արդիւնքը կողոպտելով՝ կը վռնտէ։ Զայս լսելով Ղազար կաթողիկոս կը բողոքէ Կ. Պոլիս ի ձեռն Յակոբ պատրիարքի եւ “զնորոգ Ֆէրման բերել տայ ի նոյն թագաւորէն սաստիկ եւ հաստատուն վճռով թէ վիճակքդ այդքիկ Էջմիածնի են եւ ոչ ոք ունի իշխանութիւն ձեռնամխել ի դոսա։ . . . Եւ այսու զվերջիշեալ վիճակսն Ղազար կաթողիկոսն վերստին յինքն վերադարձուցանէ. եւ զարդիւնս նուիրակին մերոյ՝ զոր առեալ էր Նիկողայոսն, ճշգիւ յետս առնու. եւ զՆիկողայոսն եւս բանադրէ„։ Այս կը պատահի ՌՃՂԵ (1746) թուին։

Ազգամարդիկ տեսնելով իրենք զիրենք յուսախաբ, մանաւանդ “նուաճեցեալ իսկ ի բազմակոյս պարտուց եւ յաղքատութեանց„, “բոլոր վիճակք՝ վանականք եւ աշխարհականք„ կը գրեն “զբազմակնիք թուղթս հնազանդութեան եւ աղերսանաց„ առ Ղազար կաթողիկոս, ընդ թղթոյն կը խաւրեն նաեւ զՆիկողայոս յԷջմիածին՝ խնդրելով կաթողիկոսէն, որ զինքը “արձակեսցէ ի կապից եւ կաթուղիկոս հաստատեսցէ ինքեանց եւ աղքատութեանց եւ պարտուցամթոցն իւրեանց եւս օգնութիւն արասցէ,

խոստանալով եւս այնուհետեւ կաթուղիկոսք եւ վիճակք՝ ի հնազանդութեան սրբոյ Էջմիածնին եւ սորին կաթուղիկոսացն միայնն„։

Ղազար կաթողիկոս սիրով կ'արձակէ զՆիկողայոս եւ ըստ խնդրանաց Աղթամարցւոց "ի ներկայութեան բազմաց եպիսկոպոսաց զկանոնական կոնդակ իւր գրէ քանիօք գլխօք, այս ինքն զՆիկողայոսն ընկալցին իւրեանց կաթուղիկոս այսուհետեւ եւ մինչեւ ի մահն զայլ ոք մի դնիցեն՝ որպէս անէծին յառաջ։ Եւ յետ մահու նորին զայլ ոք ինքնագլուխ մի նստուսցեն, այլ զարժանաւորն բազմակնիք թղթով բոլոր վիճակին ի սուրբ Աթոռս առաքեսցեն. զի աստ օծցի։ Եւ զայլս այսպիսիս գրէ, եւ կնքէ ինքն Ղազար կաթուղիկոսն, կնքէ եւ ինքն Նիկողայոս կաթուղիկոսն եւ այլք եպիսկոպոսք որք գտանին„։

Նիկողայոս թուղթս առած "մեծաւ փառաւորութեամբ եւ խնդալից„ կը դառնայ յԱղթամար, ուր "յետ ամաց ինչ„ կը վախճանի (Ջամբռ, էջ 96). հաւանօրէն 1751ին, ինչպէս կը նշանակէ Ընդ. Օր. ա։

## 33. Գրիգոր (1751—1761):

Սիմէոն Երեւանցի (Ջամբռ, էջ 96) Նիկողայոսի յաջորդ կը յիշէ "Գրիգոր վարդապետ ոմն„, որ հակառակ Ղազար կաթողիկոսի հետ եղած միաբանութեան՝ "նոյնպէս ինքնագլուխ եւ թարց հրամանի սրբոյ աթոռոյս (Էջմիածնի) կաթուղիկոսացն Մինասայ (1751—1753) եւ

Աղեքսանդրի„ (1753—1755) կը հաշուէ իբր զինք կաթողիկոս։

Ըստ Ընդ. Օր. 1751—1763 կը յիշուի, իսկ ըստ Լեւոնեանի մինչեւ 1758. մահուան թուականն անծանօթ մնացած է անոնց. բայց Սիմէոն Երեւանցի բացայայտ նշանակած է. այն է «ՌՄԺ (1761) թուոյն մերում մեռանի եւ Գրիգոր կաթողիկոսն Աղթամարու„ (Ջամբռ, էջ 97)։

Գրիգորի գահակալութիւնն հաշուելու է հաւանօրէն 1751էն. 1756ին կը յիշուի ինքը Ս. Խաչ եկեղեցւոյ խաչկալի վրայ եղած արձանագրութեան մէջ.

«Ի հայրապետութեան սրբոյ աթոռոյս տեառն Գրիգորի կաթողիկոսի շնորհօք Տեառն մերոյ Յիսուսի կառուցի խաչկալս արդեամբք Աղթամարայ մեծի եւ փոքու եւ քաղաքանից ոսկերչաց եւ աշխատութեամբ եւ միաբանակցութեամբ տեառն Սահակայ վարդապետի խարբերդցւոյ. որք պատահիք լի բերանով Աստուած ողորմի ասացէք նոցա. ի թվոջ Հայոց ՌՄԵ (1756). ամէն[1]։„

## 34. Թովմա Բ. (1761—1783)։

Թովմա Աղթամարցի, զոր Հաւաքարանն «ի ցեղէն Գագիկ Թագաւորի„ կը համարի, յաջորդած է Գրիգորի 1761ին (Ընդ. Օր. 1762ին

[1] Աշխարհագր. Հանդ. Ի, էջ 209։

կը դնէ)․ «Նոյնպէս, ինքնագլուխ եւ առանց հրամանի էջմիածնի կաթողիկոսաց։ Սակայն յետ ժամանակի «թէ ի խղճէ հարցեալ, եթէ ի բազմակոյս պարտուց եւ ի պակասութեանցն բանադատեցեալ, ելեալ գայ ի սուրբ Աթոռս ի յոտս Յակոբ կաթուղիկոսին մերոյ ի հնազանդութիւն եւ ի վերանորոգումն առաջնոց հայրապետացն կանոնաց, եւ յայտնապէս յանձն առնու եւ խոստովանի զգոլն իւրեանց ընդ նզովիւք Ղազարու կաթուղիկոսին։ Եւ յաւուր Կիւրակէի, ի ներկայութեան բոլոր միաբանից սրբոյ Աթոռոյս եւ բազմախումբ ժողովրդեան ի ժամ՝ սրբոյ պատարագին, ի մէջ սրբոյ Էկեղեցւոյն անկեալ ի ծունկս բացաւ գլխով եւ Ըստ ամառնային ողորմ գոչեմ՝ աղերսով խնդրէ զարձակումն։ Զոր եւ ընդունի սիրով Յակոբ կաթուղիկոսն մեր, եւ ընթեռնու զաւետարանն Անառակին, եւ տայ զարձակումն ի մէջ հանդիսին, եւ որպէս թէ վերստին հաստատէ զնա կաթուղիկոս Աղթամարու վիճակին»։ Ապա կը գրէ Յակոբ կաթողիկոս կոնդակ մը, որով կը հաստատէ Թովմայի ընտրութիւնը, Ղազար կաթողիկոսի եւ Նիկողայոս կաթողիկոսի մէջ եղած ուխտագրութիւնը եւ կանոնները. «Եւ հարկադրէ եւս, զի ի նոյն կանոնի եւ յուխտի միալ այնուհետեւ, վերահաստատելով զնոյն ուխտն հանդերձ նզովիւք, մի եւս դիցեն ինքնագլուխ զկաթուղիկոս իւրեանց եւ զեղեալն առանց հրամանի կաթուղիկոսացն էջմիածնի մի ընդունիցին»։ Կոնդակս առած կը մեկնի Թովմա

"պատուով եւ խիլայիւք„ յԱղթամար, "ի վերոյիշեալ թուոյն„ այն է 1761։

Թովմա հաւատարիմ կը մնայ իւր երդման. եւ Սիմէոն Երեւանցի կը վկայէ թէ "Այս Թովմաս կաթուղիկոս որքան նստեալ է յաթոռն իւր թէ ի յաւուրս Յակոբայ կաթուղիկոսին եւ թէ ի մեր ժամանակս, զսուրբ Մեռոնն ի սրբոյ Աթոռոյս եւ ի մէնջ առեալ բաշխէ վիճակին իւրոյ։ Թէպէտ ինքն զնիւթն խնդրէր՝ զի ինքն օրհնիցէ, սակայն մեք զօրհնեալ սուրբ մեռոնն տայաք. որ եւ է այսպէս մինչեւ ցայսօր„ (Ջամբռ, էջ 97)։

Արդեամբք ալ Սիմէոն կաթողիկոս Թովմայի որ խնդրած էր իրմէ Միւռոնի նիւթ, խաւրած է պարզապէս միւռոն, այլ՝ "նիւթ ոչ, ՌՄԺԲ (1763) թուին Հոկտեմբերին (Դիւան, Բ, էջ 23)։ Յաջորդ տարին ալ Մայիսին գրած է "սէր շատ, եւ պատուէր զի մի վարկպարազի զհեստեալսն ի սրբոյ Աթոռոյս ձեռնադրեսցէ եպիսկոպոս„ (Դիւան, Բ, էջ 106)։ Նոյն տարւոյն վերջերը գրած է Թովմաս գանգատանաց թուղթ մը առ Սիմէոն Երեւանցի, որ Դեկտեմբերի սկիզբը հասած է Էջմիածին. որով կը յայտնէ կաթողիկոսին թէ Աբրահամ ոմն սեւագլուխ "բռնացեալ ի կողմանս Մոկաց գաւառին„ զԹիկունս յայլազգիս տալով՝ ոչ հնազանդէր նմա, եւ բռնութեամբ եւ ուժով քրտաց Պարոնին, ժողովէր զտեղւոյն զառաջնորդական եւ զնուիրակական հասս եւ զիրաւունս եւ տայր բէկին, եւ ինքն եւս մսխէր...„ գարձեալ "հաստատեալ էր ընդ Հագարու քրտաց

խանին զխորհուրդ, զի լինիցի ինքն (Աբրահամ) այնմ կողմանն (Մոկաց) ինքնագլուխ կաթողիկոս, եւ ծառայեսցէ նմա զամենայն աւուրս կենաց իւրոց»: Նման ապստամբական խորհուրդ կը խորհին Աղթամարի թեմէն նաեւ Մատնավանքի առաջնորդ Սուքիաս վարդապետ եւ Ս. Թովմայի վանքի միաբան Բարսեղ վարդապետ, որոնք պատճառաբանելով թէ Աղթամարի կաթողիկոսն ամէն տեղ չ'ընդունուիր, կը դիմեն անձամբ Գանձասար Աղուանից Յովհաննէս կաթողիկոսին եւ 1767 (ՌՄԺԶ) Սեպտ. 30 թուակիր թղթով մը կը խնդրեն եպիսկոպոսական ձեռնադրութիւն խոստանալով որ «եթէ մեր Հայոց կաթուղիկոսի թեմի եւ վիճակի մարդ լինիմք ետ եւ յառաջ մէկ խօսկ եւ բան լինի մեք անընթունակ լինիմք Հայոց Աղուանից եւ յԱղթամարու[1]»: Թէ ինչ արդիւնք ունեցաւ իրենց դիմումը, յայտնի չէ: Թովմաս կաթողիկոս թէեւ բանադրած էր զԱբրահամ, բայց նա առ ոչինչ համարած էր բանադրանքը:

Սիմէոն կաթողիկոս ըստ պահանջման հանգամանաց կը փութայ պատասխանել կաթողիկոսին՝ յայտնելով իւր բռնած ընթացքը Աբրահամու եւ անոր համախոհներու հանդէպ (Դիւան, Բ, էջ 116—119):

1764էն յառաջ կամ ետքը Թովմա բանակցած է կրկին Էջմիածնի աթոռոյն հետ կաթողիկոսական յաջորդութեան եւ Էջմիածնի եւ

1 Ց. Թոփճեան՝ Ցուցակ Ձեռագրաց Դաւթեան խաչիկ վարդապետի. Վաղարշապատ 1898. Բ. էջ 21. Թ. 25:

Աղթամարայ կաթողիկոսաց յարաբերութեան մասին, եւ յօրինուած նոր "պայմանագրութիւն" մը ըստ մտաց նախորդ "Պայմանագրութեան"։ Ղուկաս կաթողիկոս իր առ Վանեցիս 1783 Ապրիլին գրած թղթին մէջ կը յիշէ այս պայմանագրութիւնը այսպէս.

"Դուք ամենեքեան յաւապէս գիտէք, որ լուսահոգի Թովմայ կաթուղիկոսն ինքնակամ յօժարութեամբ եւ հաստատուն եւ յաւիտենական ուխտիւ եւ պայմանաւ ձեռագիր է տուեալ հոգելոյս հայրապետին մերոյ տեառն Սիմէոնի սրբազան կաթուղիկոսին եւ նզովիւք փակեալ որպէս զի թէ ինքն կենդանութեան իւրում եւ թէ զկնի մահուանն յաջորդողն ի տեղի իւր, մնասցեն ի ներքոյ հրամանի եւ իշխանութեան սրբոյ Մայր Աթոռոյս Էջմիածնի եւ ի սմա նստող հայրապետացն. եւ զերիս գլխաւորագոյն պայմանս է յանձն առեալ զորս ոչ երկարեմք աստ, որովհետեւ ամենեքեանդ տեղեակ եւ գիտակ իսկ էք. եւ բազումքդ ի ձէնջ զնոյն լայնատարած եւ բազմակնիք ձեռագիրն կնքեալ եւ ձեռագրեալ էք զոր ունիմք աստ. եւ մանաւանդ լուսահոգի Սիմէոն սրբազան կաթուղիկոսն եւս ըստ մտաց ձեռագրին եւ պայմանին առ բոլոր թեմնացիսն սրբոյ Աթոռոյն Ախթամարայ զհաստատուն եւ զվճռափակ օրհնութեան կոնդակ է գրեալ եւ ծանուցեալ, որ առ ինքեանս է. եւ անտի եւս իմանալոց էք վերստին, որոյ զօրինակն ի պատրաստի առ մեզ ունիմք...[1]"։

[1] Դիւան, Գ, էջ 496։

Թովմա վախճանած է ՌՄԼԲ (1783) թուին սկիզբները, ինչպէս կը տեսնուի վանեցւոց առ Ղուկաս կաթողիկոս թղթին պատասխանէն, գրուած ՌՄԼԲ Ապրիլին, ուր “Նորոգ„ վախճանած կ'ըսուի։ Ղուկաս կաթողիկոս կը գրէ. “Զոր ինչ գրեալ էիք... իմացաք. նախապէս զայս ի Քրիստոս փոխիլն սիրելւոյ եղբօր մերոյ հոգելոյս եւ խղճալի Թովմայ կաթուղիկոսին գրեալ եւ ծանուցեալ էիք. զոր լուեալ կարի տրտմեցաք յիրաւի...„ (Դիւան, Դ, էջ 495. հմմտ. եւ 509)։ Տապանագիրն յԱղթամար այսպիսի ընթերցուած ունի.

“Ով սուրբ նշան տէրունական սեղան գաւին զենման, բարեխաւսեա ի մեծ ատեան, վասն Թումայ կաթողիկոսին եւ ծնողաց... թվ. ՌՄԼ (1781)[1]։„

Ըստ Օրացոյց, որ կաթողիկոսութիւնն 1762—1781 կը նշանակէր, 1908ին մահը նշանակած է 1783ին։

Ինքը շինած է Աղթամարի դարպասը, որուն հարաւային դրան ճակատը կայ արձանագրութիւնս[2].

“Ի ՌՄԺԲ թվին Հայոց (1763) եւ շնորհօքն Քրիստոսի շինեցաւ դարպասս ձեռամբ Թումայի կաթողիկոսի Աղթամարայ. որք աղօթէք տուք զողորմիս„։ Նոյն թուին կը շինէ նաեւ եկեղեցւոյն գաւիթը, որուն արեւմտեան դրան ճակատին արձանագրութիւնն է.

---

1 Ազգ. Հանդ. Ի, էջ 211։ Միաւորը մոռցուած։

2 Ազգագր. Հանդ., Ի, էջ 209։

“Շնորհօքն Քրիստոսի շինեցաւ գաւիթս թվին ՌՄԺԲ (1763) արդեամբ Թումա կաթողիկոսին ու ձեռամբ ուստնեցի ուստա Նախապետին ու Ակս Թաթոսին, որք կարդայք տուք զողորմին[1]:”

Այս Թումայի կ'ենթադրեմ թէ է հետեւեալ արձանագրութիւնն ալ.

“Ես Թումայ կաթողիկոս Հայոց կանգնեցի զխաչս բարեխաւս առ Աստուած եղբաւրն իմոյ պարոն Աշոտին եւ որք երկիր պագանէք յիշեցէք ի Քրիստոս զմեղապարտ Վարդանս զկաղմող սորա յիշեցէք ի Քրիստոս[2]:”

Այս կաթողիկոսութեան առաջին տարին շինուած է Վասպուրականի Ս. Վարդան եկեղեցին, որուն արեւմտեան դրան վրայ կայ արձանագրութիւնս.

“Շինեցաւ տաճարս այս յաջողութեամբ Աստուծոյ հայրապետութեան Աղթամարայ Թումայ կաթուղիկոսին Ջուլամերկու պարոն Արդլախան բէկ Ռոստանայ պարոն Բայրամ բէկ. առաջնորդ անարժան Տէր Վարդան թվ. ՌՄԺ[3]” (1761).

## 35. Կարապետ (1783—1787):

Յետ մահուան Թովմայ Բ. կաթողիկոսի Աղթամարցիք յաջորդ կ'ընտրեն Վանի թեմէն Կարապետ վարդապետը, զոր “Հաւաքարանը”

1 Ընդ. թուականն ի տպագրին է “ՌՄԾԲ”.
2 Ազգ. Հանդ., Ի., էջ 212.
3 Ազգագր. Հանդ., Ի., էջ 222.

Գըրիմքէսըմենց կ'անուանէ. եւ որովհետեւ ընտրութեան հաստատութիւնն եւ օծումն պիտի կատարուէր Էջմիածնի կաթողիկոսէն, ըստ կանոնադրութեան եւ միաբանութեան, որ եղած էր ընդ մէջ Թովմայ կաթ. ի Աղթամարայ եւ Սիմէոն կաթ. ի Էջմիածնի, Աղթամարցիք եւ Վանեցիք բազմակնիք ստորագրութեամբ կը գրեն Ղուկաս կաթողիկոսի՝ խնդրելով որ աննպաստ հանգամանքներու պատճառաւ՝ թող տայ օծումն յԱղթամար կատարել, պայմանաւ որ վերջէն նորընտիրն Էջմիածին գայ եւ վերահաստատութիւնն առնու կաթողիկոսէն։ Ղուկաս հաւանութիւնը կը շնորհէ ՌՄԼԲ Ապրիլ Ի (1783) թուակիր թղթերով առ Վանեցիս եւ առ Յակոբ Նախրակ Վանայ (Դիւան, Գ, էջ 494—497 եւ 509)։ Ի մէջ կը բերեմ հոս Ղուկաս կաթողիկոսի առ Վանեցիս կոնդակին կարեւոր խօսքերը.

Ձեր թղթին մէջ կը յայտնէիք, կ'ըսէ Ղուկաս կաթողիկոս՝ «Երկրորդ՝ զորոյ Աթոռոյն Աղթամարայ եւ միաբանից նորին եւ բոլոր թեմնացի իշխանաց եւ ժողովրդոց անտէրունջ[1] եւ անայցելու մնալն եւ ի բոլոր թեմս իւրեանց զպատշաճաւոր կաթուղիկոսացու չգտանելն, եւ յայգր Կարապետ վարդապետի ուրումն հաւանելն, եւ բազմակնիք եւ աղաչական մահզար գրեալն նոցա առ ձեզ. եւ ձեր եւս համակամելն եւ զնոյն Կարապետ վարդապետն յորդորելն առ ի յանձն առնուլ. եւ ի յակամայ կամս յօժա-

1 Գրուած «անտրաունջ»,

րեցուցանելն զնա, ծանուցեալ էիք. եւ մանաւանդ ըստ պահանջման ճշմարտութեան վկայեալ եւ գրեալ եւս էիք թէ՝ Ա՛յս է աղաչանք քոյոց ծառայիցս, զի սոյն կարապետ վարդապետի օծանելն անհնար է թարց համբուրման գալըշապարացդ, եւ առանց ի սուրբ Աթոռդ գալոյ լինիլ, եւ ստանալ զաստիճան քահանայապետութեան, եւ այլն. եւ եթէ սորա յանձն չառման մեծ պատճառն այս էր՝ որ տանջիւր ի միտս, թէ՝ թարց տեսութեան սրբազան վեհին, եւ յորմէ օծումն չընկալմանն՝ անմարթ է նստիլ անդ եւ վարիլ. եւ այս ճշմարիտ այսպէս է. Եւ պաղատիմք առ տէրութիւնդ, զի այժմ գթացեալ հրաման շնորհեսցես աստանօր ի սուրբ Աթոռոջն իւրում օծանել զնա. եւ ապա զկնի պատշաճագիւտ ժամանակի աներկբայապէս ըստ ծիսին գալ ի համբոյր Աջոյդ եւ տէրամբդ օժանդակեալ ընկալնուլ զհամարձակութիւն, եւ վարել զկաթուղիկոսութիւն իւր. եւ զայլ այսպիսիս մեծաւ աղաչանօք գրեալ եւ խնդրեալ էիք առ ի հրաման տալ օծանել յԱթոռոջն իւրեանց։ Արդ ամենայն գրեցելոցն ձերոցն հասու եղեալ զխնդիրս ձեր ծանեաք։ ...(յետ յիշեցնելու ընդ մէջ Թովմա եւ Սիմէոն կաթողիկոսաց եղած պայմանագրութիւնը, կը շարունակէ.) Արդ մեք եւս ահա զգուշացեալ ի յանլուծանելի պայմանագրութեանցն Տեառն Սիմէոնի սրբազան կաթուղիկոսին եւ նորոգ վախճանեալ Թովմայ կաթուղիկոսին եւ հայրական սիրով գթացեալ ի յաղաչանս սիրելեացդ,

ի յանշքութիւն եւ յանայցելութիւն սրբոյ Աթոռոյն այսմիկ, եւ ի յանտերունջ միայն միաբանից եւ վիճակաբնակ օրհնեալ իշխանաց եւ ժողովրդոցն անդր եղելոց, զխնդիրս ձեր կատարելով ըստ գրեցելոյդ եւ ըստ աղաչանաց ձերոց զհրաման ետուք, բարձու իշխանութեամբն սրբոյ Աթոռոյս, օծանել զընտրեալն նոցին եւ ձեր, եւ զանծանօթ սիրելին մեր զկարապետ շինարար եւ բարեջան վարդապետն կաթուղիկոս ի յԱթոռոջն իւրեանց առ ի հովուել զվիճակսն նորին եւ զկնի օծմանն ըստ գրեցելոյ պայմանին ձերոյ ի պատշաճաւոր ժամանակի ուղեւորել զնա ի սուրբ Աթոռս եւ առ մեզ առ ի վերահաստատել զկաթուղիկոսական իշխանութիւնն եւ զհոգեւոր եւ զօրհնաւոր փեսայութիւն նորին, եւ հաստատուն կոնդակաւ եւ խիլայիւ ուղեւորել ի տեղին իւր։ Բայց այսու պայմանաւ եւ վճռաւ որ զգուշասցի առ ի կալ հաստատուն ի ներքոյ իշխանութեան եւ հնազանդութեան սրբոյ Աթոռոյս եւ Հայրապետացն սորին մինչեւ ի սպառիլ շնչոյն։ Եւ ի վերայ ձեռագրեալ երից պայմանացն լուսահոգի Թոմայ կաթուղիկոսին անշեղ եւ անլուծանելի միալ. որով զօրհնութիւնս եւ զկրկին շնորհս ժառանգեսցէ եւ ոչ զներհակն[1]։„

Ըստ այսմ կարապետի ընտրութիւնն եւ օծումն կատարուած է ՌՄԼԲ թուին. Նոյն թուականն կը կրէ նաեւ կարապետի կնիքը (Դիւան, Ե, էջ 234)։ Կ՚երեւայ թէ կամ կա-

1 Դիւան, Դ, էջ 495–497. Հմմտ. եւ Դ, էջ 509։

րապետ իւր խոստման հաւատարիմ չգտնուելով եւ Էջմիածին չերթալով՝ վերահաստատութիւն չէ գտած եւ այսպէս հակառակութեանց բաղխած է եւ կամ լաւ եւս Աղթամարցիք չհաւանելով զինքը՝ մերժած են, ինչպէս Դաւիթ կաթողիկոսի տողերէն ալ յայտնի է։ Ինչպէս ալ եղած ըլլայ պատճառը, կը տեսնենք որ նա 1788ին իր դէմ ունեցած է Մարկոս հակառակաթող մը, որուն ձեռք տուած է նաեւ Ղուկաս կաթողիկոս. եւ այսպէս Կարապետ մերժուած աթոռէն։

Կարապետ 1802 Մայիս 27ին ներկայ էր Իւչքիլիսէի ժողովին, ուր օծեց նաեւ զԴանիէլ կաթողիկոս։ Ժողովոյն արձանագրին կը ստորագրէ "Կարապետ կաթուղիկոս Աղթամարայ, վերատեսուչ Վասպուրականի[1]"։

Կարապետ, ինչպէս կը տեսնուի Դաւիթ կաթողիկոսի ակնարկութենէն յամի 1802 Յունիս, այս ժամանակ "մերժեալ եւ արտաքս ընկեցեալ" էր Աթոռէն. Դաւիթ՝ Դանիէլ կաթողիկոսի օծումն ակնարկելով կը գրէ. "Այսոքիւկ չարութեամբք ոչ շատացեալ՝ յԻւչքիլիսէ աննշան ընկալաւ զօծումն ի դատապարտութիւն անձին իւրոյ ի մերժեալ եւ յարտաքս ընկեցեալ իբր չկաթուղիկոսէն Ախթամարայ. որով եւ կամի զայս քրիստոսահիմն եւ զլուսաւորչաշէն սուրբ Աթոռս մեծ քակել, եւ զիւր հայրենա-

---

[1] Դիւան, Ե, էջ 234. Համմ. եւ Դիւան, Ա, էջ 149—150։

կան վանքն Քիւրտիստանու կեղծեալ պատճառաւ նորոգել եւ զարդարել[1]։

Լեւոնեան կը պատմէ թէ "Կարապետ կաթողիկոս 1804ին ճամբորդութեան մը ատեն յանկարծամահ կը վախճանի Բաղէնց Էջմիածին վանքի (մերձ ի Լիմ) մօտերն եւ Աղթամար տարուելով կը թաղուի հոն իր ձեռքով պատրաստել տուած դամբարանին մէջ, որ կայ մինչեւ այսօր„ (Բիւզանդիոն, Թ. 1200)։

Տապանագիրն[2] է 1799 թուականէն՝

"Կարապետ կաթողիկոս. ՌՄԽԸ։„

## 36. Մարկոս (1788—1791)։

Կարապետէն տժգոհ մնացած կը թուին Աղթամարցիք, այնպէս որ 1788ին անոր հակառակաթոռ մը կ'ընէ Մարկոս "Շատախեցի„ ըստ Ընդ. Օր., եւ "ինք զինք կաթողիկոս կը հռչակէ 1788ին[3]„։ Ղուկաս կաթողիկոսի համաձայն "նա մեր օրհնածին (Սիմէոնի) որդի էր եւ ի սուրբ Աթոռոյս ընկալեալ զձեռնադրութիւն եպիսկոպոսութեան„ (Դիւան, Գ., էջ 552—553). այս պատճառաւ ալ Ղուկաս անոր իր հաւանութիւնն կու տայ, եւ կը պաշտպանէ ընդդէմ Կարապետի. "այնքան փոյթ յանձին կալաք„ (անդ)։

1 Դիւան, Ջ, էջ 483. Հմմտ. եւ 493 եւ 527։

2 Սարգիսեան՝ Տեղագիր, էջ 278։ Ազգագր. Հանդ., Ի., էջ 211։

3 "Հաւաքարան„ին անծանօթ է Մարկոս։

Մարկոսի կաթողիկոսութիւնը կարճատեւ կ'ըլլայ. եւ կը վախճանի ՌՄԽ (1791) թուին, ինչպէս կ'իմանանք այս թուին “ի Նոյեմբերի մուտն” գրուած Ղուկաս կաթողիկոսի առ Ախիջան աղա ի Վան թղթէն, ուր կ'ըսուի. “իսկ փուսուլային զեկուցեալ էիր զվախճանմանէ հոգեւոր որդւոյն մերոյ խղճալի Մարկոս կաթուղիկոսին, որ մեզ տրտմութիւն եղեւ” (Դիւան, Դ., էջ 552)։ Ընդ. Օր. ալ մահն 1791ին կը նշանակէ, թէեւ տապանաքարն յԱղթամար 1788 ունի, այսպիսի արձանագրութեամբ.

“Ի յայս գուբս անձուկ անփոփի մարմին անուն անանփոփ Մարկոսի վեհին, սիրելի ազգին ի սէր հայ ազգին եղեալ անձնուէր սիրով մտադիր. 1788[1]։”

Մարկոսի յաջորդութեան համար երկար խնդիր եղած է. Աղթամարցիք դիմած են կրկին Վանայ աղաներուն, յանուանէ Ախիջան աղային խորհուրդ տալու իրենց թէկնածուի մասին. բայց Ախիջան հրաժարած է. այս մասին տեղեկութիւն ունինք Ղուկաս կաթողիկոսի մէկ թղթէն առ Ախիջան աղա ի Վան. զոր ի մէջ կը բերինք հոս (Դիւան, Դ., էջ 552—553)։

“Ծանուցեալ էիր ապա զԱղթամարու թեմականաց առ քեզ դիմելն առ ի խորհրդակցութիւն ընտրութեան կաթողիկոսի, եւ զքո հրաժարիլն, իբր վասն ոչ գոլոյ արժանաւորի, եւ ի դերեւս ելանելոյն առաջնոյ աշխատակրութեանցդ, եւ եւս վասն Նոցին ամեհաբար ընդ

1 Ազգագր. Հանդ. Ի., էջ 211։

ախորժակս իւրեանց գնալոյն։ Եւ իբրու թողեալ էիր ի կամս մեր ապաստան։ Որդ սիրելիդ իմ, մեզ հարկ է ոչ խոյս տալ ի հոգացողութենէ եւ յաշխատասիրութենէ առ ազգ մեր, սակայն այն թեւմացիքն որպէս թէ զինքեանս որոշեալ համարին ի մէնջ։ Եւ առ այդ բան՝ որպէս եւ խոհական սիրելիդ լաւ գիտես, մեզ ոչ վայել է հարկադիր լինիլ Նոցա թէ պարտիք առնել, ընդդէմ Նախնեացն մերոց. եւ ոչ բնաւ մատամբ ցուցանել զոք աստի կամ յայլուստ թէ՝ զսա կամ զնա արարէք։ Այլ յետ ընտրելոյն իւրեանց զմի ումն եւ խնդրելոյն ի մէնջ հրաման, ըստ ժամանակիս որպիսութեան, Ներել հազիւ պատկանի մեզ։ Սակս Մարկոս կաթողիկոսին եւս որ այնքան փոյթ յանձին կալաք, պատճառն այն էր, որ Նա մեր օրհնածին որդի էր եւ ի սուրբ Աթոռոյս ընկալեալ զձեռնադրութիւն եպիսկոպոսութեան. բայց վասն այլոց՝ զորս ի միջոյ իւրեանց ընտրիլ կամիցին, մեզ չէ փոյթ։ Զի եթէ մեզ եւ քեզ անսացող լինիցին ողորմելիք այնորիկ, մեք ունիմք տալ Նոցա զխորհուրդս պատշաճագոյն եւ օգտակար. այլ գիտեմք զի ո՛չ անսան մեզ, իսկ որովհետեւ յազգէ եւ եկեղեցւոյ մերմէ են, եւ ոչ պարտին մնալ առանց հոգեւոր այցելուի, եւ այն հռչակաւոր սուրբ վանքն եւս ոչ է մնալոց թարց հոգաբարձուի, արժան է եւ մեզ խորհիլ զնոյն։ Ապա մինչ գան առ սիրելիդ վասն խորհրդակցութեան, ընդէ՞ր խոյս տաս, զի ահա յայսմ ժամանակի դու օրհնեալդ ես յայդր երեւելի իշ-

խան եւ խորհրդական անձն, եթէ առ քեզ չգայցեն, այլ եւս առ ի երթիցեն: Ուրեմն պարտիս տեղիք ցուցանել եկողացն. եւ ըստ խոհեմութեանդ զըարին առաջնորդել. եթէ ընդունակք լինիցին օգտաւոր խորհրդոյ եւ բանի, բարեգոյն է. եւ թէ ոչ, որպէս եւ իցէ զմինն ընտրելոց են ի պետութիւն իւրեանց: Այլ ազնուամիտ սիրելիդ որքան կարես աստուածապարգեւ իմաստութեամբդ ջանասցես ըստ բարեկողմն հետեւեցուցանել զնոսա, եւ զորպիսաբար կայացումն իւրին գրեսցես մեզ: ...Գրեցաւ ի թուականիս մերում ՌՄԽ (1791), եւ ի նոյեմբերի մուտն, ի սուրբ Աթոռս Էջմիածին:„

## 37. Թէոդորոս:

Հաւաքարանը Կարապետ կաթողիկոսին յաջորդները՝ առանց յիշելու Մարկոսը՝ կը թուէ՝ "Յովհաննէս Սպարկերտցի, Միքայէլ Վանեցի, յոյժ երաժիշտ. Կարապետ Շատախեցի, յոյժ ողորմած„ եւ այլն: Թէ ո՞վ է Յովհաննէս Սպարկերտցի եւ ե՞րբ եւ որո՞ւն յաջորդած է, ինձի անծանօթ է: Փիրղալէմեանի (Դիւան, Գ., էջ 772) համաձայն Մարկոսի յաջորդած է Թէոդորոս, որ կը յիշուի 1794ին. իսկ ըստ Լեւոնեանի կը յիշուի 1792ին. Ընդ. Օր. ալ կը նշանակէ թէ կը յիշուի այս թուերուն (1792—1794): Արիստ. Տեւկանցի (Հայերգ, էջ ԺԱ) համաձայն "Թէոդորոս կաթ. Աղթամարցի„ ունի նաեւ բանաստեղծական արտադրութիւններ. որոնք ինձի անծանօթ են:

## 38. Միքայէլ:

Փիրղալէմեան (Դիւան, անդ) Թէոդորոսի յաջորդ կը կարգէ Միքայէլ, որ ըլլալու է Հաւաքարանի "Մ. Վանեցի, յոյժ երաժիշտը": Ընդ. Օր. համաձայն սա կը յիշուի 1796ին. իսկ ըստ Փիրղալէմեանի վախճանած է 1810ին:

## 39. Կարապետ:

Կարապետ, ըստ Հաւաքարանի՝ Շատախեցի "յոյժ ողորմած", եւ ըստ Փիրղալէմեանի՝ Մոկացի, ընտրուած է յաջորդ Միքայէլի: Ընդ. Օր. ընտրութեան տարին չի գիտեր. բայց կ'ըսէ թէ յետ ժամանակի քաշուած է 1803ին. կրկին ստանձնած 1814ին. եւ վախճանած 1816ին: Փիրղալէմեան գիտէ միայն որ վախճանած է 1813 (Դիւան, Դ., էջ 772):

## 40. Խաչատուր:

Հաւաքարանը Կարապետի յաջորդ գիտէ "Խաչատուր Վանեցի, առաքինի եւ սուրբ": Ընդ. Օր. կ'անուանէ "Խ. Հրաշագործ" եւ ընտրութիւնն 1803 եւ մահը 1814 կը դնէ:

Մահուան թուականը ճիշդ կը թուի, վասն զի Տապանագիրն կու տայ ընթերցուածս.

"Խաչս բարեխաւս առ Աստուած վասն փրկութեան հոգւոյն Խաչատուր կաթողիկոսին. թվ. ՌՄԿԳին[1]:"

---

1 Սարգիսեան՝ Տեղագր., էջ 278. Ազգ. Հանդ., Ի., էջ 211:

## 41. Կարապետ:

Փիրղալէմեան՝ Խաչատրոյ յաջորդ կը կարգէ “Կարապետ Գ. որ վախճանած է 1823ին„։ Ընդ. Օր. գիրքը կը նոյնացնէ Կարապետ Շատախեցւոյ հետ։ Հաւաքարանն չի յիշեր զինքը։

## 42. Յարութիւն Արտօնեցի:

“Հաւաքարանը„ Խաչատրոյ յաջորդ կը դնէ “Յարութիւն Արտօնեցի„, զոր Ընդ. Օր. Տարօնեցի կը կոչէ եւ Փիրղալէմեան Մշեցի։ Մականուամբ յորջորջուած է “Կաքաւ„ (Լեւոնեան եւ Ընդ. Օր.) կամ “Կաքաւու ձագ„ (Բ.Զ.Մ, 1898, էջ 324)։ Ընդ. Օր. ընտրութիւնը կը համարի 1816ին։ “Հաւաքարանի„ համաձայն “սա նահատակեցաւ ի խիղնա սուրբ խաչն թուին ՌՄՀԲ յաւուր աւագ Ուրբաթու„, այն է 20 Ապրիլ 1823[1]։

## 43. Յովհաննէս Շատախեցի:

Յովհաննէս, որ Շատախու Ծուղ անուն գիւղէն էր (“ի գեղջէն Ծղայ„, Հաւաքարան), յաջորդեց Յարութիւնի՝ ըստ Փիրղալէմեանի 1822ին։ Լեւոնեան Յարութիւնի մահուընէն ետքը մինչեւ Յովհաննու ընտրութիւնը երկու տարուան (1823—1825) դատարկ կը դնէ

---

1 “Զի Ապարանից վանից վանահայրն երկու կին առեալ էր. եւ հայրապետն անդոսնեաց զնա եւ նորա մատնեալ զնա անօրինաց՝ ետ սպանանել. յետ կատարման ճառագայթեցաւ լոյսն ի վերայ մարմնոյ նորին„ (անդ)։

եւ օծումն կը նշանակէ 1825ին։ Ճշգագոյն կ՚ըլլայ եթէ ընտրութեան տարին համարինք 1823, Ապրիլ 20էն ետքը, վասն զի ստոյգ է թէ 1824ին աթոռին վրայ կը գտնուէր Յովհաննէս մը, որուն հրամանաւ օրինակած է Ղազար իր “Հաւաքարանը„ (տես վերը, էջ 3)։ Կայ նաեւ Աղթամարայ գերեզմանոցը տապանաքար մը, որ ըլլալու է Յովհ. Շատախեցւոյ, անոր կենդանութեանը պատրաստուած (հմմտ. վարը, էջ 185), բայց չգործածուած։ Արձանագրութիւնն է.

“Խաչս բարեխօս է առ Աստուած վասն փրկութեան Յովհաննէս կաթողիկոսին. թվ. ՌՄՀԴ„ (1825)[1]։

Յովհաննու ձեռնադրիչն եղած է Աբրահամ եպիսկոպոս մը, ինչպէս Նարեկավանից եկեղեցւոյն գմբեթի հարաւակողմը գտնուած արձանագրութիւնը կ՚ըսէ. “Ես տէր Աբրահամ, որ ձեռնադրեցի Յովհաննէս կաթողիկոս, թվ. ՌՄՂ[2] (1841). (Բիւզանդիոն 1903, թ. 2031)։

1832ին ի ներկայութեան բազմաթիւ ուխտաւորներու միւռոն կ՚եփէ, ըստ Լեւոնեանի։

Աղթամարայ կաթողիկոսութիւնը այլ եւս կը գտնուէր Կ. Պոլսոյ Պատրիարքարանի հսկողութեան տակ։ Բարձրագոյն Դրան հետ ամէն

---

1 Ազգագր. Հանդ., Ի, էջ 211։ Չեմ չունիմ ենթադրելու թէ այս միջոցին նստած ըլլայ աթոռին վրայ կարճ ժամանակով ուրիշ համանուն կաթողիկոս մը (այսպէս իմանալու է Հանդ. Ամս. 1920, էջ 120—121)։ Յովհ. Սպարկերտցի առ այժմ տեղ չունի։

յարաբերութիւնք կը կատարուէին Պատրիարքի ձեռօք. որ ի կարեւոր դէպս կու տար Նաեւ բարեկարգական հրահանգներ եւ ազդարարութիւններ:

Յովհաննէս կաթողիկոսին 1839 Օգոստոս 3ին կը գրէր Կ. Պոլսոյ Յակոբոս պատրիարք հետեւեալ թուղթը, որուն երկրորդ մասը ուշադրութեան արժանի է.

"Բարձրաստիճան կաթողիկոսական անուամբ պատուեալ տեառն Յոհաննու սրբազան կաթողիկոսի Ախթամարայ խնդալ միշտ ի Տէր.

Առ Նախորդն մեր Ստեփաննոս սրբազան արքեպիսկոպոսն ուղղեալ գրութիւնդ ի մարտի 25՝ եհաս ի ձեռս մեր ի 15 Յուլիսի, որով Նախ իմացաք զքաջառողջ որպիսութենէ Սրբութեանդ, եւ հետեւաբար զանօրէն արարմանց մոկացի Գօրան անուն չարին, որ բռնութեամբ քուրթ պէյի իշխողի տեղւոյն առեալ է զսուրբ Գէորգ վանքն ի ձեռաց մահտեսի Յոհաննիսի՝ սպանանել տալով զհայրն Նորա եւն:

Վասն այսր երկար խորհեալ ընդ քրիստոսազօր ազգապետ Ամիրայից՝ այսպէս պատշաճ եւ վայելուչ դատեցաք. զի յանուն Վանայ առաջնորդի ֆէրման մի շինեալ, եւ յիշել վէքիլ անուամբ զանուն մահտեսի Յոհաննիսի ի Նմա, ըստ որում Վանայ քաղաքի իշխող բդեշխն կարէ ի կարգի դնել զհրովարտակն, եւ յայն անզգամ Գօրանի ձեռացն հանել զայն սուրբ ուխտն...

Նաեւ խնդրեմք յետ այսորիկ ոչ յաւե-

կացուցանել զթիւ եպիսկոպոսացդ վիճակիդ, որքան առ այժմ ունիս բաւական է. այսուհետեւ յամենայն գործութենէ ջանացեալ ոչ եպիսկոպոս ձեռնադրել եւ ոչ բնաւ թոյլ թողուլ եպիսկոպոսացդ ելանել արտաքոյ քան զԱխտամարայ վիճակդ եւ յամենայն տեղիս շրջեալ՝ ըստ կամաց իւրեանց քահանայ ձեռնադրել եւն. այլ զգուշութեամբ միայն ըստ բաւականի վիճակիդ քահանայ ձեռնադրեսցեն յիւրեանց տեղիսն մնալով. քանի՛ անպատեհ յոյժ մեծ անկարգութիւնն է արտաքոյ վիճակի իւրեանց ձեռնադրել զոք, չէ կարեւոր բովանդակել յայս գիր. բայց զայսքանս ասեմք, թէ ձեր եւ եպիսկոպոսաց ձերոց այսպիսի անկարգ ձեռնադրութեամբն ծաղու ծանակ եղեալ եմք առաջի այլոց ազգաց. վասն որոյ հարկիւ եւ հարկի պատուիրեմք, յետ այսորիկ բոլորովին ձեռս ի ձեզ անփոփել յայսպիսի յանպատեհ գործոց, ոչ արտաքոյ սահմանի ձեր եղելոց կարգ տալ, եւ ոչ յեպիսկոպոսացդ զոք հանել յարտաքս ինչ եւ իցէ գործով, եւ ոչ ի վիճակս ձեր անգամ անարժան եւ աւելորդ եպիսկոպոս եւ քահանայ ձեռնադրել զոր եւն եւն. Ապա կատարելով ըստ գրութեանս ողջ լերուք ամենայն բարելաւութեամբ ի խնամս Տեառն:

(ի Կ.Պոլիս) 1839 Օգոստոս 3:

Թ. 703, էջ 42 Ձեռ. Մխիթ. Մատենադարանի ի Վիեննա: Հմմտ. եւ անդ, էջ 68 երկու Թուղթ առ Կուրաւցի Պետրոս արքեպիսկոպոս Վանայ, Սեպտ. 27 Թուակիր, Նոյն

Ս. Գէորգ վանքի խնդրոյ առթիւ: Եւ էջ 142 երկրորդ թուղթ մը առ Յովհ. կաթող. 9 փետր. 1840 թուականէ՝ ի պատասխանի անոր 20 Յունիս թղթին, Պետրոս աղբեղայր՝ Յարութիւն եպիսկոպոսէն գողցած գրքերու մասին:

Յովհաննէս կը վախճանի 1843ին յԱղթամար, ըստ Յովսէփ վարդապետի՝ “դեղ մահու տուեալ նմա միաբան եպիսկոպոսք եւ վարդապետք տեղւոյն[1]„:

Տապանաքարն կը կրէ արձանագիրս.

“Խաչս բարեխօս է առ Աստուած վասն փրկութեան Յոհաննէս կաթողիկոսին ՌՄՂԲ[2]:„

## 44. Խաչատուր Մոկացի:

Յովհաննէս Շատախեցւոյ մահուընէն ետքը երկար խնդրոյ նիւթ կ'ըլլայ յաջորդի ընտրութիւնը: Կ. Պոլսոյ Պատրիարքն Աստուածատուր (1841—1844) ազգին երեւելեաց հետ համախորհուրդ ամէն օրինաւոր միջոց ի գործ կը դնէ, որ Աղթամար նոր կաթողիկոսի ընտրութիւն չկատարուի. ի յաջողութիւն այս ձեռնարկին կը դիմէ մինչեւ անգամ Վասպուրականի կողմանց բռնաբար իշխող Խան-Մահմուտին, որպէս զի չօգնէ Աղթամարցւոց: Խան-Մահմուտ թէեւ ի վերին երեսս կը հաւանի Պատրիարքին, բայց երբ Աղթամարայ միաբաններէն Խաչատուր

[1] Յովսէփ Վրդ.՝ Տեղեկագիր, էջ 7:

[2] Սարգիսեան՝ Տեղագիր, էջ 278. Ազգ. Հանդ., Ի., էջ 211:

եպիսկոպոս իւր միաբանակցաց խորհրդով կը յանդգնի կաթողիկոսանալ, արգելք չի գտներ· Սակայն երկար չի վայելեր Խաչատուր իւր իշխանութիւնը։ Հազիւ թէ լուրն Կ. Պոլիս կը հասնի՝ Աստուածատուր պատրիարք որոշմամբ խորհրդական անձանց՝ արքունի հրովարտակաւ աքսորել կու տայ զԽաչատուր Նիկոպոլիս (Շապին-Գարա-Հիսար), ուր երեք տարի մնալէ ետքը կայսերական ընդհանուր Ներողութեան շնորհման մը պատճառաւ կը վերադառնայ Աղթամար· բայց չի կրնար՝ իւր պաշտօնը ի գործ դնել, այնպէս որ Վանայ Առաջնորդն եւ ժողովականք 1848 նոյեմբերին սկիզբը ծանուցանելով որ Աղթամարայ վիճակայինք — 16 տարի է ի վեր հոն միւռոն օրհնուած չըլլալուն — սուրբ Միւռոն չունին՝ Հոգեւոր ժողովէն կը խնդրեն, որ հարկ եղածը տնօրինէ[1]։ Այս նկատմամբ 1848, նոյեմբեր 10ին կ՚որոշէ Հոգեւոր ժողովը “Առ սրբազնակատար կաթուղիկոս Ս. Էջմիածնի գիր մի գրվի որ Վասպուրականի Մոկաց եւ Ռշտունեաց գաւառներու սուրբ Եկեղեցեաց սրբալոյս Միւռոնի կարօտութիւնը լեցվելու համար քանի անգամ որ Վանայ Առաջնորդի կողմանէ խնդիր ըլլայ նէ, սրբալոյս Միւռոն պարգեւէ. վասն զի Մոկս ու Ռշտունիք որ Աղթամարայ դէմ են, առաջուց նոյն տեղի գտնուող կաթողիկոսական անուն կրողէն կ՚ընդունէին Միւռոնը· բայց բաւական ժամանակէ

1 Իզմիրլեան, էջ 312–313։

ի վեր ապսպրված ըլլալով իրեն (կաթողիկոսին) որ կաթողիկոսական գործադրութենէ դադարի, ուստի եւ նոյն տեղերը նոյն շնորհաց կարօտ մնացած են„:

Յովհաննէս կաթողիկոսին 1839ին տրուած հրահանգը եպիսկոպոս եւ քահանայ ձեռնադրելու մասին՝ Խաչատրոյ համար աւելի խստացուած է՝ պարտաւորելով որ ձեռնադրութեան համար ամէն անգամ Պատրիարքարանի հաւանութիւնն ընդունի[1]:

Քանի Խան-Մահմուտ՝ Քրդաց անուանի բռնաւորը կ՚իշխէր Վասպուրականի՝ Խաչատուր ապահով էր Աթոռին վրայ ունենալով զանի իրեն “պաշտպան եւ հովանի„. բայց “այն ինչ ըմբռնեցաւ Խան-Մահմուտն, Խաչատուրն եւս բարձաւ ի կենաց՝ առեալ հարուած փայտատի յոտս իւր ի ձեռաց Յովհաննէս վարդապետին, որ միաբան էր Աղթամարայ եւ զամիսս երիս բեկեալ ոտիւք ծառայեալ ի մահիճս ցաւոց, մեռաւ ի նմին կղզւոջն[2]„:

Մահն պատահած է 1851 Յունիս 12ին[3], ինչպէս տապանագրոյն մէջ ալ կը նշանակուի.

“Խաչս բարեխօս առ Միածին
Սակս փրկութեան հօտապետին
Վեհ Խաչատրոյ սրբազանին,

---

1 Հմմտ. անդ, էջ 315: Հոգեւոր ժողովոյն արձանագրութիւնք 1850, Նոյ. 16էն:

2 Յովսէփ Վրդ. Տեղեկագիր, էջ 7:

3 Հայաստան 1851, Թ. 77:

Որ փոխեցաւ առ Տէր յերկին,
Ի մի Հազար եւ Հարիւրին
Հայոց մեծաց թուականին.
Յունիս ամսոյ երկտասնեկին[1]:»

## 45. Գաբրիէլ Շիրոյեան:

Խաչատրոյ մահուան վրայ[2] Վանայ առաջնորդ Գաբրիէլ եպիսկոպոս եկեղեցականաց եւ իշխանաց խորհրդակցութեամբ, Աղթամարայ կաթողիկոսութեան առ ժամանակեայ տեղակալ կը դնէ վանքի միաբաններէն նշանաւոր Խաչատուր վարդապետը[3]: Յուլիս 16ին ալ Աղթամարցիք եպիսկոպոսներով, վարդապետներով, քահանաներով եւ ժողովրդովք Թախանձանաց

1 Ազգագր. Հանդ., Ի, էջ 211:

2 Խաչատուր կաթողիկոսի մահուընէն ետքը տեղի ունեցած խնդրոց մասին՝ 1851էն մինչեւ 1876 երկարապատում աւանդած է Մ. եպ. Իզմիրլեան՝ Հայրապետութիւն Հայաստանեայց առաքելական Ս. Եկեղեցւոյ եւ Աղթամար ու Սիս. Կ. Պոլիս 1882, էջ 310–424 եւ 1006–1068. Ասկէ օգտուելով երկար գրած է խնդրոյս վրայ նաեւ Հ. Ս. Էփրիկեան՝ ԲԶՄ. 1898, էջ 324–326 եւ 413–418: Կարեւոր տեղեկութիւններ կան նաեւ Հետեւեալ տետրակին մէջ, որ անծանօթ մնացած է Իզմիրլեանի եւ Էփրիկեանի. «Տեղագիր աղէտալի անցից եւ անկարգութեանց տանն Աղթամարայ. գրեալ Յովսէփ վարդապետի Վանահօր Նարեկայ վանից: Կ. Պոլիս 1873: Գրուած է «1866 Ապրիլ. Վան» եւ խաւրուած առ Գէորգ կաթողիկոս Յէջմիածին:» Տես եւ Յովհ. Վ. Բազունւոյ գրութիւնը, զոր պիտի յիշատակենք վարը: Հիմնուած այս գրուածներու վրայ՝ պիտի ջանանք համառօտիւ տալ Աղթամարայ վերջին երկու կաթողիկոսներու պատկերը:

3 «Արաքս» 1897, էջ 53:

թուղթ մը կը գրեն բազմակնիք ստորագրութեամբ առ Պատրիարքն եւ Հոգեւոր ժողովը ի Կ. Պոլիս, խնդրելով որ իրենց կաթողիկոսութիւնը չբարձուի, այլ ըստ հինաւուրց սովորութեան՝ Հոգեւոր եւ Գերագոյն ժողովոց գիտութեամբ՝ ընտրուի արժանաւոր կաթողիկոս մը։ Կը յայտնեն միանգամայն թէ անհրաժեշտ է Աղթամարայ համար կաթողիկոս մը գտնելը երկրին եւ ժողովրդեան բարւոյն եւ խաղաղութեան համար. հակառակ դէպքին կրնան մեծամեծ շփոթութիւններ (կրօնափոխութիւն) ծագիլ, որոնց հետեւութիւնք վնասաբեր կ՚ըլլան ազգին։ Աղթամարցւոց այս նամակը մեծ ազդեցութիւն կ՚ընէ Հոգեւոր ժողովոյն վրայ, որ հակառակ իւր 1843 տարւոյ որոշման, նոյն 1851ի Յուլիս 28ին գումարման մէջ կարեւոր կը տեսնէ արժանաւոր եւ ազգասէր եպիսկոպոս մը Աղթամարայ կաթողիկոս ընտրել։ Գերագոյն ժողովն ալ կ՚ընդունի այս որոշումը։ Աղթամարցիք ըստ յանձնարարութեան Գերագոյն ժողովոյ՝ կը ներկայացնեն կաթողիկոսական ընտրելեաց ցանկ մը, ուր եօթը հոգի նշանակուած էր, յորս առաջին տեղին կը բռնէր Վանայ առաջնորդն Գաբրիէլ եպիսկոպոս. եւ առանձին կերպով կը խնդրուի որ Գաբրիէլ կաթողիկոսանայ։

Ազգային ժողովոյն 1851 Թուի Օգոստոս 7ի գումարման մէջ եղած որոշման համեմատ պաշտօնական գրով կը յայտարարուի Աղթամարցւոց թէ Վանայ առաջնորդն Էջմիածին ձեռնադրուած ըլլալով՝ Աղթամարայ կաթողի-

կոսութեան իրաւունք չունի. Նոյնը յատուկ թղթով մը կ՚իմացուի նաեւ Գաբրիէլ եպիսկոպոսին: Բայց Աղթամարցիք այդ պաշտօնական յայտարարութեան հակառակ՝ ժողով գումարելով ի Վան, իրենց կաթողիկոս կ՚ընտրեն զԳաբրիէլ եւ ապա կը խնդրեն ժողովէն, որ ըստ ըղձից եւ կամաց ժողովրդեան՝ տնօրինէ խնդիրը: Ազգային ժողովն ալ նոյն տարւոյ Դեկտեմբեր 14ի նիստին մէջ՝ ընդդէմ իւր առաջին որոշման, արժան կը դատէ որ Աղթամարայ կաթողիկոսութիւնն իբրեւ առաջնորդութիւն կցորդելով Վանայ առաջնորդ Գաբրիէլ եպիսկոպոսի անուանը՝ խնդրագիր տրուի եւ կայսերական հրովարտակ առնուի իբրեւ առաջնորդ Աղթամարայ, եւ այս մասին ծանուցուի նաեւ Էջմիածին:

Յակոբ պատրիարք ջանալով կատարել ժողովոյն որոշումն՝ խնդրագիր կու տայ բարձրագոյն Դուռը՝ Գաբրիէլ եպիսկոպոսի պաշտօնին քաղաքական հաստատութեան համար, եւ 1852, Յունուար 31ին այս նկատմամբ կը գրէ Էջմիածին Ներսէս Ե. Աշտարակեցւոյ:

Բայց դեռ կաթողիկոսէն պատրիարքական թղթոյս պատասխանն չեկած՝ Կ. Պոլսոյ հոգեւոր եւ Գերագոյն ժողովները միաբան 1852, Յունիս 5ին Աղթամարայ կաթողիկոսի, միաբան եպիսկոպոսաց, վարդապետաց, քահանայից եւ ժողովրդոց համար զանազան կանոններ կ՚որոշեն. մի եւ նոյն ժամանակ կը գրուի առ Գաբրիէլ, որ Աղթամարայ վիճակին կաթողիկոսական

օծումն ընդունի ի մխիթարութիւն ժողովրդեան եւ յանդորրութիւն ազգին։

Կ. Պոլսոյ Պատրիարքը վերոյիշեալ կանոնները եւ Գաբրիէլ եպիսկոպոսի կաթողիկոսական օծման հրամանը ղրկելէն վերջ՝ ի պատասխանի իր գրոյն՝ կ'ընդունի Ներսէս Ե. կաթողիկոսի կոնդակը, գրուած Յունիս 16ին ի Տփղիս։ Այդ կոնդակը խիստ յանդիմանական ազդարարութիւն էր Կ. Պոլսոյ ազգային գործիչներուն, որով վեր ի վար կը յեղաշրջուէին Հոգեւոր եւ Գերագոյն ժողովոց որոշումները։

Գաբրիէլ եպիսկոպոս Էջմիածնի հաւանութիւնն չընդունելով՝ 1853ին հրաժարականը կը ներկայացնէ Պատրիարքարան ի ձեռն Կրճիկեան Յակոբ աղայի. բայց չընդունուելով (Բիւզանդիոն, թ. 1200) առանց կաթողիկոսական օծման, պարզ ընտրեալ կաթողիկոս կամ արքեպիսկոպոս անուամբ մինչեւ 1856 Սեպտեմբեր փոխանակաբար Աղթամար (1854) եւ Վան (1854—1856) տարտամ դրից մէջ մնալէ ետքը, ճարահատեալ կը սկսի վերստին միայն Վանայ առաջնորդական պաշտօնը յառաջտանիլ, ուր եւ քիչ վերջը յանկարծամահ կը վախճանի (Բիւզ. անդ)։

Հոգեւոր եւ Գերագոյն ժողովները Գաբրիէլի փոխարէն Աղթամարայ եւ անոր վիճակաց առաջնորդ կը կարգեն Եդեսեան Յակոբ եպիսկոպոսը, որուն պաշտօնավարութիւնն շատ կարճ տեւելով՝ Աղթամար կը մնայ ոչ միայն առանց կաթողիկոսի, այլ եւ անառաջնորդ։ Այն

ժամանակ սուրբ Խաչի միաբաններու խորհրդով վանքի կառավարութիւնը դարձեալ կ'անցնի Խաչատուր վարդապետի ձեռքը։ Այնուհետեւ մինչեւ Ներսէս Աշտարակեցւոյ մահը ոչ Աղթամարցիք խնդիր յարուցած են իրենց կաթողիկոսութեան համար եւ ոչ ալ Կ. Պոլսոյ ազգային կրկին ժողովներն որոշում մ'ըրած են այս նկատմամբ։ Ներսէսի մահէն (26 Սեպտ. 1857) ետքը կը սկսի միւսանգամ արծարծիլ Աղթամարայ կաթողիկոսական խնդիրը։ Յետ այլ եւ այլ բանակցութեանց եւ խորհրդոց՝ Կ. Պոլսոյ Գերագոյն ժողովը կ'որոշէ Ադրիանուպոլսեցի Սարգիս եպիսկոպոսն, որ նոյն ատեն Մոլտաւիա-Վալաքիա կը գտնուէր հոգեւոր այցելուի պաշտօնով, ընտրել Աղթամարայ կաթողիկոս։ Անոր որոշումն կը հաստատէ նաեւ Հոգեւոր ժողովը. բայց Սարգիս եպիսկոպոս անձնական տկարութիւնք պատճառ բերելով՝ կը հրաժարի իրեն եղած առաջարկէն։ Ասոր վրայ Գերագոյն ժողովը կ'առաջարկէ կաթողիկոսացնել Ռոտոսթոյի առաջնորդ Թադէոս եպիսկոպոսը. զոր չընդունելով Հոգեւոր ժողովը՝ 1858 փետր. 4ի նիստի մէջ կ'որոշեն որ Աղթամարայ կաթողիկոս ընտրուի Պետրոս եպ. Պիւլպիւլ։ Նոյն տարւոյ Մարտ 14ի նիստին մէջ այս որոշումն վերահաստատելէ ետքը՝ առանձին պայմանագիր մ'ալ կը պատրաստեն, ուր կը ճշդուին կաթողիկոսին իրաւունքները։ Մարտ 17ին կը ստորագրեն պայմանագրոյս Աղթամարցիք։

## 46. Պետրոս Պիւլպիւլ (1858—1864):

Այսպէս Աղթամարցիք կաթողիկոսի օծման մասին պատրիարքարանի հաւանութիւնն ընդունելով՝ յետ ծանր շփոթութեանց 1858, Յուլիս 24ին կը ձեռնադրեն զՊետրոս Պիւլպիւլ, թէեւ յանձնարարուած էր իրենց՝ օծումն յետ օծման ընդհանուր Հայոց կաթողիկոսի տալ: Ձեռնադրիչն էր Թորոս եպիսկոպոս Մակաբայեցւոց վանքէն:

Պետրոս Պիւլպիւլ ձեռնադրուելէն յառաջ իւր նախանձորդին՝ Յակոբ Եդեսացւոյ հետ հարկ էր մրցութիւն մ'ի գլուխ հանել: Յաղթանակն տարաւ ինքը՝ շնորհիւ Աղթամարայ իրեն կուսակից միաբանից՝ Խաչատուր, Ղազար եւ Յակոբ Վարդապետաց, զորոնք ի վարձ իրենց այս աշխատութեան, յետ օծման կը ձեռնադրէ եպիսկոպոս:

Պետրոս Պիւլպիւլի ձեռնադրութեան եւ օծման միջոցին տեղի ունեցած անկարգութիւնները 1858 Օգոստոս 2 թուականաւ Վանէն Կ. Պոլիս հասած նամակ մը, զոր ի մէջ բերած է Իզմիրլեան՝ այսպէս կը նկարագրէ.

1858 Օգոստ. 2 ի Վան

“Երբ որ ասոնց (Աղթամարցւոց) վարդապետները (Ղազար եւ Գրիգոր) Կ. Պոլսէն դարձան ու եկան հոս (ի Վան), իրենց կաթողիկոսութեան ֆէրմանն ու կոնդակը բերին (ի Վան) քաղաք, եւ կարդալ տուին ի ներկայութեան

ազգիս եւ երկուց ժողովոց եւ ստիպեցին ազգին եւ Պօղոս... Հայր սուրբին (Լիմ անապատի այժմեան վանահայր) հրաման տալ Մարգար Եպիսկոպոսին որ գայ օծէ զՊիւլպիւլն կաթողիկոս, բայց ժողովը պատասխան տուաւ թէ "այս կոնդակաւ Պատրիարքն բացարձակ հրաման չէ տուած օծելու զՊիւլպիւլն, ապա թէուլթեամբ, եւ մենք չեմք կրնար Մարգար Եպիսկոպոսին հրաման տալ երթալ օծելու մինչեւ Պօլսէն բացարձակ հրաման չգայ„. այս պատասխանին վրայ վարդապետները ելան գնացին (յԱղթամար) բայց խոժոռեալ: Այս տեսածին պէս Եղեսեան (Յակոբ Եպիսկոպոս) ելաւ գնաց յԱղթամար, ուր եւ կը քաջալերէ զմիաբանութիւնն որ առանց կրկին հարցանելոյ Պօլսոյ ատենին (ժողովոց)՝ օծեն իւրեանց կաթողիկոսը, բայց Պիւլպիւլն կ'ընդդիմանայ միաբանութեան ըսելով թէ՝ "մինչեւ Վանէն հրաման չգայ ինձի, ես չպիտի օծուիմ„. այն ատեն միաբանութիւնն հանդերձ հոն գտնուող ռամիկ ժողովրդովք կը բռնանան Պիւլպիւլին վրայ ու բռնի... կը մտցնեն ներս (յԱղթամար)... երբ կը տեսնայ Եղեսեան որ օծուելու զիջում չըներ Պիւլպիւլ՝ կը յորդորէ միաբանութիւնը որ ինք լինի կաթողիկոս. միաբանութիւնն ալ կստիպէ զՊիւլպիւլն որ եթէ ինքը չըլլար կաթողիկոս՝ իրեն տեղ Եղեսեանը օծէ, նա ալ կը պատասխանէ թէ՝ կ'օծեմ բայց երբ որ Պատրիարքէն հրաման բերել տայ,... Վերջապէս Ողմեցիք սրով կըսպառնան Պիւլպիւլին ու կըսեն. "Եթէ դու չես

չինիր կաթողիկոս՝ Եդեսեանն օծէ, կամ թէ դուն եղիր՝ Եդեսեանը քեզի օծէ„։ Պիւլպիւլ կամայ ակամայ խօսք կուտայ զԵդեսեան օծելու. այս բանիս վրայ Հայոց ձորեցիք, Զուրստանցիք... բողոք կը բառնան ամբոխօք թէ՝ “Այս մարդ Եդեսեան... է... է ի՞նչպէս մեզի կաթողիկոս կրնայ ըլլալ„. ուստի եւ Պիւլպիւլը կը յորդորեն որ Եդեսեանէն օծուի. երբ Պիւլպիւլ յակամայից բռնադատեալ խօսք կուտայ կաթողիկոսական օծումն ընդունելու, յայնժամ Եդեսեան կը ժխտէ իր խօսքը եւ կըսէ. “Ես հիւր եկած եմ հոս՝ չեմ կրնար օծել„. իսկ երբ կը բռնանան, կըսէ թէ՝ “Մէկ Եպիսկոպոս չկրնար կաթողիկոս օծել, հրաման չկայ„, այն ատեն Պիւլպիւլն... կսկսի նախատել զԵդեսեան եւ ըսել թէ՝ “Երբոր դու օծուէիր մէկ Եպիսկոպոսով հրաման կար՝ հիմի չկա՞յ, ուստի ասոր (Եդեսեանը) կառնուն ձեռք որ մինչեւ ցմահ զարնեն, բայց մահտեսի Յոհան եւ մահտեսի Ատոմ հազիւ հալ ամբոխին ձեռքէն կը թափեն ու կը փախցնեն զԵդեսեան... որ քանի մը օրէն յետոյ չուեց դէպի Պոլիս... Հինգշաբթի օր մը որ Յուլիս 24 էր, Պիւլպիւլ մէկ Եպիսկոպոսով օծուեցաւ կաթողիկոս, եւ նոյն շաբաթ օրն Յուլիս 26 Հիզանի Յակոբ վարդապետ, կարճահասակ Խաչատուր վարդապետ ու գրագիր Ղազար վարդապետ եպիսկոպոս ըրաւ„...։

Պետրոս Պիւլպիւլ կը ներկայացուի երկայն հասակ, ջղուտ, թխադէմ եւ աչարկու արտաքնով. վարուք սակայն օրինակելի անձ մը չէր.

քայց գործունեայ էր: Յովսէփ վարդապետ կը
գրէ իր Տեղեկագրին մէջ (էջ 8).

“Պետրոս այս տանէր ըստ բաւականին
զկառավարութիւն Աղթամարայ եւ ժողովրդեան.
շատ բարբարոսք դողային ի նմանէ. շատ եւս
այն էր զի հարուածս եւ դատաստանս կրէին ի
ձեռաց նորին. առնէր խնամս աղքատաց. չէն
պահէր զՏունն, եւ անփառասէր որ էր եւ խո-
շորակեաց. սակայն ի բանս եւ յիրս կարի ճար-
տար. ունել ունէր եւ պակասութիւնս, այո, զոր
ոչ կարեմք արդարացուցանել: Այլ զսա չկա-
րացին ընկճել՝ ոչ ձեռք եւ սպառնալիք աշար-
կու Քրդաց մեծամեծաց, ոչ դեղ մահու՝ ար-
բուցեալ նմա յՈստան, զոր եւ թափեաց ան-
դրէն, ոչ այնչափ վշտակրութիւնք եւ աքսորանք
եւ տուգանք եւ պէս պէս տանջանք, զորս յա-
ռաջագոյն կրեալ էր. սակայն ընկճեցաւ եւ եթ
ի հարազատէն իւրմէ Խաչատուրէ, որ ինքեան
իսկ էր ձեռնասուն, եւ զամենայն վերակացու-
թիւն կառավարութեան նմա հաւատացեալ:„

Յիշեալ Խաչատուր եպիսկոպոս Պետրոս
կաթողիկոսի գլխաւոր աջակիցներէն մէկն էր.
կաթողիկոսն զինքը իր գանձապահն եւ գոր-
ծակալն կարգած էր: Խաչատուր եօթը տարի
այս պաշտօնը վարելէ ետքը, — երբ աւելի իր
գանձարանը ճոխացնելու մտադիր կ'ըլլայ, —
ի վեր կը հանէ իր սրտին խորհուրդը՝ կաթո-
ղիկոսն տապալել եւ ինքն գրաւել աթոռը:
Իրեն կուսակիցներ ունէր կաթողիկոսին անհա-
մակիր միաբաններ. որոնց թուին վրայ կը յա-

ւելու կաշառքով աշխարհականներ ալ: Ասոնց մասնակցութեամբ 1864 Սեպտ. 10ին Նարեկայ վանքին մէջ ժողով մը կը գումարուի, ուր Ներկայ կ'ըլլան Նաեւ Ղազար եւ Յակոբ եպիսկոպոսները, եւ կը սահմանուի վար առնուլ զՊետրոս եւ օծել զԽաչատուր կաթողիկոս: Որոշումն ի գլուխ հանելու յարմարագոյն ժամանակն կը համարուի Սեպտեմբեր 24, երբ Պետրոս Պիւլպիւլ Ախվանց գիւղը կը գտնուէր, կղզիէն դուրս: Պետրոս կաթողիկոս կ'իմանայ անոնց խորհուրդը. ի դերեւ հանելու համար դաւը, կը փութայ անոնցմէ յառաջ անցնիլ Աղթամար. բայց հազիւ թէ ոտքը նաւ կը դնէ ծերունի կաթողիկոսն՝ յետս կը մղուի Խաչատրոյ կուսակիցներէն՝ եւ ջուր կ'իյնայ. իսկ Խաչատուրեանք կ'անձապարեն կղզին:

Կաթողիկոսն մեծ ճգամբ ինք զինքը ցամաք հանելով՝ զուր կը սպասէ ամբողջ գիշերը՝ կղզիէն Միաբաններու օգնութեան. յուսահատած առտու Փշավանց գիւղը կ'երթայ եւ հոն “յախուռն Նէթոյեան Մանուկին երթեալ ընկողմանէր[1]”: Այն ինչ կը պատրաստուէր Վան երթալու՝ այս անիրաւութեան դէմ բողոքելու համար, երկու օր վերջ՝ Սեպտ. 28ին “ի վերջին գիշերին երկուց աւուրցն սպանաւ յանկողնի, յախուռն Նէթոյեան Մանուկին ի Փշավանց գիւղ” Խաչատուրի հաւատարիմ սպասաւորի՝ Եուսուֆ անուն քիւրդ աւազակի ատրճանակի հարուածներով:

---

1 Տեղեկագիր, էջ 17:

Հանգուցելոյն մարմինը կը տարուի կղզին եւ “առանց բանի աղօթից եւ կարգի կատարելոյ, եդին ի հող տապանի, զոր ինքն իսկ էր պատրաստեալ ի կենդանութեան իւրում[1]„, “վասն զի, կը գրէ Յովսէփ վարդապետ, սովորութիւն է կաթուղիկոսաց Աղթամարայ պատրաստել վաղագոյն զգերեզմանս. գոգցես գիտելով թէ մօտ է ինքեանց մահ յետ կաթողիկոսանալոյն, զի մինն ի միւսմէն տեսեալ ուսանի զիւրն„։

Կաթողիկոսին արկածալից մահն երկար քննութեան կ'ենթարկուի ի Վան եւ ի Կ. Պոլիս։

## 47. Խաչատուր Շիրոյեան (1864—1895):

Մինչդեռ Պետրոս Ծերունի կաթողիկոսն ծովափին վրայ օրհասի մատնուած էր, Խաչատուր եպիսկոպոս Շիրոյեան Բողոնիսցի իւր համամիտ եպիսկոպոսներով կը հասնի Աղթամար, ուր Միաբաններու հաւանութեամբ հետեւեալ օրը Վարագայ խաչի տօնին կ'օծուի կաթողիկոս[2] (1864, Սեպտ. 25)։

---

1 Տեղեկագիր, էջ 17—18։

2 Խաչատուր կաթողիկոսի կենսագրութիւնը տուած է Յովհ. Վ. Բագունի, հրատարակուած “Արարատ„ թերթի մէջ, 1897, Բ. գիրք, էջ 51--61, “Մի երես Աղթամարայ կաթողիկոսութեան պատմութիւնից եւ հանգուցեալ Տ. Խաչատուր կաթողիկոսի գահ բարձրանալը„. ուր կան նաեւ Խաչատուրի լուսանկարներն՝ առանձին եւ Խաչվերացի տօնին տօնախմբութեան ժամանակ եկեղեցական հանդերձաւորման մէջ։ Յովսէփ Վ. 1866ին իւր Տեղագրին մէջ անոր կենաց պատկերը գծած է հետեւեալ խօսքերով. “Սա-

Պետրոս Պիւլպիւլի եղերական մահն եւ Խաչատրոյ անհրաման ձեռնադրութիւնը երկար խնդրոյ նիւթ կ'ըլլայ: Սպանման պարագաներն քննել տալով Բարձրագոյն դուռը՝ վանայ կառավարութենէն առ ինքն հասած յայտագրոյն վրայ 1865 Յունիս 7 Թուական պաշտօնագրով մը Ազգային Պատրիարքարանին ծանուցած է թէ «որչափ որ Տ. Պետրոս կաթուղիկոսն սպանողները Եուսուֆ եւ Շահին անուն երկու փախստական քիւրտերն են կ'ըսուի, այսու ամենայնիւ Տ. Խաչատուր սրբազանն ալ ուրիշ միա-

---

յառաջագոյն ի մանկութեան իւրում եկեալ յԱղթամար ծառայէր յոտս Պետրոս Պիւլպիւլին եւ ինքն իսկ էր ի Գաւաշու (որ է հին Ռշտունիք), ի գեղջէն Բողոնիս, մօտ յԱղթամար (որդի Շէրոյ անուն Նեստորական ասորւոյ մը, ըստ Բազունի վարդապետի, “Արօսք„, էջ 52). ապա ի դիպել տարագրիլ Պետրոս Պիւլպիւլին յԱղթամարայ, խոյս տայ եւ Խաչատուրն ի Կտուց անապատն. ուստի եւ յետ աւուրց՝ երեք միաբանք աշխարհականք Կտուցայ... առեալ ընդ իւրեանս զայս պատանին նորահաս մատաղ՝ զԽաչատուրն, դիմեն ի Ս. Էջմիածին ... Նազլուխան անուանեալ վարդապետ ոմն Ս. Էջմիածնի ... կացուցանի տեսուչ Ս. Հռիփսիմեանց վանից, եւ Խաչատուրն ծառայելոյ ի պէտս երթայ ընդ Նազլուխանին. յետ ժամանակաց վախճանի Նազլուխանն եւ գումարք դրամոց նորին մնանեն ի ծոց Խաչատուրին: Նոյնպէս յաջողի կրկին ծառայել Խաչատուրիս Յովհաննէս եպիսկոպոսի ումեմն. եւ ի մեռանել եպիսկոպոսին՝ մեծ մասն հարստութեանց նորին թափուցանէ Խաչատուրն ի ծոց իւր ...: Յանցանել աւուրց անցանէ Խաչատուրն ի Ս. Էջմիածնայ եւ գայ... յԱղթամար. ձեռնադրի վարդապետ ի Մարգար եպիսկոպոսէն Հիզանու.„ Յովսէփ վրդ. Տեղագիր. էջ 9: Կ'ըսուի թէ Յովսէփ Վ. Սոլախեան գրած է Խաչատրոյ ընդարձակ կենսագրութիւնը՝ բայց ըստ քմաց կաթողիկոսին, որով վստահելի չի կրնար համարուիլ (հմմտ. Արեւելք 1896):

բանից հետ կ'երեւի թէ մեծ մասնակցութիւն ունեցած է գործոյն մէջ[1]»։ Տարի մը ետքը՝ 1866, Յուլիս 12ին Ազգ. Պատրիարքարանի Վիճակային Եկեղեցական Ժողովը հետեւեալ վճիռը տուած է այս մասին. «Վիճակային Եկեղեցական Ժողովս տեղեկանալով եթէ Խաչատուր եպիսկոպոս Աղթամարայ հանգուցեալ Պետրոս կաթուղիկոսին կենդանութեան ատեն ինքզինքը անոր տեղ կաթուղիկոս օծել տուեր է, անվաւեր վճռեց անոր կաթուղիկոսութիւնը[2]»։ Նոյն ժողովը մի եւ նոյն ժամանակ նոր ընտրութեան համար եռանուն ցանկ մը կը պատրաստէ։ Այս հիման վրայ Ազգ. Ժողովը 1866 Յուլիս 22ի նիստին մէջ թափուր կը հրատարակէ զԱղթամար. եւ 1866 Հոկտեմբեր ամսոյ վերջերը Պատրիարքական Խառն Ժողովը Աղթամարայ վանուց կաթողիկոսական տեղապահ կը կարգէ[3]։ Նոյն տարւոյ Նոյեմբերի 14ին ալ

---

1 Իզմիրլեան, էջ 1012-1013։

2 Անդ, էջ 1015։

3 Ունիմ աչացս առջեւ Յովսէփ եպիսկոպոսի մէկ ինքնագիր նամակն գրուած 1867, Սեպտ. 17ին յԱղթամար, հասցէակիրն է «Քրիստոսազօր եւ Մեծահաւատ վսեմաշուք... Բէյ» մը, որ հաւանօրէն կ'ապրէր Կ.Պոլիս։ Հոս ակնարկելով Խաչատրոյ անուղղայ գործերը՝ կը յաւելու. «եւ ոմն ի նորին չարանենկ խորհրդակցէն առաքեալ է այսր զմաքուր լսելիք ձեր նենկամտութիւնոք նողկտեցուցանէ. ո՞հ թողեալ զարդարն եւ զիրաւն զսուտն քարոզէ. գի՞ կայր գորա ընդ ստութեան. պատճառն արդարութեամբ ասեմ, հանապազ խորհրդակից է դա որ է Յակոբ եպիսկոպոս. չվայելէր գորա եւ նորա յանդգնիլ յայնպիսի եղեռնագործութիւն. յավէրակս դարձուցին զսուրբ Աթոռս»... «Արդ արտասուախառն ձայնիւ աստուստ ասեմ...

կ'որոշէ որ Խաչատուր գայ Կ. Պոլիս ի դատ[1]։ Բայց Խաչատուր Կ. Պոլիս կը հասնի հազիւ 1868 Հոկտ. 12ին։ Քննութիւնք որ աւուր կը կնճռոտին. միւս կողմանէ Աղթամարցիք անդադար դիմումներով եւ սպառնալիքներով կը պահանջեն Խաչատրոյ հաստատութիւնը։ 1875 Դեկտ. 4ին Եկեղեցական վիճակային ժողովը խնդրոյն վերջ տալու համար բաւական կը համարի Խաչատրոյ երդմամբ խոստովանութիւնն լսել իւր սպանման մասնակցութեան նկատմամբ. որուն արդիւնքի վրայ կը կայացնէ որոշումն. «Համագումար ժողովս կը վճռէ թէ՝ Խաչատուր կաթողիկոս իւր նախորդին՝ այսինքն Պետրոս կաթողիկոսի սպանման ոճրոյն մէջ Բ. Դրան ժամանակաւ յարուցած կասկածէն ազատ եւ անպարտ է Ազգային եկեղեցւոյ եւ խղճի առջեւ։ Ուստի Ամենապատիւ Խաչատուր Սրբազան... օրինաւոր կաթուղիկոս է Տանն Աղթամարայ[2]»։ Այս վճռէն ետքն ալ կ'ըլլան ինչ ինչ խնդիրներ Ազգային ժողովոյն կողմանէ, բայց ամէնէն վերջը կը հաստատուի վերոյիշեալ վճիռը. եւ Խաչատուր կաթողիկոս կը մեկնի Կ. Պոլսէն դէպ ի պաշտօնավայրն 1876 Հոկտ. 20ին, զարդարուած կուրծքը Մէճիտիյէ առաջին կարգի

---

ողորմել մեծի եւ ողորմելի տանս, կրկին սիրով հայեսջիք եւ փութէք նոր կաթողիկոս ողորմելի Աղթեա որ կայ է յետանօրինացն»... «Փշավէցի Յակոբ վարդապետ ի դիմաց աղքատիկ Աղթամարայ առաքեցաք առ Ազգախնամութիւնդ»

1 Անդ, էջ 1016—1017։

2 Անդ, էջ 1040։

պատուանշանով։ Ըստ տեղեկագրին Երեմիա եպիսկոպոս Տէր-Սարգսեանի, ուղղուած առ Գէորգ կաթողիկոս Էջմիածնի, "մինչեւ որ Խաչատուր կաթողիկոս իրեն վերագրուած յանցանքը կը քաւէ՝ 1500 ոսկիի կը նստի[1]"։

Խաչատրոյ կաթողիկոսութեան այս տխուր սկզբնաւորութիւնը պատկերն է միեւնոյն ժամանակ անոր յետագայ գործունէութեան։ Առանց մասնաւոր ուսումնական ընթացք մը կատարած ըլլալու՝ յեցած էր միայն բնատուր ճարտարամտութեան վրայ. խորամանգ, լաւ տեղեակ ժամանակակից քաղաքական պարագաներուն՝ գործեց աւելի անձին շահերուն համար, քան իր զգեցած բարձր պաշտօնէն պահանջուած պարտուց համապատասխանելով՝ ժողովրդեան բարօրութեան նայեցաւ, թէեւ "եթէ կամք ունենար՝ իր բնածին ընդունակութիւններով իր ազգին կարող էր մեծամեծ ծառայութիւններ մատուցանել[2]"։ Իր սխալը իմացաւ նա շատ ուշ՝ երբ 95 թուականի սարսափելի դիպաց ենթարկուեցաւ նաեւ Վասպուրական[3]։

Լեւոնեան[4] անոր գործերուն վրայ խօսելով կը գրէ թէ իր թեմին մէջ շատ եկեղեցիներու շինութեան պատճառ եղած է՝ ի հի-

1 Բիւզանդիոն, թ. 1203։

2 Արաքս, էջ 54։

3 Համմտ. առ այս Խաչատրոյ 1895, Դեկտ. 19 թուակիր տեղեկագիրն առ Մատթ. Իզմիրլեան պատրիարք. հրտ. ԱՐՐՏ. 1896, Մայիս, էջ 245–249։

4 Բիւզանդիոն, թ. 1203։

մանց շինելով կամ նորոգելով քայքայած եկեղեցիներ. Աղթամարայ կղզւոյն մէջ եւ անկէ դուրս շատ մը շէնքեր ալ շինած է, որոնց մէջ նշանաւոր է Ախվանց՝ ծովեզերեայ երկյարկանի ու զուարճալի վեհարանը եւ աղնիւ դպրոց մը։ Վեհարանի դրան ճակատին կայ անթուական արձանագրութիւնս.

“Վեհարանս եւ դպրոցս նոր հիմանց կանգնեալ
  ձօնեմ բազմակարօտ իմ ազգին,
Ի կայսրութեան ինքնակալին օսմանեան համիտ
  երկրորդ վեհապետին յաղթական.
Թէպէտ եռանդ սրտիս փաղուց ստիպէր,
Բայց զբաղմունք իմ հոծ գործով ոչ ներէրքան զամէն ինչ նուիրական էր հոգւոյս,
Ընդ շինութեանց զբարոյական առեալ լոյս,
Ուսումնասէր մանկամբ Հայոց ջանալ միշտ,
Զիմ սգակիր ժողովրդեան ջնջել վիշտ.
Տէր Խաչատուր կաթուղիկոս Ռշտունցի,
Չեր աղօթից կարօտ ծառայ Յիսուսի[1]։„

Այսօր ամէնէն աւելի գնահատելի գործն եղած է Աղթամարայ վանուց մէջ շինել տուած թանգարանը, որուն մէջ հաւաքած է վանքին ի հնուց անտի մնացած շատ մը թանկագին ձեռագիրները, նոյնպէս այլ եւ այլ եկեղեցիներու մէջ կամ անհատականաց քով պահուած ձեռագիրները։

1895ին անբուժելի հիւանդութեան մը

[1] Աշխատ. Հանդ., Ի, էջ 208–209։

բռնուած՝ Վան կը տարուի, ուր բաւական ատեն բժիշկներէ խնամուելով, բայց չապաքինելով՝ նոյն տարին Դեկտեմբեր 22ին կը վախճանի։ Մահկանացուն Աղթամար փոխադրուելով կը թաղուի իր կենդանութեան պատրաստել տուած փառաւոր շիրմին մէջ, որ հետեւեալ տապանագիրը կը կրէ[1] մերձաւոր ընթերցուածովս.

Խաւար շիրմիս իմ, սիրուն այցելու,
Ասել քեզ հոգերս, ոհ չունիմ լեզու...
Զուառ ի գահ տունս բեկեալ Նիգակաց
Ազգիս դառն ցաւոց հեծութեան ի բոց
Տոչորեալ հայրապետն եմ Ռշտունի,
Որ Խաչատուր անձս Խաչին զոհեցի.
Իւսեալ շինութեանց փունջս զանազան
Բամեալ խաչս եւ աջս հինս ի թանգարան,
Կաթսայ սուրբ Իւղոյն 'ւ աղաւնին օծման,
Աւետարանս, թանգ շուրջառ, գաւազան,
Թողեալ յիշատակ Նուէր տաճարիս.
Ունէի դեռ նոր գործոց տենչն ի յիս,
'Ի արդարեւ Բ. Համիդ վեհ Սուլթան
Ղօղեաց զիս ի փառս յառաջին նշան,
Ի մեծ պարծանըս գահիս Արծրունեան,
Կեանքս, խիղճս եւ հոգիս այլ տոքօք չլցան
Ու հողմովք ժանդից հառաչքս ոչ շիջան.
Սէրս, յոյսս՝ ի Յիսուս, բաժինս՝ այս տապան։

Օծեալ 1864 Սեպտ. 12.
Վախճանեալ 1895 Դեկտ. 22 ի Վան։

---

1 Բիւզանդիոն, Թ. 1204 (պակաս տողերով) եւ Ազգ. Հանդ., Ի, էջ 212 (սխալ ընթերցուածներով)։

Խաչատրոյ մահուընէն ի վեր թափուր կը մնայ կաթողիկոսական Աթոռը։ Ի սկզբան յանձնուեցաւ կառավարութիւնն Վանայ երբեմնի առաջնորդական տեղապահ Մարգարեան Արսէն վարդապետի՝ կաթողիկոսական փոխանորդի տիտղոսով։ Այնուհետեւ անցաւ Կ. Պոլսոյ Պատրիարքարանի վերին հսկողութեան ներքեւ կազմուած Տնօրէն խորհուրդի մը, որ տեղապահի մը նախագահութեամբ կը վարէ գործերը (հմմտ. վերը, էջ 31—32)։

Այսպէս չարաչար եղաւ կործանումն շինուածքի մը, որուն հիմերն դրուած էին աւազի վրայ։ Թէեւ կրցաւ Աղթամարայ կաթողիկոսարանը 782 տարուան կեանք մը վայելել, բայց մեծ ոգորմամբ, միշտ ահի եւ երկիւղի մէջ։ Բնականաբար այսպիսի շինուածքի մը մէջ չէր կրնար կեանքն երջանկաբեր ըլլալ, տեսնել ցանկալի օրեր, պայծառանալ յառաջադիմութեամբ։

Կաթողիկոսութիւնն անդստին ի ծննդոց ծանրաբեռնուած նզովքի տակ՝ չվայելեց ընդհանուր Հայաստեա ժողովրդեան համակրութիւնն եւ սէրը, եւ միշտ խորթ նկատուեցաւ։ Կենսունակութիւն կը պակսէր իրեն, նման անդամի մը, որ զրկուած ամբողջական մարմնոյ հետ երակներու միջնորդութեամբ թարմ արեան անարգել խաղացքէն՝ տակաւ տակաւ կը հիւծի, կը տկարանայ, եւ ի վերջոյ կը տարրալուծուի կամ կը գոսանայ՝ ի վնաս իրեն եւ ամբողջ կազմուածքին։ Ոչինչ փոփոխութիւն յառաջ բերաւ այս

հիւանդագին դրութեան վրայ Զաքարիայի բախտախնդիր օդափոխութիւնն Էջմիածին եւ կաթողիկոսական աթոռին կարճատեւ վայելումը:

Արտաքին աննպաստ հանգամանքներն աւելի վատթարացուցին դրութիւնը: Մեկուսացած Վասպուրականի լեռնապատ մութ անկիւն մը, շրջապատուած քիւրտ վաչկատուն, անհամբոյր եւ այլադեն ցեղերէ՝ ենթարկուած մնաց անդադար հարկապահանջութեանց, զրկմանց եւ հալածանաց: Փոխանակ շրջակայ վայրագ ցեղերու վրայ ազդելու բարոյապէս՝ ինքն անազնուացաւ անոնց ազդեցութեան տակ: Բարեկարգական օրէնքներն տակաւ տակաւ քայքայեցան. տգիտութիւնն սկսաւ շահապետել իւր սարսափելի իրականութեամբ: Ոճիրներ կը ներկայանան պատմութեան ատեանին առջեւ, մանաւանդ վերջին հարիւրամէին, որոնք իրենց չքմեղանքը միայն բարբարոս շրջակայքէն կրնան ընդունիլ:

Չենք ուզեր այսու սակայն ժխտել, թէ Աղթամար իւր իբր 800 ամեայ կենաց մէջ չվայելեց պայծառ գարուններ ալ: Զաքարեանց եւ Գրիգորիսեանց շրջանն (1300—1600) ամենափայլուն ժամանակն եղաւ այս կողմանց, երբ գրչութեան արուեստն մեծ խանդով մշակուեցաւ վանքերու մէջ, ինչպէս մեծ թուով ձեռագիրներ օրինակուած Աղթամարայ թեմին մէջ կը վկայեն. Դանիէլ Աղթամարցի, Թովմա Մինասեանց, Հայրապետ աբեղայ... համբաւաւոր

գրիչներ հանդիսացան այս շրջանին. բայց Աղթամարայ անունն հռչակեց մանաւանդ Գրիգորիս Աղթամարցի իր անմահ բանաստեղծութիւններով, որոնք շուտով հասարակաց ստացուածք եղան. եւ Զաքարիա Գնունեցի, իրմէ յառաջ Յովհաննէս Արճիշեցի, Մխիթար Մեծոփեցի, նոյն իսկ Գրիգոր Խլաթեցի եւ ուրիշներ Աղթամարայ շրջանակին կը վերաբերին։ Բայց ԺԶ դարու խոնարհելուն հետ մար կը մտնեն այս անուններն ալ եւ այնուհետեւ արեւելեան խաւար գիշերներն կը յաջորդեն անվերջ՝ մթութեան թանձր քօղին տակ անհետացնելով ամէն նշմար անցեալ արեգակնալից օրերուն։

Այսպիսի կացութեան մէջ Էջմիածնի եւ Կ. Պոլսոյ օրինաւոր իշխանութիւնք կատարեալ իրաւանց մէջ էին միջամտելու Աղթամարայ գործերուն մէջ եւ չափ եւ սահման գծելու։ Անարդար չէր նոյն իսկ կաթողիկոսական աթոռոյն ի սպառ բարձման սպառնալիքն եւ գործադրութիւնը, քանի որ իշխանութեամբ կը զեղծանէին միայն կաթողիկոսները՝ դադրած օգտակար գործունէութենէ։ Ի՞նչ տարակոյս թէ տեղապահ մը կամ պարզ առաջնորդ մը՝ ընտրուած օրինաւոր իշխանութենէ եւ հմուտ ժողովրդեան պէտքերուն՝ աւելի շահաւէտ պիտի գործէր ի նպաստ ժողովրդեան հոգեւոր զարգացման. ինչպէս ի վերջոյ ստիպեցին պարագայք զայս արդեամբք ի գլուխ հանել։

Աղթամարայ կաթողիկոսութիւնն — ինչպէս պատմութեանս ընթացքն ցուցուց — աւելորդ էր անդէն ի սկզբնաւորութեան, աւելորդ նկատուեցաւ յընթացս դարուց, աւելորդ երեւցաւ նաեւ ներկայիս. ուստի եւ արդար էր անոր դադարումը։

---

Կարեւոր կը համարիմ հոս զետեղել “Հաւաքարանի„ տուած կաթողիկոսական յաջորդութեանց անուանացանկին վերջին ԺԵ—ԺԹ դարերու վերաբերեալ մասը[1], սկսել Զաքարիա կաթողիկոսէն († 1464) մինչեւ 1823։ Առաջին ԺԵ եւ ԺԶ դարերու կաթողիկոսաց անունները պատմական չեն. բայց կ՚երեւայ թէ ԺԷ դարէն ասդին՝ Գրիգորէն սկսեալ, հարազատութեան նկարագիր ունին եւ կրնան ինչ ինչ մուծուիլ մեր ցանկին մէջ՝ յատկապէս “Մարտիրոս Գուրջի„ կաթողիկոսին յաջորդող անունները, բայց միշտ հարազատութիւնն կանխաւ պատմական փորձաքարի վրայ քննելէ ետքը։ Մենք դիտմամբ չառինք զասոնք մեր ցանկին մէջ, որովհետեւ պատմական կռուան չկրցանք գտնել։

---

67. Զաքարիա եղբօրորդի տէր Դաւթի († 1464 = § 11)։

68. Թադէոս։

---

1 ԲԶՄ. 1897, էջ 416։

69. Միքայէլ։

70. Սարգիս.

71. Կարապետ Խիզանցի։

72. Ստեփանոս, այր առաքինի (=? § 12)։

73. Ներսէս։

74. Գրիգոր (=? § 16—18)։

75. Եղիազար։

76. Բաղդասար։

77. Ղազար։

78. Աւետիս մականուանեալ Կարմիր։

79. Գրիգոր ջատագով իմաստութեան (=? § 16—18)։

80. Աբրահամ։

81. Յովհաննէս։

82. Ներսէս։

83. Ստեփանոս։

84. Բաղդասար։

85. Կարապետ, մականուանեալ ... (դատարկ)։

86. Մարտիրոս մականուանեալ Գուրջի, յերկրէն Մոկաց, ի գեղջէն Նանէնից։

Սա ըլլալու է Մ. Փշրուկն, որ 1660/62ին կը յիշուէր (§ 19), ինչպէս մենք ալ նոյնացուցած ենք։

87. Բաղդասար ի տանէն Ազատաց։

Ուրիշ կողմանէ անծանօթ։ Հաւաքարանը չի յիշեր հոս զՊետրոս (§ 20), որուն 1670ին կը պատահինք տապանաքարի մը վրայ։

88. Ստեփանոս։

Ըլլայ թերեւս այն Ստեփանոսն (§ 21) որ 1671ին կը յիշուէր Էջմ. Գէորգ. Ցուց. թ. 375։ Մտադիր

կ'ըսեմ որ յիշատակարանիս Թուականը "Ռ.ՃԻ" ձեռքիս տակ եղած ձեռագիր ցուցակին մէջ նաեւ Թ.ՃԻ կընայ կարդացուիլ (Հմմտ. էջ 117)։ Հաւաքարանին ալ անծանօթ է Փիլիպպոս։

89. Մարկոս յաշխարհէն Քաջբերունեաց ի գեղջէն Բլուրմակայ։

Հաւաքարանը չի յիշեր Հոս Կարապետն (§ 22) որ 1677ին անգամ մը կը յիշատակուէր։ Նոյնպէս անծանօթ կը մնայ իրեն Յովհ. Թիւթիւնջի (§ 23), որ Կարապետէն յառաջ կամ վերջն երեւցած է։ Բայց կընայ Մարկոս պատմական անձ եղած ըլլալ, ուստի եւ իր անունը մուծուիլ յաջորդութեանց շարքին մէջ։

90. Թումա ի մօրէն յԱզատ տանէ եւ ի հօրէ Ռշտունի, ի գեղջէն Երեզայ։

Լեւոնեանի հետեւելով Թովմայի (§ 24) ծննդավայրն նշանակեցինք Յերճ. ԲՉՄ. "ի գեղջէն Երիզայ" կը կարդայ։ Պէտք է քննել այս կէտն համեմատութեամբ ձեռագրաց։ Հաւաքարանն չի գիտեր Ա-ե-ր-ե անունը։

91. Սահակ Արծկեցի։

Հմմտ. § 25 (1698)։

92. Յովհաննէս մականուանեալ Կեծուկ։

Հմմտ. § 26 (1699—1704)։

93. Հայրապետ Փաքխեցի։

Հմմտ. § 27։ Լեւոնեան ծննդավայրն "Փայխ" գիտէ։

94. Յովհաննէս ի Հայոց ձորոյ։

95. Գրիգոր Գաւաշեցի։

Մեր ցուցակին մէջ Յովհաննէս Հայոց ձորեցի Գրիգոր Գաւաշեցւոյ յաջորդ նշանակուած է (§ 28—29), քանի որ Գրիգոր 1707—1711 տարիներուն կը յիշատակուէր, եւ Յովհ. 1720ին՝ անգամ մը միայն։ Այս

կէտն լաւագոյն աղբիւրներու հիման վրայ քննութեան կարօտ կը մնայ։

96. Թումա յերկրէն Համկու։

97. Ղազար Մոկացի, առաքինի։

Թէ Թումա եւ թէ Ղազար այլուստ անծանօթ կը մնան. բայց պատճառ չկայ անպատմական համարելու, յամենայն դէպս կարճատեւ եղած է իրենց կաթողիկոսութիւնը։

98. Գրիգոր Խիզանցի, ի տանէն Մեծաց։

Հմմտ. § 30 (1725)։

99. Բաղդասար Բաղիշեցի։

Հմմտ. § 31 (1735—1743)։

100. Սահակ Աղբակեցի։

101. Յակոբ Ամթեցի։

Ընդ մէջ Բաղդասարի եւ Նիկողայոսի կարելի է ենթադրել զասոնք։ Մեզի անծանօթ են յանուանէ Բաղդասարի յաջորդն եւ Նիկողայոսի նախորդը։

102. Նիկողայոս Սպարկերտցի, ի գեղջէն Լուսարայ ի տանէն Մեծի Սեւոնց Գրիգորի...։

Հմմտ. § 32 (1736—1751)։

103. Գրիգոր։

Հմմտ. § 33 (1751—1761)։

104. Թումա Աղթամարցի, ի ցեղէ Գագիկ թագաւորին։

Հմմտ. § 34 (1761—1783)։

105. Կարապետ Ղուրմզէսմենց։

Հմմտ. § 35 (1783—1787)։

106. Յովհաննէս Սպարկերտցի։

Սա այլուստ անծանօթ կը մնայ. Թերեւս յետ Կարապետի՝ հակաթոռ Մովսէս (§ 36) եւ Թէոդորոս (§ 37) զորոնք Հաւաքարանը չի ճանչնար, դիրք բռնած ըլլայ։

107. Միքայէլ Վանեցի. յոյժ երաժիշտ։

Հմմտ. § 38 (1796—1810)։

108. Կարապետ Շատախցի, յոյժ ողորմած։

Հմմտ. § 39 (1813)։

109. Խաչատուր Վանեցի, առաքինի եւ սուրբ։

Հմմտ. § 40 (1803—1814)։

110. Յարութիւն Ալտոնեցի . . .։

Հմմտ. § 42 († 1823)։ Խաչատուրի եւ Յարութիւնի մէջ տեղ կը յիշուի Կարապետ մը (§ 41) 1616ին, որ Հաւաքարանի անծանօթ է։

111. Յովհաննէս Շատախցի, ի գեղջէն Ծղայ։

Հմմտ. § 43 (1823—1843)։

Այս եղանակաւ կը ստանանք Հաւաքարանի թ. 86—111 յաջորդութեանց շարքին մէջ ցանկ մը, որ յինքեան գոհացուցիչ է եւ դիւրաւ կրնայ լրացուիլ այլուստ ծանօթ անուններով։ Բայց ոչ այսպէս անկէ յառաջ նշանակուած անուանացանկը։ Թէ ինչո՞ւ Հաւաքիչն Ղազար ինչ ինչ անուններ դուրս ձգած է, դժուարին է լուծել. Հաւանօրէն անոնք չեն հասած իր ծանօթութեան (Հմմտ. վերը, էջ 3)։

---

Ի մէջ կը բերեմ կարեւոր յիշատակարան մը յաւելլի էջ 115, ուր Ստեփանոս Դ. Էջմիածնի կաթողիկոս կը յիշուի եւ կաթողիկոսութեան առաջին տարին ՉԺԵ կը նշանակուի.

«Եւ արդ գրեցաւ սուրբ Աւետարանս ի Խլաթ քաղաքի, ընդ հովանեաւ Մատնէվանից Ս. Աստուածածնին, Ս. Սարգսին եւ Ս. Գէորգուն, ձեռամբ յոգնամեղ եւ անիմաստ գրչի Մկրտչին, սուտանուն քահանայիս. յամի ՋԺԵ թուականի ի հայրապետութեանն տեառն Ստեփանոսին Էջմիածնի կաթուղիկոսի, որ այս ամ հաստատեցաւ շնորհաւքն Աստուծոյ[1]:»





1 Հ. Ց. Քոսեան՝ Ցուցակ հայերէն ձեռագրաց Կարնոյ եւ շրջակայից (անտիպ). Աւետարան Կրիչք գեղջ Քրիստոս Թագաւոր եկեղեցւոյն:

ԿԳ. Սամուէլեան Խ., Մխիթար Գօշի Դատաստանագիրքն ու հին Հայոց քաղաքացիական իրաւունքը: 1911: Էջ ԺԲ+344: Ֆր. 5.—

ԿԴ. Առաքելեան Հ., Պարսկաստանի Հայերը, նրանց անցեալը, ներկան եւ ապագան: Ա. 1911: Էջ Ը+97: Ֆր. 1.50

ԿԵ1. Յովհաննեան Հ. Ղ. Վ., Միջնադարեան ազգային տաղաչափութիւն ռամկախառն. Էջ 1–48:

ԿԵ2. Ակինեան Հ. Ն., Յովնաթան Նաղաշ եւ Նաղաշ Յովնաթաններ եւ իրենց բանաստեղծական եւ նկարչական աշխատութիւնք: 1911: Էջ 49–117: Ֆր. 1.50

ԿԶ. Մենեվիշեան Հ. Գ. Ծ. Վ., Գրիգոր Մագիստրոսի "Գամագտականի" ամբողջական լուծումը: 1912: Էջ ԺԱ+162: Ֆր. 1.50

ԿԷ. Գաբրիէլեան Դկտ. Մ. Ս., Ակնայ Գաւառաբարբառը եւ Արդի Հայերէն լեզուն: 1912: Էջ Է+416: Ֆր. 6.—

ԿԸ. Մարկուարտ Պրոֆ. Դկտ. Յ., Պատմութիւն հայերէն նշանագրերու եւ վարուց Ս. Մաշթոցի: Թրգմ. Հ. Ա. Վարդանեան: 1913: Էջ Է+59: Ֆր. 1.50

ԿԹ. Աճառեան Հ., Հայոց գրերը, ընդ մամլով:

Հ. Մառիկեան Հ. Ա., Անանունը կամ Կեղծ-Մովսէս, քննական ուսումնասիրութիւն: 1913: Էջ Է+91: Ֆր. 1.50

ՀԱ. Թորգոմեան Տ. Վ. Յ., Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպօլոյ Պատմութիւն: 1913: Էջ ԼԵ+412: Ֆր. 5.—

ՀԲ. Վարդանեան Հ. Ա., Դասական մանր բնագիրներ եւ ձեռագրական համեմատութիւններ. Ա.: 1913: Էջ Ը+155: Ֆր. 1.75

ՀԳ1. Մարկուարտ Պրոֆ. Դկտ. Յ., Հայ Բագրատունեաց ճիւղագրութիւնը ծանօթութիւններով: Թրգմ. Հ. Մ. Հապոզեան: 1913: Էջ 68:

ՀԳ2. Մարկուարտ Պրոֆ. Դկտ. Յ., Վրական Բագրատունեաց ծագումը: Թրգմ. Հ. Մ. Հապոզեան: 1913: Էջ 69–150: Ֆր. 1.75

ՀԴ. Վարդանեան Հ. Ա., Բանասիրական դիտողութիւններ, Ա. 1913. Էջ 120: Փր. 2.—

ՀԵ. Գիւտերբոք Կ., Հռովմէական Հայաստան եւ հռովմէական սատրապութիւնները Դ–Զ դարերուն, թրգմ. Հ. Մկրտիչ Վ. Պոտուրեան: 1914: Էջ Է+94: Փր. 1.20

ՀԶ. Վարդանեան Հ. Ա.՝ Բանասիրական դիտողութիւններ, Բ. 1914: Էջ 110: Փր. 3.—

ՀԷ. Սրապեան Հ. Ի.՝ Ս. Յակոբ ազգային հիւանդանոց: 1915: Էջ ԻԴ+477: Փր. 6.—

ՀԸ. Գալէմքեարեան Հ. Գր. Ծ. Վ., Կենսագրութիւններ երկու հայ պատրիարքներու եւ տասն եպիսկոպոսներու եւ ժամանակին հայ կաթուղիկէայք: 1915: Էջ Ը+384: Փր. 4.—

ՀԹ. Դաւիթ-Բէկ Մ. Ս., Արաբկիրի գաւառաբարբառը: 1919: Էջ ԺԱ+292: Փր. 5.—

Ձ. Տաշեան Հ. Յ. Վ.. Արշակունի դրամներ. Ա: 1919: Էջ Է+192: Փր. 3.—

ՁԱ. Տաշեան Հ. Յ. Վ., Պոնտական ուսումնասիրութիւնք: Մասն Ա.՝ Հետազօտական ուղեւորութիւն ի Պոնտոս. Յ. Գ. Կ. Անդերսընի: Մասն Բ.՝ Ուղեւորութիւն հնախօսական հետազօտութեան ի Պոնտոս եւ ի Փոքր-Հայս. Փր. եւ Եւգ. Կիւմոն Եղբարց: 1919: Էջ Է+420: Փր. 6.—

ՁԲ. Փէրճանեան Հ. Կ., Ցուցակ Եւրոպական-Հայկական հրատարակութեանց 1896–1910: 1919: Էջ Է+273: Փր. 6.—

ՁԳ. Գալէմքեարեան Հ. Գր. Ծ. Վ., Նորագոյն աղբերք Եզնկայ Կողբացւոյ: 1919: Փր. 3.—

ՁԴ. Խաչաթեանց Բ., Արաբացի մատենագրեր Հայաստանի մասին: 1919: Էջ Է+147: Փր. 3.—

ՁԵ. Տէր-Պօղոսեան Գր., Նկատողութիւններ Փաւստոսի պատմութեան վերաբերեալ: 1919: Էջ 126: Փր. 3.—

ՁԶ. Ակինեան Հ. Ն. Վ.՝ Գաւազանագիրք Կաթողիկոսաց Աղթամարայ: Պատմական ուսումնասիրութիւն: 1920: Էջ ԺԱ+200: Փր. 4.—